Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

12 ԴԵԿՏԵՄԲԵՐ · 1965
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 44-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

# Содержание



Ա. ՋՐԱՂԱՑՊԱՆՅԱՆ

# ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԽԹԱՆՈՒՄԸ ԵՎ ՏՆՏՀԱՇՎԱՐԿԸ

ՍՄԿՊ Կենտկոմի այս տարվա սեպտեմբերյան պլենումի որոշումները հրջադարձային նշանակություն ունեցող տնտեսական ռեֆորմ, բարեփոխություններ սահմանեցին, որոնց նպատակն է՝ լայնորեն օգտագործելով սոցիալիստական արտադրաեղանակին ներհատուկ առավելությունները, բարելավելով արդյունաբերության կառավարման և պլանավորման սիստեմը, ամեն կերպ բարձրացնել արդյունաբերական արտադրության արդյունավետությունը։ Այդ հիման վրա խնդիր է դրվում արագացնել հասարակական արտադրության ողջ պրոցեսը, մեր երկրի տնտեսական առաջխաղացումը, սովետական ժողովրդի նյութական ու կուլտուրական բարեկեցության աճը։

Արդյունաբերական արտադրության արդյունավետության բարձրացման խնդրում վճռական դեր են խաղում արտադրության տնտեսական խթանումը և տնտեսական հաշվարկը։ Ահա ինչու թե՛ մեկը և թե մյուսը պլենումի սևեռուն ուշադրությանն արժանացան։

Արտադրության տնտեսական խթանումը և տնտեսական հաշվարկը օբյեկտիվորեն հանդես են գալիս համատեղ, մեկը մյուսի հետ սերտորեն զուգակցված, շաղկապված։ Անհնարին է միմյանցից անջատ քննել այդ երկու կատեգորիաները, որոնք արտահայտում են որոշակի տնտեսական, հասարակական-արտադրական հարաբերություններ։ Իրոք, արտադրության իսկական տնտեսական խթանում չկա այնտեղ, ուր արտադրությունը կազմակերպված չէ լիարժեք տնտհաշվարկային հիմունքներով։ Մյուս կողմից, տնտհաշվարկը կորցնում է իր ներգործուն ուժը, եթե արտադրության տնտեսական խթանումը պատշաճ խորությամբ չի կազմակերպված, իսկ խրախուսման գործոնները թույլ են դրսևորվում։

Պարտիայի Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը նոր ձևով է դնում արտադրության տնտեսական խթանման, տնտեսական հաշվարկի ամրապնդման ու զարգացման խնդիրները։ Ընդ որում այդ խնդիրների հաջող լուծման նախապայման պետք է հանդիսանան պլենումի որոշումների իրագործման կապակցությամբ ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի կողմից

վերջերս ընդունված ծավալուն միջոցառումները՝ ուղղված արդյունաբերության կառավարման բարելավմանը, պլանավորման կատարելագործմանը և ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնության ընդլայնմանը: Այդ միջոցառումների մեջ կարևոր նշանակություն ունեն հատկապես այնպիսիք, որոնք նպաստում են արդյունաբերական ձեռնարկություններում լրիվ տնտեսական հաշվարկի կազմակերպմանը:

Տնտեսական հաշվարկը դա սոցիալիստական ձեռնարկությունների պլանային տնտեսավարության մեթոդ է: Այն պայմանավորվում է արժեքի օրենքի գործողությամբ և դրանից բխող ապրանքադրամային հարաբերությունների առկայությամբ: Տնտհաշվարկը հենվում է արտադրության վրա կատարած ծախսումների և տնտեսական գործունեության արդյունքների համադրման, չափակցության վրա: Ընդ որում, տնտհաշվարկային հիմունքներով աշխատող յուրաքանչյուր ձեռնարկության խնդիրն է իր արտադրանքի իրացումից դրամական արտահայտությամբ այնքան հասույթ ստանալ, որ հնարավոր լինի փոխհատուցել սպառած արտադրամիջոցները, վճարել բանվոր-ծառայողներին հասանելիք աշխատավարձը և ունենալ որոշակի գումարի շահույթ: Տնտհաշվարկը, այսպիսով, պարտավորեցնում է ձեռնարկության ղեկավարությանը՝ անընդհատ համեմատության մեջ դնելով արտադրության ծախքերը իր տնտեսական գործունեության արդյունքների հետ, ամեն կերպ ձգտել ընդլայնել ու կատարելագործել արտադրությունը, լավացնել նրա արդյունավետությունը և դրա հիման վրա բարձրացնել ձեռնարկության եկամտաբերությունը, նրանում ստացվող շահույթի չափը: Միաժամանակ տնտեսական հաշվարկը ենթադրում է ձեռնարկության և նրա աշխատողների նյութական շահագրգռվածություն և նյութական պատասխանատվություն:

Վերջերս ՍՍՌՄ Մինիստրների սովետի կողմից հաստատված սոցիալիստական արտադրական ձեռնարկության կանոնադրության մեջ ասված է, որ սոցիալիստական պետական արտադրական ձեռնարկությունը դա ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության հիմնական օղակն է: Ձեռնարկության գործունեությունը կառուցվում է կենտրոնացված ղեկավարության և ձեռնարկության ինքնուրույնության ու նախաձեռնության զուգակցման հիման վրա: Ձեռնարկությունը, օգտագործելով իր տնօրինությանը հանձնված պետական ունեցվածքը, ամբողջ կոլեկտիվի ուժերով, վերադաս օրգանի ղեկավարությամբ, ժողովրդա-տնտեսական պլանով սահմանված առաջադրանքների շրջանակներում, ծավալում է որոշակի արտադրական-տնտեսական գործունեություն, որի հիմքում պետք է դրվի տնտեսական հաշվարկը:

Վերոհիշյալից հետևում է, որ յուրաքանչյուր սոցիալիստական ձեռնարկություն ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության ընդհանուր շղթայի անբաժանելի օղակն է, որի օպերատիվ տնօրինությանն է հանձնված համաժողովրդական, սոցիալիստական սեփականության մի մասը: Այս հանգամանքը պարտավորեցնում է ձեռնարկությանն իր տնտեսությունը վարել՝ ելնելով նախ և առաջ հասարակության ընդհանուր շահերից: Դա իր արտահայտությունը պետք է գտնի նրա կողմից համապետական պլանով սահմանված առաջադրանքների ժամանակին և լրիվ կատարման մեջ:

Մյուս կողմից՝ ձեռնարկության գործունեությունը պետք է ընթանա պետական, պլանային, ֆինանսական, վարկային օրգանների հսկողության ներքո: Այդ հսկողությունը չպետք է կրի վարչարարական բնույթ: Վերոհիշյալ



օրգանները ձեռնարկությունների աշխատանքի ընթացքի վրա պետք է ազդեն ոչ թե անմիջական միջամտությունների ձևով, այլ օգտագործելով այնպիսի տնտեսական լծակներ, ինչպիսիք են՝ գինը, շահույթը, աշխատավարձը, վարկը և այլն:

Ձեռնարկության նկատմամբ կիրառվող կենտրոնացված ղեկավարությունը, ինչպես նշված է սեպտեմբերյան պլենումի որոշումներում, երբեք չպետք է կաշկանդի նրա կոլեկտիվի նախաձեռնությունը արտադրության կազմակերպման, կատարելագործման, նրա տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարելավման գործում: Հիշատակած արտադրական ձեռնարկությունների կանոնադրությամբ մեծապես ընդլայնվում են ձեռնարկությունների ղեկավարների իրավունքները: Այժմ, երբ խիստ կրճատվում է վերևից իջեցվող պարտադիր ցուցանիշների քանակը, ընդլայնվում են արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարների հնարավորությունները՝ իրենց տրամադրության տակ ունեցած նյութական, դրամական միջոցների և աշխատանքային ռեսուրսների ինքնուրույն տնօրինության ասպարեզում այն հաշվով, որպեսզի արագացվեն տեխնիկական առաջադիմությունը, արտադրության աճը, մեծանա նրա արդյունավետությունը, բարձրացվի շահութաբերության աստիճանը, լավագույն ձևով զուգակցվեն պետության ու ձեռնարկության կոլեկտիվի շահերը:

Անհրաժեշտ է ընդգծել, որ տնտեսական հաշվարկը ո՛չ միայն պլանային տնտեսավարության մեթոդ է, այլ որոշակի հարաբերություններ արտահայտող տնտեսական կատեգորիա: Տնտեսական հաշվարկի այս չափազանց կարևոր կողմը մինչև պարտիայի Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը տնտեսագիտական գրականության մեջ և պրակտիկ կյանքում, կարելի է ասել, թերագնահատվել է: Դրանով պետք է բացատրել այն, որ տնտհաշվարկը մեր ձեռնարկություններում հաճախ կրել է ձևական բնույթ, լիարժեք չի եղել: Միաժամանակ թույլ է եղել նաև աշխատողների նյութական շահագրգռվածությունը ձեռնարկությունների արտադրական գործունեության ընդհանուր արդյունքների մեջ:

Վերարտադրության ռեալ, օբյեկտիվ պրոցեսը մեր սոցիալիստական արտադրական ձեռնարկություններում միջնորդավորվում է հարաբերությունների մի ամբողջ սիստեմով: Այդպիսիք ընդգրկում են ինչպես բուն արտադրության, այնպես էլ բաշխման, փոխանակման ու սպառման ոլորտները: Այդ հարաբերությունները, որոնք ստեղծվում են արտադրական ձեռնարկության ներսում, ձեռնարկության և նրա հետ առնչվող մյուս արտադրական ու ոչ արտադրական կազմակերպությունների միջև, կազմում են տնտհաշվարկային գործունեության բովանդակությունը: Տնտհաշվարկային գործունեության հիմքում պետք է ընկած լինի համարժեք ծառայությունների այնպիսի փոխանակում, որի շնորհիվ տվյալ ձեռնարկության աշխատանքների համար ստեղծվեն օպտիմալ, այսինքն՝ առավել նպաստավոր պայմաններ: Միայն այդ միջոցով է հնարավոր իրագործել տնտեսական հաշվարկի խնդիրը՝ նվազագույն ծախսումներով հասնել առավել արդյունքի, բարձրացնելով ձեռնարկության շահութաբերության աստիճանը:

Պետք է ասել, որ մեզ մոտ, վերոհիշյալ առումով, դեռևս լրիվ տնտհաշվարկային հարաբերություններ չեն հաստատվել: Մենք նկատի ունենք այն հարաբերությունները, որոնք, սովորաբար ստեղծվում են. ա) սովետական պետության (հանձինս նրա տնտեսական, ֆինանսական և վարկային օրգաննե-

րի) և արդյունաբերական առանձին ձեռնարկությունների միջև, բ) ձեռնարկությունների, ինչպես նաև արդյունաբերական ձեռնարկության և նրա հետ գործարքի մեջ մտնող առաքող, մատակարարող, տրանսպորտային և այլ բնույթի կազմակերպությունների միջև, գ) արդյունաբերական ձեռնարկության և նրանում զբաղված աշխատողների միջև։ Ահա ինչու սեպտեմբերյան պլենումը չափազանց կարևոր, հասունացած խնդիր համարեց տնտհաշվարկային հարաբերությունների վերոհիշյալ ուղղություններով ամեն կերպ խորացումն ու զարգացումը։

Նոր սկզբունքներով են կազմակերպվում հասարակության (պետության) և առանձին արդյունաբերական ձեռնարկության փոխհարաբերությունները։ Դա, առաջին հերթին, պետք է արտահայտվի ձեռնարկության եկամուտների բաշխման մեջ, որոնք գլխավորապես հանդես են գալիս շահույթի ձևով։ Որպեսզի տնտհաշվարկային աշխատանքի սիստեմն ամեն կերպ խթանի ձեռնարկության օպերատիվ տնօրինությանը հանձնած արտադրական ֆոնդերի օգտագործման ցուցանիշների բարելավումը, բարձրանան արտադրության տեխնիկական հագեցվածությունն ու արդյունավետությունը, անհրաժեշտ է համարվում ստացվող շահույթի մի զգալի մասը թողնել ձեռնարկության տրամադրության տակ։ Շահույթի այդ մասը պետք է օգտագործվի արտադրության կատարելագործման, աշխատողների խրախուսման, նրանց աշխատանքի, կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման նպատակին։

Տնտհաշվարկը վերջին տարիներին թուլանում էր այն պատճառով, որ արդյունաբերական ձեռնարկությունների տրամադրության տակ էր թողնվում նրանցում ստացված շահույթների հետզհետե պակասող մասը։ Այդ շահույթների աճող բաժինը մասհանումների կարգով փոխանցվում էր պետական բյուջեին։ Այսպես, եթե 1958 թ. ՍՍՌՄ արդյունաբերության մեջ ստացված շահույթների 55 տոկոսն էր մասհանվել պետական բյուջեին, ապա 1962 թ. այդ տոկոսը բարձրացավ մինչև 64-ի, իսկ 1965 թ. այն հավասար կլինի 70 տոկոսի։ Բյուջեին արված մասհանումներից հետո ձեռնարկությունների տրամադրության տակ մնացած շահույթների զգալի մասն ուղղվում է կապիտալ ներդրումների ֆինանսավորմանը (14 տոկոս) և ձեռնարկության շրջանառու ֆոնդերի համալրման նպատակին (11 տոկոս)։ Այսպիսով, ներկայումս շահույթների մոտավորապես հինգ տոկոսն է հատկացվում ձեռնարկության ֆոնդին (ՀՍՍՌ արդյունաբերության մեջ 1964 թ. այն կազմել է 3,5 տոկոս)։ Ըստ որում այդ միջոցների տեսակարար կշիռը հետզհետե պակասել է։

Հետաքրքիր է նաև ընդգծել հետևյալը։ 1958 և 1963 թթ. ընթացքում ՍՍՌՄ-ի արդյունաբերության շահույթները 10 677 միլիոն ռուբլուց հասել են մինչև 19 600 միլիոնի, այսինքն՝ ավելացել են 84 տոկոսով։ Մինչդեռ շահույթների հաշվին ստեղծվող ձեռնարկությունների խրախուսման ֆոնդերն այդ նույն ժամանակամիջոցում 853 միլիոն ռուբլուց հասել են 908 միլիոնի, այսինքն՝ ավելացել են միայն 6,4 տոկոսով։ Երկրի արդյունաբերական ձեռնարկությունների մոտավորապես կեսը չունի ձեռնարկության ֆոնդ, հետևաբար և՝ բանվոր-ծառայողներին նյութապես խրախուսելու միջոցներ։

Բնորոշ է Կիրովականի արհեստական մետաքսաթելի գործարանի օրինակը։ Այս նորակառույց ձեռնարկության կոլեկտիվը կարճ ժամանակամիջոցում տիրապետեց արտադրության նուրբ տեխնոլոգիային, հասավ ձեռնարկության նախագծային կարողությանը և գերազանցեց այն, բարձրացրեց աշխատանքի



արտադրողականությունը և իջեցրեց թողարկվող արտադրանքի ինքնարժեքը։ Այս հաջողությունների շնորհիվ ձեռնարկության շահույթը 1963 թ. 4 865 հազար ռուբլու դիմաց 1964 թ. կազմեց 5 970 հազար ռուբլի, այսինքն՝ աճեց 23 տոկոսով։ Չնայած դրան, մետաքսաթելերի գործարանը 1963 թ. ձեռնարկության ֆոնդ չունեցավ, իսկ 1964 թ. այն կազմեց ընդամենը 126 հազար ռուբլի, այսինքն՝ ստացված շահույթների միայն 2 տոկոսը։ Գրեթե նույն մակարդակի վրա կգտնվի ձեռնարկության ֆոնդը նաև ընթացիկ տարում։ Այդ ֆոնդի հաշվին կատարվող նյութական խրախուսումը հիշատակած գործարանի բանվոր-ծառայողների վաստակի վրա որևէ էական ազդեցություն չի թողնում։

Յուրաքանչյուր գործարանում, ֆաբրիկայում ստացվող շահույթի անընդհատ մեծացումը արտադրության արդյունավետության բարձրացման լավագույն ցուցանիշն է։ Սակայն, ինչպես վկայում են վերը բերված տվյալները, ձեռնարկությունը, նրա կոլեկտիվը և այդ կոլեկտիվի անդամները դեռ անմիջականորեն քիչ են շահագրգռված այդ ցուցանիշի բարելավմամբ։

ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումները կոչված են, այդ տեսակետից, կարևոր, սկզբունքային նշանակություն ունեցող փոփոխություններ մտցնել ձեռնարկության և պետության հարաբերություններում։

Արտադրության խթանումն ուժեղացնելու նպատակով նախատեսվում է ավելացնել ձեռնարկությունների տրամադրության տակ թողնվող շահույթի չափը, որի հաշվին էլ հիմնականում պետք է ստեղծվեն ձեռնարկությունների ֆոնդերը։ Բայց շահույթի չափը և շահութաբերության աստիճանը այդ ֆոնդերի առաջացման միակ նախադրյալները չեն լինի։ Միաժամանակ հաշվի կառնվեն թողարկած և իրացրած արտադրանքի քանակը և որակը։ Այլ կերպ ասած, ձեռնարկության ֆոնդերի ստեղծումը կպայմանավորվի նաև նրանով, թե որքանով է մեծացել իրացված արտադրանքի ծավալը և ինչպես են կատարվել կոոպերացված մատակարարումների պլանները բնաձև տեսքով։

Նպատակ է դրվում ո՛չ միայն ավելացնել ձեռնարկություններին թողնվող շահույթի չափը, այլև փոխել շահույթի՝ պետության և ձեռնարկության միջև բաշխման և վերջինիս ֆոնդերի ստեղծման միջև այժմ եղած կարգը։ Այս դեպքում շահույթի բաշխման հիշատակված նկատառումների մեջ վճռական դեր կխաղան օբյեկտիվ, տնտեսական գործոնները։ Այսպես, նախատեսվում է ձեռնարկության շահույթից բյուջեին կատարվող մասհանումների չափը կախման մեջ դնել նրան հատկացրած արտադրական ֆոնդերից։ Չէ որ որքան համեմատաբար մեծ են պետության (համաժողովրդական) միջոցներից տվյալ ձեռնարկությանը տրված արտադրական ֆոնդերը, կնշանակի, այլ հավասար պայմաններում, այստեղ արտադրության տեխնիկական մակարդակը, ֆոնդազինվածությունը, հետևապես և աշխատանքի արտադրողականությունը բարձր պետք է լինեն, իսկ արտադրանքի ինքնարժեքը՝ ցածր։ Ապրանքների մեծածախ թողարկման միասնական գների հետևանքով հիշատակված ձեռնարկությունը համեմատաբար ավելի շատ շահույթ կստանա։ Քանի որ բարձր շահույթի ստացումը, ինչպես տեսնում ենք, պայմանավորված է այն բանով, որ ձեռնարկությունը պետությունից ավելի շատ արտադրական ֆոնդեր է ստացել, այդքանով էլ ավելի պետք է լինի նրա շահույթից բյուջեին կատարվող մասհանումների գումարը։ Դա կապահովվի շնորհիվ այն բանի, որ ֆոնդերի դիմաց մտցվում է վճարումների սիստեմ։ Այլ կերպ ասած, ձեռնարկության շա-

հույթից բյուջեին արվող մասհանումները կսահմանվեն ելնելով նրանից, թե ինչպիսին է այդ ձեռնարկության ֆոնդերի արժեքը։ Ֆոնդերի դիմաց վճարումները կնախատեսվեն յուրաքանչյուր ապրանքի գնի մեջ և բյուջե կփոխանցվեն արտադրանքի իրացման հետ մեկտեղ։ Քանի որ ֆոնդերի դիմաց վճարումները կարվեն ի հաշիվ ստացվող շահույթի, դա կնպաստի գնագոյացման կատարելագործմանը։ Այդ միջոցով հնարավորություն կստեղծվի վերացնելու արդյունաբերության տարբեր ճյուղերում այժմ նկատվող եկամտաբերության աստիճանի խիստ տատանումները։

Հիմնական ֆոնդերի և շրջանառու միջոցների դիմաց վճարումներ կատարելու համար նորմատիվներ կսահմանվեն, որոնք մի քանի տարի շարունակ փոփոխության չեն ենթարկվի։ Դա կշահագրգռի նորմալ գործող ձեռնարկություններին (ուր հիմնական ֆոնդերը և շրջանառու միջոցներն արդյունավետ են օգտագործվում) ո՛չ միայն կատարելու իրենց պարտավորությունները բյուջեի նկատմամբ, այլ ստացած շահույթների հաշվին ստեղծելու արտադրության զարգացման և աշխատավորների նյութական խրախուսման ֆոնդեր։

Ֆոնդերի դիմաց վճարումների սահմանումը կպարտավորեցնի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվներին և նրանց ղեկավարներին՝ շրջահայաց լինել արտադրության միջոցներ ձեռք բերելու մեջ, ժամանակին ազատվել այդ միջոցների ավելորդ կուտակումներից։ Նրանք նյութապես շահագրգռված կլինեն ժամանակին անհրաժեշտ քայլեր անելու եղած հիմնական ֆոնդերը, արտադրական կարողությունները և շրջանառու միջոցները լավագույն կերպով օգտագործելու ուղղությամբ, որպեսզի առկա արտադրական ֆոնդերի յուրաքանչյուր ռուբլու դիմաց ավելի շատ շահույթ ստանան։

Արտադրության տնտեսական խթանումն ուժեղացնելու, տնտհաշվարկը ամրապնդելու նպատակով փոխվում է ո՛չ միայն ձեռնարկությունների կողմից բյուջեին կատարվող մասհանումների, այլև բյուջեից կատարվող հատկացումների կարգը։ Դա, առաջին հերթին, վերաբերում է կապիտալ ներդրումներին։ Այդպիսիք ներկայումս ֆինանսավորվում են պետական բյուջեից՝ անվերադարձ։ Այդ հանգամանքը չի շահագրգռում ձեռնարկության ղեկավարներին՝ անհրաժեշտ խորությամբ հետամուտ լինելու կատարվող կապիտալ ներդրումների արդյունավետությանը, հետևելու, որպեսզի կրճատվեն շինարարության ժամկետները և այն կատարվի բարձր որակով ու էժան։

Նախատեսվում է փոխել կապիտալ ներդրումների ֆինանսավորման սիստեմը։ Այդ կապակցությամբ կսահմանափակվի կապիտալ ներդրումների անվերադարձ ֆինանսավորումը պետության կողմից։ Շինարարության մի մասը այսուհետև կկատարվի բանկային վարկավորման հաշվին։

Նոր ձևով է դրվում նաև ձեռնարկությունների շրջանառու միջոցների համալրման հարցը։ Ներկայումս այդ միջոցների պակասը լրացվում է բյուջեի հաշվին։ Այդ հակասում է տնտհաշվարկի սկզբունքին, քանի որ ձեռնարկությունը փաստորեն ոչ մի պատասխանատվություն չի կրում իրեն հատկացված շրջանառու միջոցների համար։ Հետագայում շրջանառու միջոցների պակասը պետք է լրացվի այդ նպատակով հատկացվող ժամանակավոր վարկերի հաշվին։ Այս հանգամանքը կնպաստի շրջանառու ֆոնդերի խնայողաբար օգտագործմանը՝ հումքի, նյութերի, վառելիքի և այլնի տնտեսմանը, ինչպես նաև շրջանառության մեջ զբաղեցրած ֆոնդերի նպատակահարմար կրճատմանը։

Ամբողջությամբ վերցրած ձեռնարկությունները նյութապես շահագրգռված



կլինեն արագացնելու շրջանառու միջոցների շրջապտույտը, պակասեցնելու դրանց գումարը։ Չէ որ այդ միջոցները ձեռնարկությունների արտադրական ֆոնդերի մի մասն են կազմում, որոնց դիմաց, համաձայն սահմանվող նոր կարգի, վճարումներ պետք է կատարվեն։ Հասկանալի է, որ բյուջե մուծած չարդարացված, ավելորդ գումարները կնվազեցնեն շահույթի մեծությունը, որի հաշվին պիտի գոյանան ձեռնարկության ֆոնդերը։ Դա կիջեցնի ձեռնարկության և նրա կոլեկտիվի նյութական շահագրգռվածությունը արտադրության կատարելագործման, նրա տնտեսական ցուցանիշների բարելավման մեջ։

Պետք է ընդգծել, որ արդյունաբերության կառավարման այժմյան պայմաններում շրջանառու միջոցների շրջապտույտի արագացումը, հատկապես շրջանառության ֆոնդերի կրճատումը, քիչ է մտահոգում մեր մի շարք ձեռնարկությունների ղեկավարներին։ Ռեսպուբլիկայի որոշ գործարաններում ու ֆաբրիկաներում ապրանքների, նյութերի գերնորմատիվային կուտակումները խիստ մեծ են։ Ամբողջությամբ գերնորմատիվային արտադրական պաշարները Հայաստանի ժողտնտխորհի ձեռնարկություններում մինչև 1965 թ. հուլիսի 1-ը կազմել են 15,6 միլիոն ռուբլի, այդ թվում դրսից ներմուծված, բայց գործածության համար ոչ պիտանի նյութերի գումարը հավասար է եղել 2,5 միլիոն ռուբլու։ Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում էլեկտրատեխնիկական արդյունաբերության վեց ձեռնարկություններ չապահովեցին իրենց արտադրանքի իրացումը։ Նրանց պատրաստի արտադրանքի մնացորդը 2,3 միլիոն ռուբլով գերազանցեց սահմանված նորմատիվը։ Նույն երևույթը տեղի է ունեցել 1964 թ., երբ ժողտնտխորհի գրեթե բոլոր վարչությունների ձեռնարկություններում ապրանքանյութական պաշարները 25—50 տոկոսով գերազանցել են սահմանված նորմատիվները։

Տնտհաշվարկային հարաբերությունները պետք է ամրապնդվեն ու խորացվեն նաև, երբ խոսքը վերաբերում է տարբեր արտադրական ձեռնարկությունների, կամ տվյալ արդյունաբերական ձեռնարկության և նրա հետ կապված առաքող, մատակարարող, առևտրական, տրանսպորտային և այլ կազմակերպությունների փոխհարաբերություններին։ Ինչպես հայտնի է, ներկայումս այդ փոխհարաբերությունների մեջ փոխհատուցման սկզբունքը լրիվ չի կիրառվում։ Հայտնի է, որ համապատասխան պայմանագրային պարտավորություններ չկատարելու դեպքում նախատեսվող տուգանքը, տույժը, հաճախ շատ քիչ չափով է հատուցում մյուս կողմի կրած իսկական վնասը։ Տնտհաշվարկային սկզբունքը հետևողականորեն անցկացնելու նպատակով նախատեսվում է բարձրացնել ձեռնարկությունների և կազմակերպությունների նյութական պատասխանատվությունը մատակարարումների պայմանագրային պարտավորությունները ձախողելու համար։ Որպես կանոն պատճառած վնասները պետք է հատուցվեն։ Դա, առաջին հերթին, կպահանջի տրանսպորտի աշխատանքների արմատական բարելավում, որպեսզի այն ժամանակին կարողանա արդյունաբերական ձեռնարկություններն ապահովել հումքով, նյութերով, վառելիքով։ Տրանսպորտը պետք է ժամանակին ապահովի պատրաստի արտադրանքը արտադրողներից սպառողներին հասցնելը։

Արդյունաբերական ձեռնարկությունների տնտեսական խթանումն ուժեղացնելու և տնտհաշվարկն ամրապնդելու խնդրում մեծ դեր են խաղալու շահույթների և սեփական այլ միջոցների հաշվին ստեղծվող հետևյալ ֆոնդերը.

ա) արտադրության զարգացման ֆոնդ,

բ) նյութական խրախուսման ֆոնդ,

գ) սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության ֆոնդ։

Արտադրության զարգացման ֆոնդը կգտնվի արդյունաբերական ձեռնարկությունների տնօրինության ներքո։ Դրա շնորհիվ ձեռնարկությունները կկարողանան ինքնուրույնաբար լուծել արտադրության ընդլայնման ու կատարելագործման հարցերը։

Արտադրության զարգացման ֆոնդը կօգտագործվի ֆինանսավորելու համար այն կարգի միջոցառումները, որոնք կապված կլինեն արտադրության ընդլայնման, նրա մեջ նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներդրման, սարքավորումների մոդեռնացման, նորոգման, աշխատանքների մեքենայացման և ավտոմատացման հետ։ Այս ֆոնդի հաշվին կկատարվեն նաև այն բոլոր ծախսումները, որոնք ձեռնարկությունն ինքը անհրաժեշտ կգտնի արտադրության և աշխատանքի կազմակերպումը բարելավելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու, նրա որակը բարձրացնելու տեսակետից։

Արտադրության զարգացման ֆոնդի մեջ կմտնի ամորտիզացիոն մասհանումների մի մասը, որը նախատեսվում է հիմնական ֆոնդերի լրիվ վերականգնման համար։ Բացի հիշատակված աղբյուրներից, արտադրության զարգացման ֆոնդը կարող է ավելանալ ձեռնարկության ոչ պիտանի մեքենաների, սարքերի, աշխատանքի այլ միջոցների վաճառքի հաշվին։

Արդյունաբերական ձեռնարկությունների անմիջական տրամադրության տակ գտնվող արտադրության զարգացման ֆոնդերը ներկայիս համեմատությամբ կմեծանան հինգից վեց անգամ։

Արդյունաբերական ձեռնարկության կողմից ստեղծված եկամուտների հաշվին նյութական խրախուսման, ինչպես նաև սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության վերը հիշատակված ֆոնդերը կոչված են խորացնելու, զարգացնելու տնտհաշվարկային հարաբերությունները ձեռնարկության և այնտեղ աշխատող բանվոր-ծառայողների միջև։ Վ. Ի. Լենինը դեռ 1921 թ. ընդգծել է սոցիալիստական տնտեսության մեջ այդ հարաբերությունների անհրաժեշտությունը։ Ընդհանրացնելով սովետական իշխանության տնտեսական շինարարության չորս տարվա փորձը, նա ասել է, որ նոր հասարակարգի կառուցումը հնարավոր է ոչ թե անմիջապես էնտուզիազմի հիման վրա, այլ մեծ հեղափոխության ծնունդ էնտուզիազմի օգնությամբ, անձնական շահի, անձնական շահագրգռվածության, տնտեսական հաշվարկի հիման վրա [1]։

Ձեռնարկության և նրանում զբաղված աշխատողների տնտհաշվարկային հարաբերությունների խորացումն ու զարգացումն իրենց արտահայտությունը կգտնեն նրանում, որ ձեռնարկության տնտեսական խթանումը սերտորեն կկապվի աշխատողների նյութական շահագրգռվածության հետ։ Այսուհետև նախատեսվում է այնպես կազմակերպել տնտեսական հաշվարկը, որ ձեռնարկության արտադրամասը, աշխատամասը և յուրաքանչյուր աշխատող նյութապես շահագրգռված լինեն ոչ միայն կատարելու իրենց առաջադրանքները, այլ բարելավելու ձեռնարկության աշխատանքի ընդհանուր արդյունքները։ Ամենակա-

[1] Տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 33, էջ 46։



րևորն այստեղ այն է, որ ձեռնարկության շահույթների, եկամուտների աճը, դրանց հիման վրա տրվող պարգևները պետք է դառնան բանվորների ու ծառայողների աշխատանքի վարձատրության լրացուցիչ աղբյուրը։

Վերը մենք նշեցինք, որ արդյունաբերական ձեռնարկությունների մոտ կեսը այժմ չունի շահույթից գոյացող սեփական ֆոնդ։ Այնտեղ, որտեղ այդպիսի ֆոնդեր կան, նրանց հաշվին հատկացվող խրախուսման գումարները աննշան են։ Ըստ որում կարևորն այն է, որ բոլոր տեսակի պարգևները, և խրախուսման մյուս գումարները ներկայումս տրվում են ոչ թե շահույթից, այլ աշխատավարձի ֆոնդից, որը խիստ լիմիտավորվում է և կապվում ինքնարժեքի իջեցման առաջադրանքի հետ։ Այդ հանգամանքը հաճախ արգելակում է նախատեսված պարգևների վճարումը։ Բնորոշ է հետևյալը. համաձայն գործող կարգի, պարգևատրման գումարը կարող է կազմել բանվորների աշխատավարձի ֆոնդի մինչև 20, ինժեներատեխնիկական աշխատողների՝ մինչև 40, և ծառայողների՝ մինչև 20 տոկոսը։ 1964 թվականի փաստացի տվյալների համաձայն ռեսպուբլիկայի ժողտնտխորհի ձեռնարկություններում այն իրականում հավասար է եղել. բանվորների աշխատավարձի ֆոնդի միայն 5,9, ինժեներատեխնիկական աշխատողների՝ 12,8 և ծառայողների՝ 3,3 տոկոսին։

Ձեռնարկությունների աշխատողները ներկայումս առանձնապես մեծ շահագրգռվածություն չեն ցուցաբերում իրենց արտադրությունում ստացվող շահույթի մեծացման, կամ ձեռնարկության շահութաբերության բարձրացման մեջ, քանի որ ստացված շահույթը նրանց վաստակի վրա որևէ էական ազդեցություն չի թողնում։ Աշխատողի շահագրգռվածության ասպարեզը այժմ նեղ է։ Այն գերազանցապես սահմանափակվում է նրանով, թե ինչ է արտադրել ինքը, իր բրիգադան, տեղամասը և, գործող տարիֆային դրույքների ու սահմանված ռոճիկների համաձայն, ինչպիսին կլինի իր, բրիգադայի, տեղամասի ստանալիքը։ Աշխատողը օբյեկտիվորեն, եթե մանավանդ նա բավականին գիտակից չէ, բավարար չափով չի հետաքրքրվում ձեռնարկության տնտեսական գործունեության ընդհանուր արդյունքներով։ Իրոք, այդ արդյունքների դրական կամ բացասական լինելուց, հաճախ աշխատողի ռեալ վաստակը ոչ ավելանում, ոչ էլ պակասում է։

Այժմ այդ կարգը նախատեսվում է փոխել։ Սեպտեմբերյան պլենումի որոշումների համաձայն, արդյունաբերական ձեռնարկություններին այսուհետև հնարավորություն կընձեռվի ստացած շահույթների հաշվին բարձրացնելու բանվորների ու ծառայողների վարձատրությունը։ Բայց դա տեղի կունենա այն չափով, ինչ չափով կաճի տվյալ ձեռնարկության իրացրած արտադրանքի ծավալը, կբարելավվի այդ արտադրանքի որակը, կմեծանա ձեռնարկության շահույթը և շահութաբերության աստիճանը [1]։ Խոսքն այստեղ, իհարկե, չի վերաբերում բանվորների և ծառայողների տարիֆային դրույքներին ու ռոճիկներին։ Այդպիսիք, ինչպես անցյալում, հետագայում էլ կբարձրացվեն միայն կենտրոնացված կարգով։ Սահմանվող նյութական խրախուսման նոր կարգի էությունը նրանում է, որ ձեռնարկության շահույթի մի մասը կդառնա նյութական խրախուսման աղբյուր և դրա հիման վրա պարգևների կշիռը բանվորների և

[1] Այս վերջինն այսուհետև կհաշվարկվի ոչ թե շահույթի և լրիվ ինքնարժեքի, այլ շահույթի ու ձեռնարկության արտադրական ֆոնդերի հարաբերակցությամբ։

ծառայողների վաստակի մեջ զգալի չափով կբարձրանա։ Հենց այդ նպատակով՝ ձեռնարկության շահույթներից արվող մասհանումների հաշվին կստեղծվի վերը նշված աշխատողների նյութական խրախուսման ֆոնդը։

Նյութական խրախուսման ֆոնդի օգտին մասհանումները կկատարվեն մի շարք տարիների համար սահմանվող կայուն նորմատիվների հիման վրա, որոնք կդիֆերենցվեն ըստ առանձին ճյուղերի, թերևս, ըստ ձեռնարկությունների խմբերի։ Ըստ որում խրախուսման ֆոնդի մեծությունը կախված կլինի պլանով նախատեսված արտադրանքի իրացման ծավալից կամ շահույթի աճից և շահութաբերության մակարդակից։ Այս պլանային ցուցանիշների բարելավումն ինքնին կպայմանավորի խրախուսման ֆոնդի մեծացումը. այդ հանգամանքը կխթանի ձեռնարկության կոլեկտիվի ձգտումը՝ առավել լիարժեք օգտագործելու իր ներարտադրական ռեսուրսները։ Այս նկատի առնելով պլանով նախատեսած ցուցանիշներին հասնելու համար տրվող խրախուսման գումարն ավելի մեծ կլինի, քան այն դեպքում, երբ պլանը կգերակատարվի։

Որպեսզի խրախուսվի տեխնիկա-տնտեսական բարձր ցուցանիշ ունեցող նոր իրացվող արտադրանքի թողարկումը, կամ արդեն թողարկվող ապրանքների որակի բարձրացումը, նախատեսվում է նյութական խրախուսման ֆոնդը ավելացնել այն չափով, որ չափով կմեծանա հիշատակած ապրանքների տեսակարար կշիռը։ Նյութական խրախուսման ֆոնդի հաշվին ձեռնարկության բանվորներն ու ծառայողները աշխատանքի բարձր ցուցանիշների համար կպարգևատրվեն ո՛չ միայն տարվա ընթացքում, այլև տարեվերջին, երբ կամփոփվեն ձեռնարկության աշխատանքի ընդհանուր արդյունքները։ Լավագույն աշխատողները միանվագ վարձատրություն կստանան։ Ընդսմին, հաշվի կառնվի նրանց՝ տվյալ գործարանում կամ ֆաբրիկայում աշխատելու անընդմեջ ստաժը։

Ինչպես հիշատակվեց, շահույթների մասհանումների հաշվին ձեռնարկություններում կստեղծվի նաև սոցիալ-կուլտուրական և բնակարանային շինարարության ֆոնդ։ Այդ ֆոնդի հաշվին կկառուցվեն բնակելի շենքեր (այդ նպատակին հատկացվող կենտրոնացած ռեսուրսներից դուրս), մանկական հիմնարկներ, պիոներական ճամբարներ, հանգստյան տներ, սանատորիաներ ու այլ կուլտուր-կենցաղային հիմնարկներ, կամ թե չէ կհոգան այդ կարգի գործող հիմնարկների պահպանման ծախսերն ու բանվոր ծառայողների կենցաղի բարելավման հետ կապված կարիքները։

Պարտիայի և կառավարության միջոցառումներն՝ ուղղված արտադրության տնտեսական խթանումն ուժեղացնելու և աշխատողների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակին, անկասկած կարագացնեն մեր արդյունաբերության առաջիկա նոր վերելքը։ Այն ձեռնարկություններում, ուր արտադրության և աշխատանքի կազմակերպումը բարձր հիմունքների վրա կդրվի, տեխնիկական առաջադիմության համար առավել նպաստավոր պայմաններ կստեղծվեն, նրանց հատկացրած համաժողովրդական արժեքները (հանձինս հիմնական ֆոնդերի ու շրջանառու միջոցների) լավագույն կերպով, արդյունավետ կօգտագործվեն։ Կաճեն ժողովրդական տնտեսության համար անհրաժեշտ արտադրանքի քանակը և շահույթի չափը։ Քանի որ նոր պայմաններում իրացված արտադրանքի ծավալը և շահույթը կդառնան ձեռնարկության աշխատանքի գնահատման հիմնական ցուցանիշները, արտադրության և սպառման կապը կուժեղանա։ Դրա շնորհիվ կուժեղանա նաև հասարակության (պետության), որպես արտադրամիջոցների տիրոջ և նրա հանձնարարությամբ



գործող յուրաքանչյուր արտադրական կոլեկտիվի շահերի միասնությունը։ Արտադրանքի աճը և շահույթի մեծացումը, որ տեղի կունենան ներարտադրական ռեսուրսների մոբիլիզացման և օգտագործման շնորհիվ, այսուհետև հավասարապես ձեռնտու կլինեն թե՛ հասարակության և թե տվյալ կոլեկտիվի համար։ Եթե արտադրված արտադրանքն իրացվել է, կնշանակի կոլեկտիվի աշխատանքը հասարակական ճանաչում է գտել։ Մյուս կողմից, շահույթի մեծացումը, շահութաբերության աստիճանի բարձրացումը կդառնան արդյունաբերական արտադրության արդյունավետության անվիճելի չափանիշներ, իսկ շահույթից կատարվող մասհանումները՝ յուրաքանչյուր աշխատողի նյութական խրախուսման հուսալի աղբյուր։ Այս բոլորի հիմքում ընկած կլինի տնտեսական հաշվարկը։ Նրա հսկայական նշանակությունը չի սահմանափակվի արդյունաբերական ձեռնարկության շրջանակներով։ Լրիվ տնտհաշվարկի արմատավորումը մեր ձեռնարկություններում հիմք կծառայի ողջ հասարակության զուտ եկամտի տեմպերի և ծավալի ավելացման, մեր երկրում ընդլայնված վերարտադրության ուժեղացման և սովետական ժողովրդի կենսամակարդակի բարձրացման։

Արդյունաբերական արտադրության տնտեսական խթանման նոր ձևերին ու մեթոդներին անցումը տեղի կունենա արդյունաբերության կառավարումը բարելավելու, պլանավորումը կատարելագործելու հետ մեկտեղ, ճյուղ առ ճյուղ, 1966—1968 թթ. ընթացքում։ Գնագոյացման կարգավորումը և բարելավումը պիտի դառնան այդ անցման չափազանց կարևոր նախապայմանը։ Գները պետք է մոտեցվեն նրանց հիմքում ընկած ապրանքների արժեքին, այսինքն՝ նրանք պետք է ավելի մեծ չափով արտացոլեն հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի ծախսումները, ներառյալ այնպիսիք, որոնք կապված են արտադրական ֆոնդերի ստեղծման հետ։ Միայն այդ սկզբունքով կառուցված գների հիման վրա հնարավոր կլինի ապահովել արտադրության և շրջանառության ծախքերի հատուցումը, որից հետո նորմալ աշխատող յուրաքանչյուր ձեռնարկություն ի վիճակի կլինի որոշակի շահույթ ստանալ։ Հակառակ դեպքում չհիմնավորված գները կարող են կամ գունազարդել տվյալ ձեռնարկության գործունեության իրական արդյունքները, կամ նսեմացնել դրանք։ Մի դեպքում ձեռնարկությունն ավելի շատ շահույթ կստանա, քան դա նրան կհասներ իր աշխատանքային ավանդի համեմատությամբ, մյուս դեպքում, կոլեկտիվի կատարած քրտնաջան աշխատանքը կարող է չհատուցվել։ Թե՛ մեկ և թե՛ մյուս դեպքում տնտհաշվարկը կխախտվի։ Տնտհաշվարկային հարաբերություններն այդ դեպքում տեղի կտան կամայական, սուբյեկտիվիստական որոշումներին, որոնք ուրիշ շատ վատ հետևանքների պատճառ կարող են դառնալ։

Գնագոյացումը՛ պետք է գիտական հիմունքների վրա դրվի և բարելավվի այդ ուղղությամբ կատարվող ծավալուն աշխատանքների որակը։ Պետք է վերացվեն շահութաբերության այն մեծ, չհիմնավորված տարբերությունները, որ այժմ նկատվում են արդյունաբերության մեջ։ Կիրովականի քիմիական կոմբինատը, օրինակ, իր արտադրանքի վաճառքից 12 տոկոսի չափով վնաս է ստանում, իսկ Պոլիվինիլացետատի գործարանը ընդհակառակը, ստանում է 57 տոկոսի չափով շահույթ։ Շահութաբերության տոկոսը ռետինատեխնիկական գործարանում հավասար է 45-ի, թեթև արդյունաբերության մեջ՝ 7,4-ի, իսկ գունավոր մետալուրգիայի ձեռնարկություններում՝ 28-ի։ Վերոհիշյալը

բնորոշ է ո՛չ միայն մեր ռեսպուբլիկայի, այլև Միության այլ շրջանների արդյունաբերական ձեռնարկությունների համար։ Բավական է նշել, որ ամբողջ ածխային արդյունաբերությունը ներկայումս վնասով է աշխատում։

Բերած օրինակները ցույց են տալիս, որ արդյունաբերության մեծածախ գները խիստ կարիք ունեն վերանայման և գիտական հիմնավորման։ ՍՄԿՊ Կենտկոմի նախագահության և ՍՍՌՄ Մինիստրների սովետի որոշմամբ այդ նպատակով ՍՍՌՄ Պետպլանին առընթեր ստեղծվել է Գների պետական կոմիտե։ Այդ կոմիտեին հանձնարարվել է մինչև 1966 թ. հունվարի 1-ը մշակել և ներկայացնել համապատասխան առաջարկություններ արդյունաբերական արտադրանքի մեծածախ գների սահմանման հիմնական ուղղությունների վերաբերյալ։

Արդյունաբերության կառավարումը բարելավելու, պլանավորումը կատարելագործելու, արդյունաբերական արտադրության նյութական խրախուսումն ուժեղացնելու վերաբերյալ ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումները, նրանց հիման վրա պարտիայի և կառավարության կողմից իրագործվող միջոցառումները մեծ գոհունակությամբ են ընդունվել մեր ժողովրդի, արդյունաբերության բոլոր աշխատողների կողմից։ Այդ որոշումների և միջոցառումների կենսագործման ուղղությամբ խոշոր անելիքներ ունեն արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները, արդյունաբերությունը կառավարող ու պլանավորող օրգանները, գիտական հիմնարկները, հատկապես տնտեսագետները։ Խոսքը ոչ միայն յուրաքանչյուր ձեռնարկության մասնագիտացման խորացման, արտադրական ֆոնդերի, արտադրական կարողությունների ճշգրտման, նրանց ռացիոնալ օգտագործման ուղիների որոշման, արտադրվող բոլոր ապրանքների ինքնարժեքի (կալկուլյացիաների) հիմնավորված մեծությունների սահմանման, այլև ձեռնարկությունների ու կազմակերպությունների հետ տնտեսապես առավել ձեռնտու կապերի հաստատման և այլ բազմաթիվ հարցերի նախապես խոր կերպով մշակման մասին է։ Այլ կերպ ասած, արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարները, պարտիական և պրոֆմիութենական կազմակերպությունների օգնությամբ, պետք է այժմվանից իսկ, սեպտեմբերյան պլենումի որոշումների լույսի տակ, բազմակողմանիորեն վերլուծության ենթարկելով իրենց ձեռնարկության տնտեսական գործունեությունը, կարողանան մշակել և իրագործել անհրաժեշտ միջոցառումներ, որոնք պետք է ապահովեն այդ ձեռնարկությունների անխափան, բարձր շահութաբեր աշխատանքը նոր պայմաններում։



Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

# ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԳԻՏԱԿԱՆ ՊԼԱՆԱՎՈՐՄԱՆ ՀԱՄԱՐ

ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի սեպտեմբերյան պլենումի (1965 թ.) որոշումները նոր էջ են բաց անում սոցիալիստական էկոնոմիկայի պլանային ղեկավարման մեջ։ Այդ որոշումները, Կենտկոմի մարտյան պլենումի (1965 թ.) որոշումների հետ մեկտեղ, ներկայացնում են ձեռնարկումների մի ամբողջ սիստեմ, որը վերաբերում է ոչ թե տնտեսական կյանքի այս կամ այն բնագավառին, այլ ընդգրկում նրա կարևորագույն կողմերը և ունի համընդհանուր բնույթ։ Դրանք ուղղված են տնտեսական ղեկավարման մեջ սուբյեկտիվիզմի և վոլյունտարիզմի դեմ և սոցիալիստական տնտեսության ղեկավարումը փոխադրում են գիտական հիմքերի վրա՝ լայնորեն օգտագործելով տնտեսական մեթոդները։

Տնտեսության պլանային ղեկավարումը եղել և մնում է սոցիալիստական սիստեմի մեծագույն առավելություններից մեկը՝ տնտեսության կապիտալիստական սիստեմի նկատմամբ։ Պլանավորման մեջ ցայտուն դրսևորվում է այն իրողությունը, թե մարդկային պատմության մեջ առաջին անգամ հնարավոր է տնտեսական շինարարության պրակտիկայում կիրառել տնտեսական օրենքները և օգտագործել դրանք հանուն հասարակության շահերի։

Հենվելով մարքսիստական-լենինյան տեսության վրա և ճանաչելով ու օգտագործելով սոցիալիզմի տնտեսական օրենքները՝ կոմունիստական պարտիան ու սովետական պետությունը լայն մասսաների գործունեությունն ուղղում են սոցիալիստական արտադրության նպատակին։ Խնդիր է դրվում՝ կատարելագործել էկոնոմիկայի ղեկավարումը, բարձրացնել պետական պլանավորման գիտական մակարդակը, կենտրոնացված պլանավորման առաջատար դերի պահպանման հետ միասին բարձրացնել տեղական նախաձեռնությունը՝ միլիոններին ներգրավել տնտեսական կյանքի ղեկավարման մեջ։ Պլանավորման դերի և գիտական մակարդակի բարձրացման անհրաժեշտությունը որոշվում է ժողովրդական տնտեսության աճած մասշտաբներով, գիտության ու տեխնիկայի արագ առաջադիմությամբ, կոմունիստական շինարարության նոր խնդիրներով։

Ժողովրդական տնտեսության զարգացման ներկա պայմաններում ակնհայտ դարձավ, որ սոցիալիստական էկոնոմիկայի պլանավորման ու կառավարման այժմյան սիստեմը չի համապատասխանում նոր պահանջներին։ Ղե-

կավարման մեջ վարչարարական մեթոդների առկայությունը դժվարացրեց տնտեսական հարցերի լուծումը: Պարտիայի և կառավարության կողմից ներկայումս կիրառվող տնտեսական ռեֆորմի նպատակն է լայն ասպարեզ բացել տնտեսական օրենքների գործողության համար և օժանդակել աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության բարձրացմանը տնտեսական շինարարության խնդիրները լուծելու մեջ:

Սոցիալիստական էկոնոմիկայի պլանային կառավարման հիմքում ընկած է դեմոկրատական կենտրոնացման լենինյան սկզբունքը: Դրա էությունն այն է, որ երբ համապետական գործերի ղեկավարումը կատարվում է կենտրոնից և տեղերը ենթարկվում են կենտրոնին, իշխանության օրգանները հաշվետու են ժողովրդին, ժողովրդական մասսաները լայն չափերով ընդգրկվում են կառավարման գործում, ապահովվում է տեղերի ինքնուրույնությունը: Պլանավորման մեջ դեմոկրատական կենտրոնացման լենինյան սկզբունքների կիրառումը թույլ է տալիս հասարակական տնտեսության կենտրոնացված պետական-պլանային ղեկավարումը զուգակցել աշխատավորական մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը բարձրացնելու, տեղական մարմիններին տնտեսական ու կուլտուրական շինարարության ղեկավարման մեջ լայն իրավունքներ տալու հետ: Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ ղեկավարման ու կառավարման մեջ չպետք է թույլ տալ վերևից սահմանված շաբլոն ու միակերպություն:

Կիրառել դեմոկրատական կենտրոնացման լենինյան սկզբունքները պլանավորման մեջ՝ նշանակում է պետական միասնական պլանում սահմանել միայն հիմնական, վճռական, համապետական նշանակություն ունեցող առաջադրանքներ, որոնք կարող են որոշել երկրի էկոնոմիկայի գլխավոր ուղղությունները, ժողովրդական տնտեսության զարգացման տեմպերն ու համամասնությունները: Պետական կենտրոնացված պլանավորումը տեղական նախաձեռնությունը բարձրացնելու հետ զուգակցելու համար պահանջվում է ամեն կերպ կատարելագործել տնտեսական մեթոդները:

ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումներում ժողովրդական տնտեսության կառավարման գործում տնտեսական մեթոդների կատարելագործման հարցը կապված է կառավարման տերիտորիալ սկզբունքից ճյուղային սկզբունքին անցնելու հետ: Այժմ արդյունաբերության ճյուղային կառավարումը արդյունաբերական մինիստրությունների միջոցով իրականանալու է, մի կողմից՝ կառավարման կենտրոնացմամբ, իսկ մյուս կողմից՝ ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնության ընդլայնմամբ: Պարտիայի և կառավարության կողմից մշակված ու կիրառվող միջոցառումների սիստեմը կնշանակի մի խոշոր առաջընթաց քայլ դեպի դեմոկրատական կենտրոնացման լենինյան սկզբունքների իրականացումն ու զարգացումը: Այստեղ նորն այն է. որ այժմ ավելի, քան երբևէ առաջին պլանի վրա է քաշվում տնտեսական լծակների օգտագործումը:



Պահանջվում է, որ ժողովրդական տնտեսության հնգամյա և տարեկան պլանները լինեն օպտիմալ: Օպտիմալ կամ լավագույն են այն պլանները, որոնք հնարավորություն են տալիս կենսագործելու պարտիայի ծրագրով նա-



խատեսվող սոցիալիստական տնտեսավարության հիմնական սկզբունքը: «Հանուն հասարակության շահերի առավելագույն արդյունքի հասնել նվազագույն ծախսերով՝ այս է տնտեսական շինարարության անվերապահ օրենքը»: Ուրեմն, որպեսզի մեր պլանները լինեն օպտիմալ, պետք է խարսխվեն նոր տեխնիկայի վրա, նախատեսեն նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների առավել արդյունավետ օգտագործում և ապահովեն ժողովրդական տնտեսության զարգացման բարձր տեմպեր: Օպտիմալ պլանը պետք է լինի ռեալ, չպետք է հանդուրժի ավելորդ լարվածություն և պետք է պայմաններ ստեղծի սոցիալիստական ընդլայնված վերարտադրության, հետագա պլանային ժամանակաշրջանի համար: Այսպես, եթե մշակված է, ասենք, 1966—1970 թվականների ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանը, այդ պլանն առավել արդյունավետ ձևով լուծելով նշված ժամանակաշրջանի տնտեսական խնդիրները՝ միաժամանակ նախադրյալներ պետք է ստեղծի 1971—1975 թվականների պլանի համար: Այդ նպատակով պետք է անհրաժեշտ կուտակում ստեղծվի նյութական արտադրության ճյուղերում: Օպտիմալ պլանը չի կարող հանդիսանալ լոկ առաջադրանքների միագումար, այն պետք է պարունակի այդ առաջադրանքները կատարելու եղանակներն ու միջոցները: Օպտիմալ պլանավորման պրոբլեմների լուծումը պահանջում է սոցիալիզմի տնտեսական օրենքների խոր ճանաչում, մասնավորապես պլանաչափ համամասնական զարգացման օրենքի ճանաչում ու օգտագործում:

Այդ օրենքի էության անբավարար ճանաչումը հաճախ տնտեսական մեթոդների կիրառման փոխարեն հանգեցնում էր վարչարարության, պլանավորման պրակտիկայում ժողովրդական տնտեսության համամասնությունների պրոբլեմը հաճախ լուծվում էր աշխատանքի տնտեսման անհրաժեշտությունից անկախ: Սոցիալիզմի տնտեսական օրենքների ճանաչումը պահանջում է պլանավորման կարևորագույն տնտեսական պրոբլեմների մշակում, որպեսզի հնարավոր լինի ստեղծել արտադրության առավել առաջադիմական կառուցվածք: Պլանաչափ զարգացման տնտեսական օրենքի, ինչպես և արժեքի օրենքի պահանջներն անտեսելու հետևանքով պլանավորման մեջ մեզ մոտ թույլ էին տրրվում սխալներ: Տնտեսական բարդ խնդիրները լուծվում էին չմտածված, հապճեպ ու սխալ: Դա հասցնում էր անհրաժեշտ համամասնությունների խախտման և լուրջ անհամամասնությունների առաջացման: Պարտիայի Կենտկոմի սեպտեմբերյան պլենումում ժողովրդական տնտեսության հիմնական՝ արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի, արդյունաբերության և գյուղատնտեսության միջև համամասնությունների խախտման և անհամամասնությունների առաջացման բազմաթիվ փաստեր բերվեցին:

Օպտիմալ պլանավորումը հրամայողաբար պահանջում է տնտեսության հաշվենկատ վարում, առանց որի չի կարող լինել հասարակական արտադրության արդյունավետության բարձրացում: Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման այսօրվա մակարդակը պահանջում է լայն ասպարեզ տալ տնտեսության կառավարման մեջ տնտեսական մեթոդներին և արմատախիլ անել վարչարարության, սուբյեկտիվիզմի հետքերը: Տնտեսության կառավարման մեջ վարչարարությունն ու սուբյեկտիվիզմը հեղհեղուկ են դարձնում պլանները, թուլացնում են պլանների կատարման տնտեսական ու բարոյական խթանները, դրանով իսկ հսկայական վնաս պատճառելով ժողովրդական տնտեսությանը: Պարտիայի Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը միջոցառումների մի ամբողջ

սիստեմ մշակեց ժողովրդական տնտեսության պլանավորումը կատարելագործելու ուղղությամբ, որոնց իրականացումը հնարավորություն կտա բարձրացնելու պլանավորման գիտական մակարդակը և հասնելու օպտիմալ պլանավորման։

Ժողովրդական տնտեսության զարգացման պլանի օպտիմալության գլխավոր չափանիշն այն է, թե որչափով է այն ապահովում հասարակական ողջ արտադրության արդյունավետության բարձրացումը։ Այդ արդյունավետությունը պետք է համարենք պլանի այն տարբերակը, որի շնորհիվ աշխատողների միևնույն թվի, նույն ֆոնդերի պայմաններում կստացվի ավելի մեծ ազգային եկամուտ։

Սոցիալիստական արտադրության նպատակը հասարակության պահանջմունքների բավարարումն է։ Այդ պահանջմունքների բավարարման աստիճանը որոշվում է ազգային եկամտի սպառվող ծավալի և բնակչության թվի հարաբերությամբ։ Սակայն սպառման ֆոնդի ծավալն էլ իր հերթին կախված է ազգային եկամտի ծավալի մեծությունից և այն համամասնությունից, որով ազգային եկամուտը բաշխվում է ըստ սպառման և կուտակման։ Եթե սպառման ֆոնդը չափից ավելի մեծացվի, կնվազեն կուտակումները, որը հետագայում կհանգեցնի սպառման ֆոնդի նվազեցման։ Որպեսզի այդպիսի անհամապատասխանություններ չլինեն, օպտիմալ պլան մշակելու համար պետք է սպառման ֆոնդի օպտիմալ աճ պլանավորել, այսինքն՝ այնպիսի աճ, որն ընդլայնված վերարտադրության հնարավորություն ընձեռի։ Օպտիմալ պլանավորումը պահանջում է տնտեսական օրենքների առավել խոր ճանաչում։ Պարտիայի Կենտրոնական կոմիտեի սեպտեմբերյան պլենումի որոշումներում արտացոլվել են պլանավորման կարևորագույն տնտեսական պրոբլեմները, որպիսիք են՝ արտադրության առավել առաջադիմական կառուցվածքի ստեղծում, ժողովրդական տնտեսության մեջ առավել ձեռնտու համամասնությունների ապահովում, արտադրանքի որակի բարձրացում, աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործում, ազգային եկամտի և կապիտալ ներդրումների ճիշտ բաշխում, տնտեսական լծակների լավագույն օգտագործում և այլն։



Պլանավորման գիտական մակարդակի բարձրացման գործում շատ կարևոր է պլանի ցուցանիշների սիստեմի կատարելագործումը։ Ժողովրդական տնտեսության զարգացման իրական պրոցեսներն ու տենդենցներն արտացոլվում են պլանի ցուցանիշների սիստեմում։ Այդ սիստեմի միջոցով տրվում են պետական առաջադրանքներ, այն ապահովում է համամասնությունները ժողովրդական տնտեսության մեջ, խթանում արտադրության աճը, արտադրանքի որակի բարձրացումը և այլն։ Պլանի ցուցանիշների սիստեմը պետք է արտացոլի սոցիալիստական ընդլայնված վերարտադրության բոլոր կողմերը, այն է՝ արտադրությունը, բաշխումը, կուտակումը և սպառումը։ Պլանի ցուցանիշների սիստեմը դրսևորում է ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի միջև գոյություն ունեցող օբյեկտիվ կապերը, այդ ճյուղերի զարգացման տեմպերը և դրանց միջև սահմանվող համամասնությունները։ Աշխատանքի հասարակական բաժանման հետագա խորացման հիման վրա, ինչպես նաև տեխնիկական առաջադիմության անմիջական ներգործությամբ, ժողովրդական տնտեսության



կառուցվածքում կատարված փոփոխություններն ավելի բարձր պահանջներ են ներկայացնում ժողովրդական տնտեսության պլանի ցուցանիշների սիստեմը կազմելու նկատմամբ։

ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի սեպտեմբերյան պլենումը նշեց, որ ժողովրդական տնտեսության և, առաջին հերթին, արդյունաբերության զարգացման պլաններում կիրառվող որոշ ցուցանիշներ ճիշտ չեն արտացոլում տնտեսական պրոցեսները և արտադրության հետևանքները։ Այդպիսիներից են, ամենից առաջ, այն ցուցանիշները, որոնց միջոցով արժեքային արտահայտությամբ չափում ենք արտադրանքի ծավալը։ Այդ նպատակի համար մինչև այժմ օգտագործվում էր համախառն արտադրանքի ցուցանիշը՝ համեմատելի գներով։ Համախառն արտադրանքը դա ձեռնարկության թողարկած պատրաստի արտադրանքի, կիսաֆաբրիկատների, արդյունաբերական բնույթի աշխատանքների, պատվիրատուի հումքի, նյութերի, ինչպես նաև անավարտ արտադրության տարբերության արժեքների գումարն է։ Այդ ցուցանիշը չի կարող բնութագրել արդյունաբերական ձեռնարկության բուն գործունեությունը, քանի որ այն խեղաթյուրում է ձեռնարկության իրական վիճակի պատկերը։

Հաշվի առնելով այդ և պլանավորման հետագա կատարելագործման անհրաժեշտությունը, ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի սեպտեմբերյան պլենումը նպատակահարմար գտավ համախառն արտադրանքն այլևս չօգտագործել որպես դիրեկտիվ ցուցանիշ ձեռնարկությունների համար, այն փոխարինել ձեռնարկությունների իրացրած արտադրանքի ծավալով։ Այս նոր ցուցանիշի առավելությունն ամենից առաջ այն է, որ ցույց է տալիս, թե ձեռնարկությունն ինչպիսի և որքան արտադրանք է տվել ժողովրդական տնտեսությանը, քանի որ իրացվել կարող են միայն մեծ պահանջարկ ունեցող ապրանքները (համապատասխան որակի ու տեսակի), ուստի այդ կստիպի ձեռնարկություններին՝ հատուկ ուշադրություն նվիրել արտադրանքի որակին, քաջ գիտենալով, որ ցածրորակ արտադրանքը չի գտնի պահանջարկ։

Այսպիսով, արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքի ընդհանուր ծավալը բնութագրող՝ համախառն արտադրանքի ցուցանիշը նոր՝ իրացված արտադրանքի ցուցանիշով փոխարինելը առաջ է քաշում նաև արտադրանքի որակը բնութագրող ցուցանիշի հարցը։ Հասարակության պահանջմունքները բավարարելու համար անհրաժեշտ են սպառողական արժեքների որոշակի տեսակներ, ուստի պլանի կատարման ցուցանիշ կարող է ծառայել ո՛չ միայն իրացված ապրանքի ծավալը արժեքային արտահայտությամբ, այլև՝ ապրանքների անվանացանկը և որակը։ Դրան համապատասխան Կենտրոնական կոմիտեի սեպտեմբերյան պլենումի որոշումներում նշվեց, որ պլանային ցուցանիշների սիստեմում պետք է պահպանվեն արտադրանքի անվանացանկը և նրանց որակին վերաբերող առաջադրանքները։ Խնդիր է դրված՝ արդյունաբերության բոլոր ճյուղերում բարձրացնել արտադրանքի որակը, ընդլայնել ու բարելավել ասորտիմենտը, ամենուրեք արմատավորել պետական ստանդարտները։

Արտադրանքի որակը, նրա հուսալիությունը և երկարակեցությունը որոշվում են մի շարք գործոններով, որոնք ներգործում են արտադրության և արտադրանքի օգտագործման վրա։ Դրանցից կարևոր են՝ ելակետային հումքի որակը, արտադրության տեխնիկան ու տեխնոլոգիան, արտադրանքի օգտագործման կուլտուրան և այլն։

Որո՞նք են արտադրանքի որակական ցուցանիշների մշակման ընդհանուր

հիմունքները: Նախ՝ պետք է որոշել միևնույն, սակայն, տարբեր որակի ապրանքների համեմատելիության չափանիշները: Այսպես, եթե տրակտորի աշխատանքի երաշխավորված ժամկետը բարձրացվում է երկու անգամ, ապա դա իր նշանակությամբ հավասար է արտադրության կրկնապատկման, սակայն այն առավելությամբ, որ հասարակությունը դրան հասնում է առանց նյութական ու աշխատանքային լրացուցիչ ծախսերի: Հասկանալի է, որ եթե մեքենան որակյալ է, ապա նրա ծառայության ժամկետը երկար է, շահագործման ծախսերը՝ քիչ, ուստի և այն ձեռնտու է:

Սակայն արտադրանքի որակը խրախուսելու համար բարձրորակ արտադրանքի նմուշահատերի գինը պետք է բարձր լինի: Այստեղ խոսքը արտադրանքի մեծածախ գնի մասին է, որի բարձրացումը կմեծացնի ձեռնարկության եկամտաբերությունը: Իսկ մանրածախ գինը չի բարձրանա:

Պլանավորման գիտական մակարդակի հետագա բարձրացումը պահանջում է պլանների մշակման մեթոդների և, առաջին հերթին, այսպես կոչված, նորմատիվային մեթոդի մակարդակի բարձրացում: Նորմատիվային այժմյան մեթոդը շատ հեռու է պլանավորման պահանջները բավարարելուց: Նորմատիվային մեթոդի կիրառման այժմյան վիճակը բնութագրվում է նյութական ռեսուրսների ծախսման բնագավառում կիրառվող բարձր և հնացած նորմաներով, որոնք հնարավորություն չեն տալիս, մի կողմից՝ ճիշտ որոշելու ժողովրդական տնտեսության պահանջները, իսկ մյուս կողմից՝ որոշելու տնտեսության ճյուղերի փոխադարձ կապերը: Նորմաներն ըստ իրենց բովանդակության ու նշանակության պետք է հանդես գան որպես արտադրության պարզ տարրերի քանակական որոշվածություն և չափի միավոր, ուստի և ծառայեն ելակետային հիմք՝ մշակելու յուրաքանչյուր ձեռնարկության, ճյուղի, ժողովրդական տնտեսության պետական միասնական պլանը:

Հասկանալի է, որ նորմաներն ամենից առաջ հանդես են գալիս ձեռնարկություններում, որպես անհատական նորմաներ: Այդ անհատական ծախսումների միագումարից գոյանում են միջին փաստական նորմաները, որոնք, սակայն, չպետք է դրվեն պլանների հիմքում: Ներկայումս գործող նորմաները չեն համապատասխանում արտադրության մակարդակին, չեն խթանում խնայողական ռեժիմը, ուստի և դրանք պետք է փոխարինվեն նոր, պրոգրեսիվ նորմաներով:

Այդպիսի նորմաներն ունեն դիրեկտիվ բնույթ և դրվում են պլանների մշակման հիմքում: Ժողովրդական տնտեսության, ինչպես և առանձին ձեռնարկությունների զարգացման պլանները մշակելիս հատուկ նշանակություն է տրվում արտադրության մեջ նյութական ռեսուրսների ծախսման նորմավորմանը, ինչպես, օրինակ, հումքի, վառելիքի, էլեկտրաէներգիայի և այլն: Ավելին, նյութական ծախսումների նորմաների իջեցումը խնայողության և արտադրանքի ինքնարժեքի իջեցման աղբյուր է հանդիսանում: Եթե նկատի ունենանք, որ արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի մեջ նյութական ծախսերը կազմում են ամբողջ ծախսերի մոտ $^{3}/_{4}$-ը, ապա հասկանալի կլինի, թե ինչպիսի նշանակություն ունի դրանց ծախսման նույնիսկ մեկ տոկոսի չափով իջեցումը: Այնպես պետք է բարելավել պլանավորման նորմատիվային մեթոդը, որ դրանք չլինեն միջին վիճակագրական, այլ առաջադիմական, այսինքն՝ նորմաները մշակելիս պետք է հաշվի առնել առաջավոր ձեռնարկությունների փորձը՝ նյութերի, վառելիքի, էներգիայի ծախսման և սարքավորումների օգտագործման ասպարեզում: Այդ անհրաժեշտ է տեխնիկական առաջադիմության, արտադրության հետագա կատարելագործման համար: Մշակված նորմաները չպետք է համարել վերջնական, այլ հարկ եղած դեպքում՝ վերանայել դրանք: Տնտեսության սոցիալիստական սիստեմում արտադրական նորմաները մեծ չափով ներգործում են հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի ծախսման, հետևապես և արտադրանքի արժեքի մեծության վրա:



Սահմանելով նորմաներ ու ձգտելով դրանց կատարմանը, հասարակությունը պլանային կարգով ներգործում է հանրորեն անհրաժեշտ ծախսերի մակարդակի վրա: Այսպիսով, պլանային նորմաները ելակետային հիմք և կազմակերպող սկիզբն են այն ստեղծագործական պրոցեսի, որը վարվում է ձեռնարկություններում արտադրության ծախսերը կրճատելու ուղղությամբ: Ժողովրդական տնտեսության պլանավորման նորմատիվային բազայի՝ ըստ արդյունաբերության ճյուղերի կատարելագործումը հատկապես մեծ նշանակություն է ստանում այժմ, երբ վարչական կառավարման մեթոդներն իրենց տեղը զիջում են կառավարման տնտեսական մեթոդներին: Չի կարելի չնկատել, որ արդյունաբերության տերիտորիալ կառավարման պայմաններում երկրի միատիպ արդյունաբերական ձեռնարկությունները, գտնվելով տարբեր ժողտնտխորհների իրավասության տակ, պլանները մշակելիս հիմնվում էին տարբեր նորմաների վրա, ուստի, առաջադիմական նորմաները չէին դառնում արդյունաբերության ամբողջ ճյուղի սեփականությունը: Անցումը տերիտորիալ կառավարումից ճյուղային կառավարման (մինիստրությունների միջոցով) լիակատար հնարավորություն է ընձեռում ամբողջ ճյուղի միատիպ ձեռնարկությունների համար մշակել միասնական տեխնիկական նորմաներ: Արտադրական նորմաների ստեղծումն ըստ արդյունաբերության ճյուղերի հնարավորություն կտա բարձրացնելու ժողովրդական տնտեսության պլանավորման գիտական մակարդակը, բարձրացնելու նորմաների դերը, ներքին ռեզերվները մոբիլիզացնելու հանուն ժողովրդական տնտեսության նոր, հզոր վերելքի:



Պլանավորման կատարելագործման և տնտեսական խթանման ուժեղացման նպատակով անհրաժեշտ է արմատապես վերակառուցել արդյունաբերության պլանային ղեկավարման մեթոդները: Այսպես՝ մինչև այժմ արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքը չափավորվում էր պլանային բազմաթիվ ցուցանիշներով, որոնք սահմանափակում էին ձեռնարկությունների կոլեկտիվների նախաձեռնությունը և իջեցնում նրանց պատասխանատվությունը արտադրությունն առավել արդյունավետ կազմակերպելու գործում: Պարտիայի կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումներով այժմ վերանում են այդ սահմանափակումները, լայնանում են ձեռնարկության իրավունքները: Այժմ պլանային մարմինների կողմից ձեռնարկություններին կտրվեն շատ սահմանափակ թվով ցուցանիշներ, ինչպես, օրինակ, իրացվող արտադրանքի չափը, թողարկվող հիմնական արտադրանքի անվանացանկը, աշխատավարձի ֆոնդը, շահույթի չափը և եկամտաբերությունը, վճարումները բյուջեին և բյուջեից մասհանումները: Բացի նշված ցուցանիշներից, ձեռնարկությունների համար կսահմանվեն կենտրոնացված կապիտալ ներդրումների ծավալը, հիմնական ֆոնդերի գործարկումը և նյութատեխնիկական մատակարարման հիմնական

ցուցանիշները: Ձեռնարկության տնտեսական գործունեության մնացած բոլոր ցուցանիշները, ինչպես, օրինակ, աշխատողների թիվը, աշխատանքի արտադրողականությունը, միջին աշխատավարձը և այլն, կպլանավորեն իրենք՝ ձեռնարկությունները:

Պլանավորման այս կարգը ձեռնարկություններին կազատի ավելորդ խնամակալությունից և հնարավորություն կտա ինքնուրույն, ձեռնարկության պայմաններին համապատասխան բարձրացնելու արտադրության արդյունավետությունը:

Այդ նպատակով էլ, ահա, ՍՍՌՄ Մինիստրների սովետը և պարտիայի Կենտկոմը հատուկ որոշում ընդունեցին այդ առթիվ, որի բովանդակությունն է.

ա) ապահովել կենտրոնացված պլանավորման և ձեռնարկությունների տնտեսական նախաձեռնության համատեղ զարգացումը.

բ) լրիվ տնտեսական հաշվարկի հիման վրա ընդլայնել ձեռնարկությունների իրավունքները: Արտադրության արդյունավետության բարձրացման ու ձեռնարկության ռեսուրսների աճման համեմատ ավելացնել ձեռնարկությանը տրվող միջոցների չափը, մի կողմից՝ ընդլայնել արտադրությունը, իսկ մյուս կողմից՝ նյութապես խրախուսել աշխատողներին.

գ) ձեռնարկության գործունեությունը գնահատել ըստ իրացված արտադրանքի և ստացած շահույթի, ինչպես նաև արտադրանքի կարևոր տեսակների մատակարարման.

դ) արդյունաբերության աշխատողների աշխատանքի վարձատրությունն անմիջական կախման մեջ դնել ոչ միայն նրանց անհատական աշխատանքից, այլ ձեռնարկության աշխատանքների հանրագումարներից.

ե) ձեռնարկությունների միջև կատարվող տնտեսական հարաբերությունների հիմքում դնել փոխադարձ պատասխանատվության սկզբունքը և բարձրացնել տնտեսական պայմանագրերի դերը:

Ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնությունը բարձրանում է ոչ միայն դիրեկտիվ ցուցանիշների կրճատմամբ, այլև պետությունը ձեռնարկություններին անուղղակի դնում է այնպիսի նպաստավոր պայմաններում, որպեսզի նրանք կարողանան ճիշտ զուգորդել իրենց ձեռնարկության և հասարակության շահերը: Խոսքը վերաբերում է տնտեսական այնպիսի լծակներին, ինչպիսիք են՝ գինը, շահույթը, աշխատավարձը, վարկը և այլն, որոնք պետությունն ի սպաս է դնում ձեռնարկությունների տնտեսական խթանմանը և օգտագործում է որպես տնտեսական լծակներ՝ արտադրական պրոցեսի վրա ներգործելու նպատակով: Աշխատելով տնտեսական հաշվարկի սկզբունքով, ձեռնարկություններն անմիջական կապի մեջ են միմյանց և պետության հետ. խնդիրն այն է, որ այդ հարաբերությունները տնտեսապես նպաստեն ձեռնարկությունների գործունեության բարելավմանը: Մինչև այժմ տնտեսական այնպիսի լծակ, ինչպիսին է շահույթը, քիչ է շահագրգռում ձեռնարկությանը՝ բարձր պլան վերցնելու: Ձեռնարկության ստացած շահույթից նրան մասհանումներ էին կատարում՝ անկախ արտադրական ֆոնդերի ծավալից. այդ չէր շահագրգռում ձեռնարկությանը՝ ավելի արդյունավետ օգտագործելու արտադրական ֆոնդերը: Ձեռնարկությանը տնտեսապես խթանելու նպատակով այժմ մտցրվում է ֆոնդերի վճարելիություն, ըստ այդմ մասհանումը պետական բյուջեի շահույթից կատարվում է ոչ թե մի որևէ տոկոսով, այլ արտադրական ֆոնդերի արժեքին համապատասխան:



Պետական բյուջեի մասհանումները կատարելուց, ինչպես և վարկի տոկոսը վճարելուց հետո, ձեռնարկությունն ստեղծում է հետևյալ ֆոնդերը. ձեռնարկության ընդլայնման ֆոնդ, որի համար բացի շահույթից, աղբյուր է ծառայում նաև ամորտիզացիոն հատկացումների մի մասը: Միայն շահույթի հաշվին ստեղծվում են սոցիալ կուլտուրական ձեռնարկումների ֆոնդ, աշխատողներին նյութապես շահագրգռելու ֆոնդ: Վերջինս նույնպես գոյանում է շահույթի հաշվին և օգտագործվում պարգևատրումների համար, ինչպես և տարեվերջին միանվագ բաժանվում է աշխատողներին (նայած ձեռնարկության շահույթի մեծությանը):

Այս ամենից դժվար չէ նկատել, որ արդյունաբերական ձեռնարկության տնտեսական գործունեությունը բնութագրող ամենակարևոր ցուցանիշներից մեկը դառնում է շահույթը: Շահույթի աճը ձեռնարկության աշխատանքի քանակի ու որակի ամենացայտուն ցուցանիշն է, այն դրսևորում է հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացումը: Շահույթը հանդես է գալիս որպես հասարակական արտադրության արդյունավետությունը բնութագրող չափանիշ, այն հնարավորություն է ընձեռում ձեռնարկությանը՝ ինքնուրույն ընտրելու աշխատանքի արտադրողականության բարձրացման լավագույն եղանակներ: Շահույթը, ինչպես տնտեսական մի շարք կատեգորիաներ, դառնում են պլանի ատրիբուտները, նրա ցուցանիշները: Շահույթի միջոցով զուգակցվում են ձեռնարկության և ամբողջ հասարակության շահերը: Պլանավորման և կառավարման նոր սիստեմի պայմաններում յուրաքանչյուր ձեռնարկություն հնարավորություն է ստանում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու ճանապարհով հասնելու մեծ շահութաբերության, որը լիովին համապատասխանում է հասարակության շահերին:

Սոցիալիստական ձեռնարկության շահույթը տրամագծորեն հակադիր է կապիտալիստական շահույթին, ուստի և այն բնավ չի կարող վերածվել ոչ աշխատանքային եկամտի: Շահույթը սոցիալիստական հասարակարգում հանդիսանում է համաժողովրդական ունեցվածք և ծառայում է արտադրության ընդլայնմանն ու ժողովրդի կենսամակարդակի բարձրացմանը: Որքան ձեռնարկությունը մեծ շահույթ ստանա, այնքան մեծ կլինի նրա ավանդը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, ժողովրդի բարեկեցության բարձրացման գործում: Շահույթի հետ միասին ձեռնարկությունների աշխատողների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու գործում լայն չափով պետք է օգտագործվեն աշխատավարձն ու պարգևատրումները:

Արդյունաբերական ձեռնարկություններում ներկայումս գործող վարձատրման սիստեմը կախված չէ ձեռնարկության եկամտաբերության աստիճանից: Այդ պայմաններում աշխատավարձը և զանազան հավելումներն ու պարգևատրումները աշխատողներին չեն մղել բարձրացնելու ձեռնարկության եկամտաբերությունը: Դրան խանգարում էր նաև աշխատավարձի ֆոնդի բաշխումը, որ ձեռնարկությունների միջև կատարվում է համաձայն նրանց ձեռք բերած մակարդակի, որը հնարավորություն չի տալիս ձեռնարկությանը ունենալու հուսալի աղբյուր՝ աշխատողներին պարգևատրելու համար: Այսուհետև շահույթը և պարգևատրումը կծառայեն որպես ձեռնարկությունների տնտեսական խթան և աշխատողների նյութական շահագրգռվածությունը կապակցող օղակ: Ձեռնարկության տնտեսական խթանման գործում շահույթի հետ մեկտեղ պետք է բարձրանա նաև պարգևատրման դերը բանվոր-ծառայողների

վաստակի մեջ։ Այժմ ձեռնարկություններում ստեղծված է խրախուսման ֆոնդ, որը մասհանվում է շահույթից։ Ինչ վերաբերում է աշխատավարձին և հիշյալ ֆոնդի հաշվին բանվոր-ծառայողներին տրվող հավելումներին, ապա պետք է ասել հետևյալը։

Աշխատավարձը՝ դա, նախ և առաջ ըստ աշխատանքի քանակի և որակի յուրաքանչյուր աշխատողին տրվող անհատական վարձատրությունն է։ Ինչ վերաբերում է ձեռնարկության գործունեության արդյունքներին, ապա այն իրականանում է ամբողջ կոլեկտիվի ջանքերով, ուստի աշխատավարձի մի մասը պետք է կախման մեջ դնել ձեռնարկության աշխատանքի ընդհանուր հանրագումարից և ձեռնարկությունում ստեղծված շահույթից։

Տնտեսական լծակների օգտագործումը, որ լիովին հնարավոր է դառնում պլանավորման նոր կարգի պայմաններում, կշահագրգռի ձեռնարկությունների կոլեկտիվներին՝ մոբիլիզացնելու ներքին ռեզերվները, վերցնելու բարձր պլաններ, կատարելու և գերակատարելու դրանք։ Ինքնըստինքյան հասկանալի է՝ որքան մենք լավ օգտագործենք արժեքի օրենքը և արժեքային կատեգորիաները պլանավորման և ձեռնարկությունների կառավարման ասպարեզում, այնքան ավելի կամրացվի պլանային սկզբունքը ժողովրդական տնտեսության մեջ։ Աններելի սխալ կլիներ կարծել, թե պլանը և արժեքային կատեգորիաները բացառում են միմյանց, ընդհակառակը վերջիններս պետք է ծառայեցնել պլանին և դարձնել պլանի կատեգորիան ու ցուցանիշները։

Արժեքային կատեգորիաների գոյությունը մեր էկոնոմիկայում, որ պայմանավորված է սոցիալիզմին հատուկ ապրանքային արտադրությամբ և արժեքի օրենքի գործողությամբ, անխուսափելի է դարձնում նաև շուկայի և դրանով պայմանավորված տնտեսական կատեգորիաների գոյությունը։ Այստեղ ամենից առաջ պետք է նկատի ունենալ պահանջարկի ու առաջարկի օրենքը, որը սոցիալիստական էկոնոմիկայում չի հանդիսանում կարգավորող, բայց պլանները մշակելիս և արտադրությունը կազմակերպելիս հարկ է լինում հաշվի առնել պահանջարկի ու առաջարկի հարաբերակցությունը։ Պահանջարկի ու առաջարկի օրենքի ազդեցությունն առավել ցայտուն է դրսևորվում ժողովրդական սպառման առարկաների ասպարեզում, մասնավորապես, երբ առևտրական կազմակերպությունների ոչ ճկուն աշխատանքի հետևանքով արտադրությանը չի նախորդում լայն սպառման առարկաների նկատմամբ բնակչության պահանջների ուսումնասիրությունը։

Այսպիսով, արժեքի օրենքը և նրա գոյությամբ պայմանավորված տնտեսական կատեգորիաները պետք է օգտագործվեն ժողովրդական տնտեսության մեջ պլանային սկզբունքի հետագա ամրապնդման նպատակով, հանուն կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման։

---

Ս. ԲՈՅԱԽՉԵՎ

Երևանի ավտոդողերի գործարանի դիրեկտոր

# ՆՈՐ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐ

Արդյունաբերության կառավարումը բարելավելու, պլանավորումը կատարելագործելու և արդյունաբերական արտադրությունը առավել չափով տնտեսապես խթանելու հարցը բխում է կյանքից և մեզ համար անակնկալ չէ։

ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումներում մեծ ուշադրություն է նվիրված պլանավորման և տնտեսական ղեկավարման մեթոդների կատարելագործմանը։ Որոշված են այդ կարևոր գործի երկու գլխավոր ուղղությունները։ Նախ՝ նշված են մի շարք միջոցառումներ, որոնք կոչված են բարձրացնելու էկոնոմիկայի պետական պլանավորման գիտական մակարդակը։ Երկրորդ, մշակված է ձեռնարկությունների ու միավորումների տնտեսական ինքնուրույնությունն ու նախաձեռնությունը ծավալելու միջոցառումների սիստեմ, միջոցառումներ, որոնք պետական միասնական պլանավորումը զուգորդում են ձեռնարկությունների լիակատար տնտհաշվարկի հետ, ճյուղային կենտրոնացված կառավարումը՝ ռեսպուբլիկական և տեղական տնտեսական լայն նախաձեռնության հետ, միանձնյա ղեկավարության սկզբունքը՝ արտադրական կոլեկտիվների դերի բարձրացման հետ։

Մեր պարտիան ուժեղ է նրանով, որ միշտ էլ ժողովրդի առջև դնում է կյանքից բխող խնդիրներ, իսկ ժողովուրդը պատվով է կատարում դրանք։ Այլապես ինչով բացատրել, որ ընթացիկ յոթնամյակում սովետական ժողովուրդը աշխատեց չտեսնված խանդավառությամբ, հայրենասիրական ուժերի բազմապատկման մթնոլորտում։ Արդյունաբերական արտադրության ծավալի 84 տոկոսով մեծացումը մեր արդյունաբերության հսկայական հաջողությունների պերճախոս վկայությունն է։ Մասնավորապես մեր գործարանում յոթնամյակի տարիներին արտադրանքի թողարկումն ավելի քան կրկնապատկվեց։

Սակայն, անվիճելի հաջողությունների կողքին տեսնում ենք, որ արդյունաբերության կառավարումը ժողտնտխորհների միջոցով արդեն լիովին չի համապատասխանում ժամանակի պահանջներին, ունի մեծ թերություններ և հնարավորություն չի տալիս օգտագործելու տնտեսության սոցիալիստական սիստեմի բոլոր առավելությունները։

Բանը միայն այն չէ, որ արդյունաբերության կառավարումը բարելավելու համար ժողտնտխորհները վերացվում են, ստեղծվում մինիստրություններ և ուժեղացվում է կենտրոնացված ղեկավարությունը։

Չէ որ մենք՝ արդյունաբերության աշխատողներս, զգում ենք, որ ինչ-որ բան մեզ կասեցնում է, կամ հնարավորություն չի տալիս առաջ ընթանալու: Զգում ենք, որ կարելի է շատ լավ գործեր կատարել, թողարկել ավելի շատ արտադրանք, այն էլ խիստ դեֆիցիտային, իջեցնել դրա ինքնարժեքը, բայց չենք կարողանում հաղթահարել մեր առջև ծառացած արգելքները: Գործը մինչև վերջ հասցնելու համար պահանջվում են մեծ հաստատակամություն, համառ ջանքեր ու ամուր ներվեր:

Բերենք մի օրինակ մեր ձեռնարկության կյանքից: Ամբողջ ռեսպուբլիկային հայտնի է, թե մեր կոլեկտիվը որքան երկար պայքարեց արտադրանքի որակի հետագա բարելավմանը խանգարող բամբակե կորդն ավելի ամուր և էժան վիսկոզի կորդով փոխարինելու համար: Երկար տարիներ մեզ չէր հաջողվում լուծել այդ հարցը, որովհետև ռեսպուբլիկայում չկարողացան դադարեցնել բամբակե կորդի արտադրությունը Կիրովականի ֆաբրիկայում, իսկ Միության կենտրոնական կազմակերպությունները մեր ձեռնարկությանը չէին տալիս անհրաժեշտ քանակությամբ վիսկոզե կորդ: Հայկական ՍՍՌ ժողտնտխորհը և պետպլանը, միութենական ժողտնտխորհն ու պետպլանը, նրանց բազմաթիվ վարչություններն ու բաժինները չէին կարողանում օպերատիվ լուծել վիսկոզե կորդի արմատավորման հարցը: Այդ պատճառով տարիներ շարունակ թողարկվում էին ցածրորակ և բարձր ինքնարժեքով ավտոդողեր:

Մեր արտադրած ավտոդողերը չէին ապահովում վազանցի երաշխավորված ժամկետները, ձեռնարկությունն ստանում էր բազմաթիվ բողոքներ ու ռեկլամացիաներ, բայց չկար մի ամուր ձեռք, որը կարողանար արագ ու ճիշտ, պետության շահերին համապատասխան, լուծել այդ կարևոր խնդիրը:

Այժմ մեր ձեռնարկությունը լրիվին անցել է վիսկոզե ամուր և էժան կորդի օգտագործման: Ահա արդեն երկու տարուց ավելի է, ինչ ոչ մի բողոք չի ստացվում: Նորամուծության շնորհիվ դողերի դիմացկունությունը կրկնապատկվել է և զգալիորեն իջել է ինքնարժեքը: Այդ միջոցառումից պետությունն ստացել է տասնյակ միլիոնավոր ռուբլու օգուտ:

Բերենք մի այլ օրինակ:

Վորոնեժի ավտոդողերի գործարանում երկար ժամանակ անօգուտ ընկած էին Չեխոսլովակիայում երկտակած 14 կաղապարիչ վուլկանիչներ: Իմանալով այդ մասին, մեր գործարանը ավելի քան երկու տարի առաջ Հայաստանի ժողտնտխորհի միջոցով դիմեց ՍՍՌՄ պետպլանին, ժողտնտխորհին, նավթաքիմիական արդյունաբերության կոմիտեին, խնդրելով այդ սարքավորումները հանձնել մեզ, խոստանալով դրանք ստանալուց 3 ամիս հետո սկսել «Վոլգա» ավտոմոբիլների խիստ դեֆիցիտային դողերի արտադրությունը. գործարանի կարողությունը և արտադրական շենքերը հնարավորություն էին ընձեռում առանց լրացուցիչ կապիտալ ներդրումների կատարելու մեր խոստումը: Սակայն այս կարևոր հարցն այդպես էլ չլուծվեց, քանի որ չկար միասնական ղեկավար օրգան, որը կարողանար որոշել թե վերոհիշյալ սարքավորումը որտեղ կարելի է ավելի արդյունավետ օգտագործել: Ավելի ուշ մենք իմացանք, որ սարքավորումը փոխադրվել է Լենինգրադ, ուր մինչև այժմ էլ արտադրանք չի տալիս:

Այսպիսի փաստեր շատ կարելի է բերել: Սակայն այդ երկուսն էլ բավական են ապացուցելու համար, որ արդյունաբերության ճյուղային ղեկավարման կենտրոնացումը ճիշտ է, և ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի այս տարվա սեպտեմբերյան պլենումը տեղին ու ժամանակին լուծեց այդ հարցը:



ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշման մեջ մեծ տեղ է տրվում աշխատավորների նյութական խրախուսմանը: Որոշումը պահանջում է՝ նյութական խրախուսման դեպքում յուրաքանչյուր աշխատողի գործունեությունը կապել ամբողջ կոլեկտիվի աշխատանքի արդյունքների հետ: Իրենց բոլոր ուժերն ու ընդունակությունները տեխնիկական պրոգրեսի, արտադրանքի որակի բարձրացման, արտադրության արդյունավետության համար մղվող պայքարին նվիրող բարեխիղճ մարդկանց կողքին, ցավոք, մեզ մոտ դեռ կան պորտաբույծներ, որոնք ոչ կոլեկտիվի հետ համաքայլ են ընթանում, ոչ էլ ցանկանում հեռանալ արտադրությունից: Ընդհանուր գործին խանգարող այդպիսի մարդկանց դժվար է հեռացնել, նրանք չարաշահում են մեր կարգերի դեմոկրատիզմը, իրենց ներկայությամբ բացասական ազդեցություն են գործում կոլեկտիվի գործունեության վրա: Մեր պարտիական կազմակերպությունները, հենվելով արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների, անպարտիական ակտիվիստների վրա, բոլոր միջոցներով պետք է վճռական պայքար մղեն այդ երևույթի դեմ:

Պետք է կիրառել աշխատանքի այնպիսի ձևեր, որոնք կոլեկտիվին օգնեն ներգործելու այդպիսի մարդկանց վրա, որպեսզի գլուխ պահողները ենթարկվեն ընդհանուր պարտավանքի և կանգնեն ընտրության առաջ՝ կամ ամբողջ կոլեկտիվի հետ միասին ազնվորեն աշխատեն ընդհանուր վերելքի ապահովման համար, կամ, հակառակ դեպքում, հեռանալ ձեռնարկությունից:

Եթե մեր պարտիական կազմակերպությունները, ձեռնարկության բոլոր աշխատողների շրջանում կոմունիստական վերաբերմունք դաստիարակեն աշխատանքի նկատմամբ, ապա արդյունաբերության առջև ծառացած նոր խնդիրները, անկասկած, հաջողությամբ կլուծվեն:

Պետք է մեծ ուշադրություն նվիրել կադրերի դաստիարակությանը: Շատ հաճախ այս հարցը սխալ ենք հասկանում: Չէ՞ որ մարդկանց դաստիարակել՝ չի նշանակում շարունակ համոզել, նրանց մեջ խղճի խայթ առաջացնել: Կադրերի դաստիարակության գործում գլխավորն այն է, որ կոլեկտիվի անդամի ոչ մի սխալ արարք, ոչ մի խախտում, հրամանի չկատարում, հակաբարոյական քայլ անուշադրության չմատնվի, դառնա աշխատանքային ընկերների, արտադրամասի, ամբողջ ձեռնարկության քննության առարկա:

Մենք ողջունում ենք, որ Կենտկոմի որոշմամբ վերացվեց «համախառն արտադրանքի» ցուցանիշը և պետք է հասնենք այն բանին, որ մեր կազմակերպությունները «համախառն» մոտեցում չունենան մարդկանց նկատմամբ: Աշխատել յուրաքանչյուրի հետ, իմանալ յուրաքանչյուրի կարծիքներն ու պահանջները, ճանաչել նրան՝ միայն այսպիսով կարելի է լավ արդյունքի հասնել դաստիարակչական աշխատանքում:

Չի կարելի լռությամբ անցնել շինարարական կազմակերպությունների աշխատանքի կողքով: Եթե մենք ասում ենք, որ աշխատանքի արդյունքների գնահատումը համախառն արտադրանքի պլանով անցանկալի ցուցանիշ է արդյունաբերական ձեռնարկությունների համար, ապա շինարարական կազմակերպություններում նույնը կարելի է ասել պլանի կատարումը դրամական արտահայտությամբ գնահատելու մասին: Սոսկ այն պատճառով, որ այդ ցուցանիշը մենք գլխավորն ենք համարում շինարարական կազմակերպությունների աշխատանքում, հաճախ ձգձգվում է կարողությունների գործարկումը, անչափ ցածր է լինում աշխատանքի որակը: Ժամանակն է վերջ տալու դրան և շինա-

բարների նյութական խրախուսումը սերտորեն կապելու արտադրական կարողությունների գործարկման հետ։

Արդյունաբերության ղեկավարման նոր պայմաններում մեր բոլորի ամենագլխավոր խնդիրն է՝ ըստ ամենայնի ուժեղացնել տնտեսագիտական աշխատանքը։ Արդյունաբերության մեջ դեռ կան չօգտագործված շատ ռեզերվներ, որոնք կարող են ավելացնել շահույթները։ Վերցնենք այսպիսի մի օրինակ մեր ձեռնարկությունից։ Մենք ամեն տարի օգտագործում ենք ավելի քան 17 միլիոն քառակուսի մետր կորդ։ Կալանդրների վրա կորդի ռետինապատման ժամանակ, կարող ենք այն ձգելով լայնացնել 4—5 սանտիմետր (առանց որակի վրա ազդելու) և միայն այդ ճանապարհով խնայել 500 հազար ռուբլի, կամ լրացուցիչ թողարկել այդքան գումարի արտադրանք։ Խնայված գումարներով ձեռնարկությունը կարող է աշխատավորների համար կառուցել 100 բնակարանանոց բարեկարգ շենք։ Գործարանն ամեն տարի դուրս է թափում ավելի քան 300 հազար ռուբլու այրված ռետին։ Իսկ եթե դրանից պակաս գումար ծախսելով կազմակերպենք հատուկ արտադրություն, ապա ամբողջ թափուկը կօգտագործվի։ Ձեռնարկությունը հսկայական խնայողություն կարող է ունենալ թույլտվածքները նվազագույնի հասցնելու դեպքում։

Ուրեմն, աշխատանքը լավ կազմակերպելով կարելի է մեծ չափով ավելացնել օգուտները և հսկայական գումարներ ծախսել աշխատավորների նյութական խրախուսման համար, կարճ ժամանակում լուծել բնակարանային պրոբլեմը, կառուցել անհրաժեշտ քանակությամբ մանկամսուրներ, մանկապարտեզներ և այլն։

Մեր գործարանն ունի աշխատանքի արտադրողականության բարձրացման, ինքնարժեքի իջեցման, արտադրանքի որակի բարելավման հսկայական ռեզերվներ, բայց դրանք չեն օգտագործվում, որովհետև սեփական նախաձեռնությամբ ինչպիսի հաջողություններ էլ որ ունենա կոլեկտիվը, խրախուսանքի գումարը չպետք է գերազանցի աշխատավարձի 60 տոկոսից։ Այս հանգամանքը կաշկանդում է մարդկանց նախաձեռնությունը, և հարցը պետք է վերանայվի։

Մեր աշխատանքում մեծ չարիք է բանվորական ուժի հոսունությունը։ Երբ սկսում ենք վերլուծել վերջին տարիների հոսունության պատճառները, ապա եզրակացնում ենք՝ դրա հիմնական պատճառն այն է, որ մարդիկ ոչնչով շահագրգռված չեն երկար աշխատելու միևնույն ձեռնարկությունում։ Իմ կարծիքով, պետք է վերականգնել երկարամյա ծառայության համար միանվագ պարգևատրումը։ Հոսունությունը մեզ վրա ավելի թանկ է նստում, քան երկարամյա ծառայության համար տրվող գումարները։

Մեր պարտիական կազմակերպությունները պետք է իրենց աշխատանքը վերակառուցեն ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշման ոգով։ Այդ հնարավորություն կտա հաղթահարելու դժվարությունները և ապահովելու արդյունաբերության հետագա վերելքը։



ՅՈՒ. ԴԵՇԵՐԻԵՎ, | Մ. ԿԱՄԱՐԻ |, Մ. ՄԵԼԻՔՅԱՆ

# ՍՍՌՄ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԼԵԶՈՒՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ԵՎ ՓՈԽԱԴԱՐՁ ՀԱՐՍՏԱՑՈՒՄԸ

КОММУНИСТ
ТЕОРЕТИЧЕСКИЙ И ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦЕНТРАЛЬНОГО КОМИТЕТА КОММУНИСТИЧЕСКОЙ ПАРТИИ СОВЕТСКОГО СОЮЗА

Լեզվի, որպես մարդկանց հաղորդակցման միջոցի զարգացման հիմքը հասարակության զարգացումն է։ Մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրները մշակել են լեզվի ծագման ու պատմական զարգացման սոցիալական պայմանավորվածության, մարդկային հասարակության գոյության տարբեր էտապներում նրա ֆունկցիաների մատերիալիստական թեորիան։

Այժմ, կոմունիզմի ծավալուն շինարարության պրոցեսում ամբողջ սրությամբ առաջ է քաշվում սովետական ժողովուրդների լեզուների վիճակն ու զարգացման հետագա հեռանկարները, նրանց փոխազդեցությունն ու փոխադարձ հարստացումն ուսումնասիրելու խնդիրը։ Այս պրոբլեմը կարիք ունի կոմպլեքսային մշակման՝ լեզվաբանների, սոցիոլոգների, փիլիսոփաների, պատմաբանների, գրականագետների և գիտության այլ բնագավառների ներկայացուցիչների միացյալ ջանքերով։ Լեզվի մեջ արտացոլվում են հասարակական հարաբերությունների, հասարակական գիտակցության, մշակույթի տարբեր կողմերը, ցեղերի էթնոգենեզի, կազմավորման ու ձուլման, ազգությունների ու ազգերի համախմբման, նրանց համագործակցության ու մերձեցման, ժողովուրդների միջև ինտերնացիոնալ կապերի ամրապնդման բարդ պրոցեսները։ Այս պրոբլեմների նկատմամբ հարկ եղած ուշադրության բացակայությունը լեզվաբանության շատ բաժիններում հասցրել է պրոբլեմատիկայի մանրացման, «նկարագրական կողմով» տարվելուն, թուլացրել է հետաքրքրությունը դեպի լայն, ընդհանրացնող փիլիսոփայական և ընդհանուր սոցիոլոգիական հետազոտությունները։

Սովետական հասարակայնությունը արդարացի քննադատության ենթարկեց սովետական լեզվաբանների հիմնական ուշադրությունը դեպի հեռավոր անցյալին վերաբերող հարցերի մշակմանը կամ դեպի գիտական ու գործնական խոշոր հետաքրքրությունից զուրկ մանր, մասնավոր պրոբլեմներն ուղղելու սխալ նկրտումը։ Սա, իհարկե, չի նշանակում, թե չպետք է զբաղվել լեզուների առաջացման ու զարգացման պատմության հատուկ թեմաներով, նրանց հետևողական-տիպոլոգիական ուսումնասիրությամբ, լեզվագիտական հետազոտությունների մեթոդներով, լեզվագիտության մասնավոր հարցերով։

*Բայց այս հարցերը ևս հարկավոր է ուսումնասիրել տեսական ու փիլիսոփայական լայն պլանով, Վ. Ի. Լենինի ծրագրային փիլիսոփայական դրույթների տեսանկյունով, որը լեզվի պատմությունը կապում է իմացության տեսության մշակման հետ, հաշվի առնելով լեզվի զարգացման առաջադիմական տենդենցները։ Լեզվաբանության մեջ, ինչպես և գիտության ամեն մի բնագավառում, բազմաթիվ պրոբլեմներ կան։ Առաջին պլանում պետք է դասել հիմնական, կենտրոնական, առաջատար, առավել այժմեական ու տեսական և գործնական տեսակետից կարևոր պրոբլեմները։*

*Այդպիսին են ժամանակակից մարդկության լեզվական կյանքի զարգացման, լեզուների ֆունկցիոնալ, ներկառուցվածքային զարգացման ու փոխադարձ հարստացման պրոբլեմները, այսինքն՝ այն պրոբլեմները, որոնք անմիջականորեն կապված են մարդկային հասարակության ժամանակակից վիճակի ու հեռանկարների հետ, մեր երկրում կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ։*

*ՍՍՌՄ բազմաթիվ լեզուների զարգացման օրինաչափությունների ուսումնասիրությունը, հնագիր, նորագիր և անգիր լեզուների հարուստ, անկրկնելի փաստական նյութի յուրացումն անհնարին են առանց լեզվաբանության ընդհանուր տեսական, մեթոդոլոգիական հարցերի մշակման, առանց մտածողության ու լեզվի, լեզվի ու հասարակության, հասարակական կյանքի զանազան ոլորտների փոխադարձ կապերի ու փոխադարձ ներգործության, լեզուների զարգացման դիալեկտիկայի կոնկրետ հետազոտության։ Այս պրոբլեմների մշակումը սովետական լեզվաբանության դիրքերը կամրապնդեր նաև բուրժուական փիլիսոփայության ու լեզվագիտության գիտականորեն սնանկ զանազան հոսանքների դեմ մղվող պայքարում։*

*Սովետական բազմազգ պետության կյանքի առաջ քաշած թեմաները— լեզվի ֆունկցիոնալ և ներկառուցվածքային զարգացումը, ՍՍՌՄ լեզուների փոխադարձ հարստացումը, երկլեզվությունը, մայրենի լեզվի կուլտուրան, ռուս*

**ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ**.—Արտատպելով «Կոմունիստ» ամսագրի 1965 թվականի № 13-ում վետեղված Յու. Դեշերիևի, Մ. Կամարիի, Մ. Մելիքյանի «ՍՍՌՄ ժողովուրդների լեզուների զարգացումը և փոխադարձ հարստացումը» հոդվածը, մեր ամսագրի խմբագրությունը լիովին համամիտ է նրանում առաջադրված թեզերի և արված հետևությունների հետ, որոնք էական նշանակություն ունեն ազգերի զարգացման տենդենցների ճիշտ ըմբռնման համար և դրանով իսկ ավարտված է համարում ամսագրում **ազգային հատկանիշների** մարման հարցի շուրջ բացված բանավեճը:

Միաժամանակ խմբագրությունն անհրաժեշտ է գտնում նշել, որ սոցիալիստական ազգերի զարգացման տենդենցի վերաբերյալ բանավեճի ընթացքում դրսևորվեցին միմյանց հակադիր հայացքներ: Ոմանք (Մ. Մելիքյան, Ա. Եղիազարյան) ելնելով ՍՄԿՊ ծրագրում ազգային հարաբերությունների զարգացման վերաբերյալ դրույթներից և մասամբ ընդհանրացնելով սոցիալիստական ազգերի բարգավաճման արդի վիճակը, գտնում են, որ կոմունիզմի ծավալուն շինարարության ժամանակաշրջանում տեղի է ունենում ՍՍՌՄ սոցիալիստական ազգերի էկոնոմիկայի, կուլտուրայի զարգացում, ծաղկում և մերձեցում, իրավահավասարության հիման վրա ազգային լեզուների հարստացում ու փոխհարստացում, ազգերի և ազգությունների բարեկամության ու գաղափարական միասնության ամրապնդում, փոխշփման կապերի ընդլայնում: Այդ պատմական պրոցեսի շնորհիվ ՍՍՌՄ-ը եղել ու մնում է տարբեր ազգերի ու ազգությունների լենինյան վեհ իդեաներով կռդված անսասան միություն: Այդ ընկերների կարծիքով ազգերի զարգացման նշված տենդենցն իր ուժը կպահպանի դեռևս երկար ժամանակ, ընդհուպ մինչև ՍՍՌՄ-ում կոմունիզմի հաղթանակը և նրանից էլ հետո, որովհետև ազգային տարբերությունների և, հատկապես, լեզվական տարբերությունների անհացումը բարդ ու երկարատև պրոցես է:

Բանավիճող ընկերներից Հ. Աղաջանյանը, Ա. Ստեփանյանը, Հ. Ղազարյանը, ընդհակա-



*լեզվի կուլտուրան ՍՍՌՄ ոչ ռուս բնակչության մեջ—ավելի ու ավելի են գրավում լեզվաբանական հիմնարկությունների և բուհերի ուշադրությունը։ Այդ են վկայում 1964 թվականի սեպտեմբերին գումարած կոնֆերանսը, որ նվիրված էր ՍՍՌՄ ժողովուրդների լեզուների փոխազդեցության ու փոխադարձ հարստացման, երկլեզվության, մայրենի լեզվի կուլտուրայի և ՍՍՌՄ մյուս ժողովուրդների մեջ ռուս լեզվի կուլտուրայի հարցերին, ինչպես և ոճաբանության և մեր երկրի ժողովուրդների լեզվական կուլտուրայի զարգացման հարցերին նվիրված խորհրդակցությունը (1965 թ. մայիս)։*

## ԼԵԶՎԱԲԱՆՈՒԹՅԱՆ ՄԻ ՔԱՆԻ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՀԱՐՑԵՐ

*Սովետական հասարակության մեջ լեզուների հետագա զարգացման ուղիներն ու հեռանկարներն ավելի պարզ պատկերացնելու համար անհրաժեշտ է թեկուզ ամենաընդհանուր գծերով պատկերացում ունենալ ժամանակակից մարդկության լեզվային կյանքի մասին։*

*Մասնագիտական գրականության մոտավոր տվյալներով մեր մոլորակի վրա այժմ գոյություն ունի մոտ 2500—3000 լեզու։ Ժամանակակից գիտությունը բավականաչափ ճշգրիտ տվյալներ չունի Աֆրիկայի, Ասիայի ժողովուրդների, Ամերիկայի հնդկացիների զգալի թվով լեզուների մասին։*

*Տվյալ լեզվով խոսող մարդկանց քանակի տեսակետից աշխարհի լեզուները շատ խայտաբղետ պատկեր ունեն։ Այն լեզուների կողքին, որոնցով խոսում են հարյուր միլիոնավոր մարդիկ, կան և լեզուներ, որոնցով խոսում են հազիվ մի քանի հարյուր, կամ նույնիսկ մի քանի տասնյակ մարդ։ Երկրագնդի 900 ժողովուրդներից միայն 218-ն են թվով գերազանցում 1 միլիոնից (այդ թվում 175 ժողովուրդ միավորում է 1-ից մինչև 10 միլիոն մարդ, 33-ը՝ 10-ից մինչև 50 միլիոն և 10 ժողովուրդ՝ 50 միլիոնից ավելի մարդ), 682 ժողովուրդ իրենց թվով մեկ միլիոնից քիչ են։ Ընդ որում, մի շարք երկրներ բազմալեզու*

ռակը, գտնում են, որ կոմունիզմի ծավալուն շինարարության ժամանակ ՍՍՌՄ սոցիալիստական ազգերի զարգացման տենդենցը նրանց ազգային հատկանիշների, բացառությամբ լեզվի, **մարման պրոցեսն է**, նրանց աստիճանաբար միաձուլումը, ըստ որում փոխասիմիլյացիայի միջոցով, որ «Տարբեր ազգերի գոյությունը բարիք չէ, այլ բազմաթիվ սոցիալական չարիքների աղբյուր» (Հ. Ղազարյան): Եվ այդ ըմբռնումը նրանք ջանում են հիմնավորել ոչ թե կյանքից, պրակտիկայից վերցրած օրինակներով ու փաստերով, այլ տեղին և անտեղի ցիտատներով:

Առանց **որոշ ինքնուրույն** աշխատանքի,— ասում էր Լենինը,— ոչ մի լուրջ հարցում չի կարելի ճշմարտությունը գտնել, և ով վախենում է աշխատանքից, նա ինքն իրեն զրկում է ճշմարտությունը գտնելու հնարավորությունից: Կուլտուրայի ու մտքի զարգացման հարցերը մշակելիս,— ուսուցում էր նա,— հապճեպությունը խիստ վնասակար է: Նման հարցերը հրապարակավ արծարծելիս, հարկավոր է վերցնել ոչ թե առանձին օրինակներ ու առանձին տվյալներ, այլ տվյալ երևույթի ամբողջական ընթացքն իր բոլոր միջնորդավորումներով: Ուզած դրույթը հաստատելու համար հասարակական կյանքի վիթխարի լաբիրինթոսից կարելի է ուզած քանակի օրինակներ ու տվյալներ վկայակոչել: Բայց այդպիսով հարցը չի լուծվի:

Ինչպես ցույց տվեց բանավեճը, որոշ վերապահումներով համոզիչ էին ընկ. Մ. Մելիքյանի մեր ամսագրում հրապարակված հոդվածները, որոնք իրոք, խարսխված էին բուն նյութի անմիջական հետազոտության վրա: Մինչդեռ, բանավեճին մասնակցող մյուս ընկերներն այդպես չվարվեցին: Առանց հանգամանորեն ուսումնասիրելու ՍՍՌՄ ժողովուրդների **սովետական ժամանակաշրջանի զարգացման յուրահատկությունները**, բանավեճի մեջ մտան կոնկրետ իրականության միան-

*են: Այսպես, Հնդկաստանում մի քանի հարյուր լեզու և բարբառ կա: Հյուսիսային և Հարավային Ամերիկայում հնդկացիները մի քանի հարյուր լեզու ունեն: Առավել բարդ պատկեր է ներկայացնում Աֆրիկան, որտեղ ազգությունների հարյուրավոր լեզուներ կան, չհաշված ցեղերի բազմաթիվ բարբառները, և որտեղ ազգությունների ու ազգերի համախմբման պրոցեսները ուշադրության կենտրոնում են դնում նաև նրանց լեզուների զարգացման պրոբլեմը:*

*Ժամանակակից լեզուները հասարակական տարբեր ֆունկցիաներ են կատարում. Միավորված Ազգերի Կազմակերպության մեջ միջազգային հաղորդակցման պաշտոնական լեզու են ճանաչված անգլերենը, ռուսերենը, ֆրանսերենը, իսպաներենը և չինարենը: Այս լեզուներն առավել լայն հասարակական ֆունկցիաներ են կատարում: Իսկ անգիր լեզուների ֆունկցիան սահմանափակվում է այդ լեզուները գործածողների կենդանի հաղորդակցման շրջանակում:*

*Գաղութային սիստեմի վերացումն ուղեկցվում է նոր պետությունների կազմավորումով, ազգերի վերածննդով, նոր ազգերի ու ազգությունների ձևավորմամբ՝ իրենց նոր գրական ազգային լեզուներով: Նախկինում չտեսնված չափերով զարգանում է միջազգային հաղորդակցությունը, որը կապված է ժամանակակից քաղաքակրթության առանձնահատկությունների, երկրագնդի վրա տեղի ունեցած սոցիալական ու քաղաքական խոր փոփոխությունների հետ: Տարեց-տարի վիթխարի չափերով ավելանում է գրականության հրատարակությունը ժամանակակից լեզուներով:*

*Հասարակական զարգացման ներկա վիճակն ու հեռանկարները առաջ են քաշում գիտության օժանդակ լեզվի, համընդհանուր, համաշխարհային լեզվի պրոբլեմները: Որոշ լեզվաբաններ առաջարկում են ամբողջ աշխարհում մտցնել մի միջազգային արհեստական լեզվի, օրինակ էսպերանտոյի ուսումնասիրություն, անհապաղ ընդունել այն որպես միջազգային կոնֆերանսների, համաժողովների լեզու: Բայց այդ առաջարկությունների մեջ երևան է գալիս լեզուների, մարդկային հասարակության զարգացման օրինաչափությունների ոչ ճիշտ ըմբռնումը:*

*Զարգացած ու լայնորեն տարածված ազգային լեզուները արհեստականորեն ստեղծված լեզուների համեմատությամբ շատ կողմերով խոշոր առավելություններ ունեն: Նախ՝ խոշոր ազգերի լեզուներին հարյուր միլիոնավոր մարդիկ տիրապետում են մանկուց: Երկրորդ՝ այդ լեզուներով գոյություն ունի դարերով ստեղծված գրականություն գիտության բոլոր բնագավառների գծով: Առօրյա հասարակական, մշակութային, գիտական կյանքում այդ լեզուներից օգտվում են դասատուների, գիտական աշխատողների բազմամիլիոն բանակներ: Գոյություն ունեն այդ լեզուները սովորելու և ավանդելու պատմականորեն ստեղծված տրադիցիաներ: Գոյություն ունեցող միջազգային լեզուների մասսայական սոցիալական բազա են ծառայում հարյուր միլիոնավոր մարդիկ, որոնք գործնականում դրանք օգտագործում են առօրյա կյանքում, իրենց գործունեության բոլոր ոլորտներում: Արհեստական լեզուներից ոչ մեկը այդպիսի մասսայական բազա չունի:*

*Առարկելով էսպերանտոյի քննադատության դեմ, որն ապացուցում է նրա պիտանի չլինելը որպես ապագա ընդհանուր լեզու, որոշ էսպերանտիստներ հայտարարում են, թե էսպերանտոն ոչ թե ապագա միասնական լեզու է, այլ «օժանդակ միջազգային լեզու»:*

*Հասկանալի է, որ ապագա միասնական համամարդկային լեզվի պրոբլեմը չի կարելի շփոթել միջազգային օժանդակ լեզու ստեղծելու հարցի հետ, թեպետև նրանց տնտեսական հիմունքների մշակման և այդ լեզուներին ներկայացվող որոշ գործնական պահանջների տեսակետից նրանց միջև որոշակի կապ գոյություն ունի: Առաջինը կոչված է փոխարինելու գոյություն ունեցող բոլոր լեզուներին, մինչդեռ երկրորդը, այսինքն՝ միջազգային օժանդակ լեզուն, գոյություն է ունենալու ազգային լեզուների և ազգամիջյան ու միջազգային հաղորդակցման լեզուների հետ միասին:*

*Բայց էսպերանտոն, որն ստեղծվել է դեռ անցյալ դարի 80-ական թվականներին, այնքան կատարյալ լեզու չէ, որպեսզի կարելի լինի աշխարհի բոլոր ժողովուրդներին այն հանձնարարել նույնիսկ որպես օժանդակ միջազգային*

---

գային անբավարար իմացությամբ: Ընկեր Ս. Եղիազարյանը ևս իր **առաջին** հոդվածի մի շարք հարցադրումներ պատճառաբանեց ոչ կոնկրետ դատողություններով: Իսկ նրան առարկող ընկ. ընկ. Հ. Աղաջանյանը, Ա. Ստեփանյանը, Հ. Ղազարյանն իրենց հոդվածներում դրսևորեցին քննարկվող հարցի լոկ գրքային, կենսամերժ ըմբռնում:

Այստեղից հետևում է մի բան, որ արծարծվող հարցը բավարար լուսաբանելու համար առավել անհրաժեշտ է լրջորեն ուսումնասիրել ՍՍՌՄ ազգերի զարգացման ու բարգավաճման բարդ պրոցեսը:

Այս դեպքում իրավացի է պրոֆ. Հ. Գաբրիելյանը, երբ ընդգծում է, որ ազգերը սոցիալիզմի ժամանակ չեն կորցնում իրենց հիմնական հատկանիշները և վաղաժամ է այդ մասին խոսելը: Սակայն ընկ. Գաբրիելյանի հոդվածից կարելի է հետևցնել, որ նա գերագնահատում է կապիտալիզմի արդի ստադիայում ազգերի ասիմիլյացիայի պրոցեսը, որի առթիվ նա չի մատնանշում որևէ լուրջ իրողություն: Այդ կապակցությամբ վկայակոչված «ընդհանուր շուկայի» փաստարկը համոզիչ չէ:

Կյանքը, պրակտիկան շատ ավելի բարդ են, հարուստ և հակասական. դրանք անընդհատ զարգանում են, դրսևորում իրենց այս կամ այն կողմը, ճշգրտում գոյություն ունեցող թեորիաները և նույնիսկ ամենահամապարփակ ու փայլուն ցիտատների շեղջով չի կարելի ընդգրկել պրակտիկայի ողջ հարստությունը: Իհարկե, հարցը բավական տխուր պատկեր է ընդունում, երբ ոմանք (Հ. Ղազարյան) փորձում են ազգերի գոյության կամ անհետացման հարցին մոտենալ բարոյախոսության տեսանկյունից, համարելով նրանց գոյությունը չարիք: Անտեսելով ազգերի ծագման ու զարգացման



պրոգրեսիվ դերը համաշխարհային պատմության մեջ, մարդիկ փաստորեն հեռանում են հարցի պատմական վերլուծությունից, աչք փակելով իրական կյանքի նկատմամբ:

Հասարակական կարևոր նշանակություն ունեցող հարցերը քննարկելիս ցիտատամարտը շատ բան է փչացնում: Մինչդեռ մտածողության և գործողության լենինյան մեթոդի բնորոշ կողմերից մեկն էլ այն է, որ ճշմարտությանը հասու է լինում նա, ով վերացական դրույթների թավուտները թողած, իր ունկնդիրներին և ընթերցողներին առաջնորդում է դեպի կոնկրետ, հաճախ շատ բարդ ու խճճված, հակասալի իրականությունը:

Սոցիալիստական ազգերի ու ազգությունների զարգացման ընթացքի արդյունավետ ուսումնասիրության համար այժմ պահանջվում է ոչ միայն ընդհանուր տեսական իմացություն, այլև իրողությունների **վիճակագրական, տնտեսագիտական, ազգագրական** և **սոցիոլոգիական** համակողմանի հետազոտություն: Բերվող փաստարկումներն ու ընդհանրացումները կօգնեն մեզ ավելի խոր ըմբռնելու որակական փոփոխությունները, եթե գիտության պրոպագանդողն իր տեսական ընդհանուր սկզբունքները բխեցնում է **նոր երևույթների** համակողմանի ուսումնասիրությունից:

Մեր պարտիայի ծրագրում պարզորեն ասված է, որ կոմունիստական ծավալուն շինարարությունը ՍՍՌՄ-ում ազգային հարաբերությունների զարգացման **նոր էտապ է նշանավորում,** որը բնութագրվում է **ազգերի հետագա մերձեցմամբ** և նրանց **լիակատար միասնության իրագործմամբ:** Առաջիկայում կոմունիստական տնտեսության զարգացմանը համընթաց, ՍՍՌՄ-ում ուժեղանալու է ազգերի **սոցիալական միասեռությունը** և նրանց **սերտ միավորումը,** որը նպաստելու է կուլտուրայի, բարոյականության ու կենցաղի կոմունիստական **ընդհանուր գծերի զարգացմանը:** Սակայն ազգային **տարբերությունների,** հատկապես **լեզվական տարբերությունների** ջնջվելը, կգալիս-

լեզու մի որոշ անցողիկ ժամանակաշրջանում։ Լեզուն մոդա չէ, նա մտնում է մարդկային գործունեության բոլոր «ծակոտիների» մեջ։ Միջազգային օժանդակ լեզու ստեղծելու պրոբլեմը պետք է լուծվի ելնելով մարդկային հասարակության, գիտության, տեխնիկայի ժամանակակից վիճակից և հետագա զարգացման հեռանկարներից։ Այս պրոբլեմի հաջող լուծումը լեզվաբանության կարևոր խնդիրներից մեկն է։

Հակառակ Կ. Կաուցկու տեսության, որն առաջ էր քաշում բոլոր ազգերը մի ազգի կողմից և բոլոր լեզուները՝ մի լեզվի կողմից ասիմիլյացվելու ենթադրությունը, Վ. Ի. Լենինը միշտ պաշտպանել է մարդկության բարձրագույն ինտերնացիոնալ միասնության մեջ ազգերի ապագա միաձուլման մարքսիստական գաղափարը։ Բայց նա առաջ չէր քաշում ազգային լեզուների միաձուլման պրոբլեմը։ Ազգերի ձևավորված գրական լեզուները մեկ լեզվի մեջ միաձուլվելու ոչ մի տենդենց չեն ցույց տալիս։ Ընդ որում, հասկանալի է, չի կարելի ժխտել այդպիսի լեզվի ստեղծման հնարավորությունը մարդկության լեզվական զարգացման բոլոր նվաճումների համադրման և ամենուրեք այդ լեզուն ուսումնասիրելու միջոցով։ Բայց դեռ ոչ ոք չի հիմնավորել այդ ուղու անհրաժեշտությունն ու առավելությունը համեմատած այն երևույթի հետ, որ գոյություն ունեցող ազգային լեզուներն իրականում առանձնանում են որպես միջազգային լեզուներ։ Բայց, ինչպես էլ ծագելու լինի ապագա համաշխարհային լեզուն, այն պետք է լինի հնչյունաբանության, բառապաշարի, ձևաբանության, շարահյուսության, արտասանության և ուղղագրության, ոճաբանության, երաժշտականության և այլ տեսակետներից առավելապես կատարելագործված լեզու։ Իսկ այս բանը կարելի է ապահովել բոլոր ժողովուրդների միասնական ստեղծագործական ջանքերով, նրանց գիտնականների, լեզվագետների, սոցիոլոգների, գրողների, խոսքի վարպետների և ամենից առաջ հենց մասսաների ջանքերով՝ նրանց միջազգային շփումների ընթացքում։

Լեզվաբանության հարցերը, մանավանդ նրա սոցիոլոգիական հարցերը մեր դարաշրջանում անհնարին է լուծել առանց հաշվի առնելու մարդկային հասարակության ներկա վիճակը և հեռանկարները։ Այդ հարցերը լուծել կարելի է միայն լեզուների զարգացման կարևորագույն օրինաչափությունների ուսումնասիրման և ՍՍՌՄ պատմական փորձի ու ամենից առաջ ամբողջ լեզվաշինարարության խոր վերլուծման հիման վրա։

---

րեն ավելի տևական պրոցես է, քան դասակարգային սահմանագծերի ջնջվելը։ Ելնելով ազգերի զարգացման այս իրական ընթացքից, «Պարտիան թույլ չի տալիս ազգային առանձնահատկությունների ո՛չ անտեսում, ո՛չ էլ ուռճացում»։

Մեր հրապարակած հոդվածները, ինչպես և «Կոմունիստ» ամսագրից արտատպածը, թելադրում են այդ հարցով զբաղվող ընկերներին ոչ թե հանդես գալ ընդհանուր և վերացական դատողություններով, այլ երկար ու համառ աշխատանքով ուսումնասիրել այնքան կարևոր պրոցեսներ, որոնք տեղի են ունենում ՍՍՌՄ ազգերի ու ազգությունների ներկա կյանքում։ Նրանց տնտեսական-քաղաքական և կուլտուրական բարգավաճումը պահանջում է խոր և կոնկրետ հետազոտություններ տվյալ հարցի շուրջ, որից հետո խիստ արգասաբեր կլինի գիտակ ընկերների մտքերի փոխանակությունը։ Մենք համոզված ենք, որ արծարծվող բանավեճը մի խթան կհանդիսանա այդ հարցի լուրջ ուսումնասիրության ճանապարհին։



# ԱԶԳԱՅԻՆ ԼԵԶՈՒՆԵՐԻ ԻՐԱՎԱՀԱՎԱՍԱՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱԶԱՏ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

ՍՍՌՄ-ում սոցիալիստական ազգերի պատմական առաջընթացի նոր փուլը բնորոշվում է նրանց հետագա մերձեցմամբ, փոխադարձ հարստացմամբ։ Դա ուղեկցվում է ազգային կապերի, ազգային ընդհանրության ընդլայնմամբ ու ամրապնդմամբ։ Սովետական հասարակական, տնտեսական ու քաղաքական կարգի, սովետական մշակույթի մեջ ներդաշնակորեն զուգորդվում է մարդկանց ինչպես ազգային, այնպես էլ ինտերնացիոնալ ընդհանրությունը։ Ընդ որում ինտերնացիոնալ ընդհանրությունն առաջատարն է և ՍՍՌՄ բոլոր ազգերին միավորողը։ Ազգայինի և ինտերնացիոնալի այս ներդաշնակ զուգորդումն իր արտացոլումն է գտնում և լեզվի մեջ։

Սովետական հասարակության մեջ լեզուների զարգացումն ու փոխադարձ հարստացումը տեղի է ունենում օրինաչափորեն և պայմանավորված է սոցիալիստական ազգերի, ազգությունների ու նրանց մշակույթների առաջընթացի, մերձեցման պրոցեսներով։ Լեզուների զարգացման ու փոխադարձ հարստացման կարևորագույն պայմանը ժողովուրդների բարեկամության ամրապնդումն է, նրանց մշակույթների փոխադարձ հարստացումը, եղբայրական համագործակցությունը հասարակական-քաղաքական, տնտեսական ու մշակութային կյանքում։ Ազգային մշակույթների փոխազդեցության ու փոխադարձ հարստացման պրոցեսները, գիտական, քաղաքական, տեխնիկական գիտելիքների լայն փոխանակումը արտացոլվում են լեզուների փոխազդեցության և փոխադարձ հարստացման պրոցեսներում։

ՍՍՌՄ-ում ազգային լեզուների իրավահավասարությունն ու ազատությունը մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների լիակատար ու փաստացի հավասարություն ստեղծելու ուղղությամբ կոմունիստական պարտիայի լենինյան քաղաքականության արտահայտությունն են։ ՍՄԿՊ Ծրագիրը, որ ընդունվել է պարտիայի XXII համագումարում, պահանջում է «...հետագայում ևս ապահովել ՍՍՌՄ ժողովուրդների լեզուների ազատ զարգացումը, ՍՍՌՄ ամեն մի քաղաքացու համար լիակատար ազատություն՝ խոսել, իր երեխաներին դաստիարակել և ուսուցանել ցանկացած լեզվով, չթույլատրելով որևէ արտոնություն, սահմանափակում կամ հարկադրանք այս կամ այն լեզուն գործածելու հարցում։ Ժողովուրդների եղբայրական բարեկամության և փոխադարձ վստահության պայմաններում ազգային լեզուները զարգանում են իրավահավասարության և փոխադարձ հարստացման հիման վրա»։

Ցարիզմի ճնշողական քաղաքականությունը արտահայտվել է նաև մեր երկրի ժողովուրդների լեզվական կյանքի բնագավառում։ Հասկանալի է, որ ցարիզմն այս տեսակետից բացառություն չէր։ Բոլոր իմպերիալիստական երկրները խոչընդոտել ու խոչընդոտում են ճնշված ժողովուրդների մշակույթների ու լեզուների զարգացման նույնիսկ ամենահամեստ միջոցառումները (մանավանդ Ասիայի, Աֆրիկայի գաղութներում ու կախյալ երկրներում), վարել ու վարում են բռնի ասիմիլյացիայի, ռասայական քաղաքականություն, ժողովուրդների միջև տարածել ու տարածում են ցեղային պառակտում ու թշնամանք։

Ցարիզմի գաղութարարական քաղաքականությունը արգելակում էր ազգային լեզուների զարգացումը։ Նախահեղափոխական Ռուսաստանի նույնիսկ այն-

պիսի խոշոր ազգեր, ինչպիսիք են ուկրաինական, բելոռուսական, ուզբեկական և այլ ազգերը, զրկված էին մայրենի լեզվով մշակույթ, գիտություն զարգացնելու, գրագրությունն ու գործառնություններն իրենց լեզվով կատարելու իրավունքից։ Ցարական սատրապները հետապնդում էին ազգային մշակույթը զարգացնելու, ճնշված ժողովուրդների մայրենի լեզվով գիր ստեղծելու, մայրենի լեզվով դասավանդելու փորձերը։ Ռուսական կայսրության ազգային ծայրամասերի մեծ մասում տիրում էր համատարած անգրագիտությունը, աղքատությունը, անկուլտուրականությունն ու հետամնացությունը։

Այդ շրջաններում լեզվական կյանքը բնորոշ էր նրանով, որ ժողովուրդների մեծ մասի մոտ բացակայում էր համաժողովրդական գիրը։ Այնտեղ նկատվում էր ժողովրդական խոսակցական լեզուների ուժեղ դիֆերենցիացիա, տրոհում տերիտորիալ բարբառների ու խոսվածքների, որ պայմանավորված էր գլխավորապես տնտեսական, քաղաքական ու մշակութային ինտենսիվ կապերի բացակայությամբ, փոքր ժողովուրդների մոտ գրական լեզուների բացակայությամբ։ Նշենք նաև, որ որոշ հնագիր լեզուներ էլ հենվում էին միջնադարյան բարբառային հիմքերի վրա, որոնք հեռու էին ժողովրդական կենդանի խոսակցական լեզվից, սակավ հասկանալի և նույնիսկ խորթ էին ժողովրդական լայն զանգվածներին։ Շարունակում էին ազդել այնպիսի գործոններ, որոնք պայմանավորում էին ոչ թե բարբառների համահարթումը, ոչ թե նրանց «լուծումը» մի ընդհանուր ազգային գրական լեզվի մեջ, այլ բարբառների ու խոսվածքների միջև եղած տարբերությունների հետագա ուժեղացումը։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, որ հռչակեց ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների ազատություն ու հավասարություն, ճանապարհ բացեց նրանց լեզուների ազատ զարգացման և փոխադարձ հարստացման համար։ Անհրաժեշտ էր երկրի բոլոր ժողովուրդներին, առանձնապես անցյալում հետամնաց, ճնշված ժողովուրդներին օգնել իրենց մոտ ստեղծելու և ամրացնելու մայրենի լեզվով գործող իշխանության օրգաններ, դատարան, վարչական մարմիններ, տնտեսության կառավարում, ստեղծել դպրոցներ, մամուլ, թատրոններ, գրադարաններ, ակումբներ և մայրենի լեզվով գործող մշակութային-լուսավորական այլ հիմնարկություններ։

Այս միջոցառումների իրականացումը հենց սկզբից հանդիպեց այնպիսի վիթխարի դժվարությունների, ինչպիսին է մայրենի լեզվով դասավանդող կադրերի բացակայությունը առաջներում ճնշված ու իրենց զարգացմամբ հետ մնացած ազգությունների և ազգերի մեջ։ Իսկ շատ ազգություններ նույնիսկ իրենց գիրն ու գրականությունը չունեին։ ՍՄԿՊ ղեկավարությամբ սկսվեց մեր երկրի ժողովուրդների հիանալի եղբայրական համագործակցությունը նրանց մշակույթների ու լեզուների զարգացման և փոխադարձ հարստացման գործում։ Առաջներում գիր չունեցող մոտ 50 ազգային լեզուներ առաջին անգամ սովետական ժամանակաշրջանում ձևավորվեցին որպես գրավոր լեզուներ։

Այբուբեններ, ուղղագրություններ, տերմինաբանություն ստեղծելը, սոցիալական, մշակութային ու գիտական վիթխարի նշանակություն ունեցող այս բոլոր միջոցառումները, որ նպատակ ունեին զարգացնել, հարստացնել ու կատարելագործել գրական լեզուները, մեր երկրում հաջողությամբ իրականացվեցին, թեպետև միաժամանակ թույլ տրվեցին սխալներ, որոնք արտահայտվեցին, օրինակ, նրանում, որ որոշ գիտնականներ և ազգային շրջանների գործիչներ տարվեցին գիր ստեղծելով շատ փոքրաթիվ ժողովուրդների համար (հա-



կառակ վերջիններիս ցանկության)։ Ժամանակակից գիտության պահանջներին համապատասխանող ուղղագրությունների մշակումը, այբուբենների ստեղծման հետ միասին, նշանակալից ներդրում է գրավոր լեզուների ձևավորման գործում։ Տերմինաբանության ուղղությամբ պետական մասշտաբներով կատարած ու ներկայումս կատարվող աշխատանքը նպաստում է ո՛չ միայն յուրաքանչյուր լեզվի բառապաշարի հարստացմանը, այլև գրական լեզվի տարբեր (գիտական, գործառական, հրապարակախոսական և այլն) ոճերի ձևավորմանը։ Բարդ ու դժվարին գործ էր ազգային գրական լեզուների հասարակական ֆունկցիաների զարգացումը, նրանց կիրառումը ժողովրդական կրթության մեջ, հասարակական-քաղաքական ու տնտեսական կյանքում, մշակութային-լուսավորական աշխատանքում, մայրենի լեզուներով ուսումնական ձեռնարկների ստեղծումը։

Ազգային լեզուներով գիր ստեղծելուց հետո ստեղծվեց և մամուլ, որը վիթխարի դեր կատարեց նոր գիրը տարածելու, ազգային դպրոց կազմակերպելու գործում։ Ազգային թերթերում մայրենի լեզվով լուսաբանվում է ժողովրդի բազմակողմանի կյանքը, տպագրվում են պաշտոնական նյութեր, ռուսերենից և ուրիշ լեզուներից կատարված թարգմանություններ, ազգային գրողների ու բանաստեղծների ստեղծագործությունները։ Ազգային պարբերական մամուլի էջերում բանավեճեր են տեղի ունենում այբուբենի կատարելագործման, ուղղագրության բարելավման, տերմինաբանության մշակման և այլ հարցերի շուրջ։

Նորագիր լեզուների հասարակական ֆունկցիաների ընդարձակումը տեղի է ունեցել պլանաչափ կերպով. սկզբում այդ լեզուներն օգտագործվել են անգրագիտությունն արագորեն վերացնելու համար, հետո ազգային կադրեր պատրաստելուն զուգընթաց ծավալվեց մայրենի լեզվով դասավանդումը տարրական դպրոցում, մայրենի լեզվով սկսեցին աշխատել ազգային թատրոնները, ռադիոն։ Գրական լեզուների հասարակական ֆունկցիաները առանձնապես արագ զարգացան միութենական ռեսպուբլիկաներում։

Այսպիսով, սովետական դարաշրջանում ՍՍՌՄ ժողովուրդների լեզուների ֆունկցիոնալ ու ներկառուցվածքային զարգացումն ապահովող գլխավոր գործոն հանդիսացավ հաջողությամբ իրականացված լենինյան ազգային քաղաքականությունը։

Բայց կոնկրետ ինչո՞վ արտահայտվեց սովետական ժողովուրդների լեզուների ֆունկցիոնալ ու ներկառուցվածքային զարգացումը։

ՍՍՌՄ ժողովուրդների լեզուների **հասարակական ֆունկցիաների** զարգացումը մեր դարաշրջանում արտահայտվել է առաջներում անգիր լեզուների համար գիր ստեղծելու մեջ, միջնակարգ դպրոցներում ու բուհերում մայրենի լեզվով դասավանդում կազմակերպելու մեջ, ազգային լեզուներով հասարակական-քաղաքական, գեղարվեստական, գիտական գրականության ու պարբերական մամուլի հրապարակման մեջ, իշխանության մարմինների աշխատանքը մայրենի լեզուներով կազմակերպելու մեջ և այլն։

Սովետական ժողովուրդների գրական լեզուների **կառուցվածքների** զարգացումն արտահայտվել է ամեն մի գրական լեզվի սոցիալական անհրաժեշտ պոտենցիալ հնարավորությունների առավելագույն օգտագործման մեջ, բառապաշարի ընդարձակման ու հարստացման մեջ, գրական լեզուների, հատկապես նորագիր լեզուների, միասնական ընդհանուր ազգային նորմաների մշակման հիման վրա, նրանց ձևաբանական ու հնչյունաբանական համակարգերի կատարելագործման մեջ, դարձվածքների բառակապակցության նոր տիպերի ա-

ռաջացման մեջ, ժամանակակից հասարակական-քաղաքական, գիտական-տեխնիկական և գեղարվեստական գրականության պահանջներին համապատասխանող շարահյուսական կառուցվածքների զարգացման մեջ, նոր ֆունկցիոնալ ոճերի ձևավորման մեջ և այլն։

Այս ամենը ցույց է տալիս, թե Սովետական Միությունում որքան բարձր են գնահատում մայրենի լեզվի դերը յուրաքանչյուր ժողովրդի կյանքում, նրա պետականության, տնտեսության ու մշակույթի զարգացման գործում, թե որքան մեծ է հասարակության գիտակցական ներգործության դերը լեզուների զարգացման գործում։ Մայրենի լեզուն անցյալում հետամնաց ժողովուրդներին ժամանակակից մշակույթի, գիտության ու տեխնիկայի, արվեստի ու գրականության նվաճումներին հաղորդակից դարձնելու կարևոր միջոց է։ Լեզվաշինարարությունը հսկայական դեր է խաղացել բոլոր ազգային ռեսպուբլիկաների, մարզերի և շրջանների քաղաքական, տնտեսական ու կուլտուրական արագընթաց առաջադիմության գործում։

Ներկայումս բոլոր միութենական ռեսպուբլիկաներում կան գիտությունների ակադեմիաներ։ Նրանց աշխատությունները լույս են ընծայվում և՛ ազգային լեզուներով, և՛ ռուսերեն։ Լուսավորության, միջնակարգ ու բարձրագույն կրթության զարգացման, մշակույթի, գիտության բնագավառում ազգային լեզուների վիթխարի դերի մասին է վկայում ազգային լեզուներով գրքերի, ամսագրերի, թերթերի հրատարակման չտեսնված աճը։

1913 թվականին Տաջիկստանում բնակչության մայրենի լեզվով չի տպագրվել ոչ մի գիրք, լույս չի տեսել ոչ մի թերթ։ Իսկ 1964 թվականին այստեղ տաջիկական լեզվով տպագրվել է 3 միլիոն 649 հազար օրինակ գիրք, լույս է տեսել 24 լրագիր՝ տարեկան 65 միլիոն օրինակ ընդհանուր տպաքանակով։ Հեղափոխությունից առաջ Տաջիկստանում չկար ոչ մի գրադարան, 1964 թվականին կար 909 մասսայական գրադարան՝ 5 միլիոն 762 հազար օրինակ գրքի ֆոնդով։ 1914 թվականին Տաջիկստանի տերիտորիայում բոլոր տեսակի հանրակրթական դպրոցներում սովորում էին մոտ 400 մարդ, իսկ 1964/65 ուս. տարում՝ ավելի քան 500 հազար մարդ, համապատասխանաբար՝ բարձրագույն ուսումնական հաստատություններում ռևոլյուցիայից առաջ ոչ մի մարդ չէր սովորում, իսկ 1964/65 ուս. տարում սովորում էին 26,9 հազար մարդ։ Տաջիկստանում գիտությունների ակադեմիա կա, աշխատում են տաջիկական պետական համալսարանը և բարձրագույն ուսումնական այլ հաստատություններ, որոնք այնտեղ հեղափոխությունից առաջ ամենևին չկային։

Շատ բնորոշ են կիրգիզ ժողովրդի զարգացման մասին եղած տվյալները։ Կիրգիզական լեզվով առաջին գիրքը լույս է տեսել միայն 1924 թվականին։ Սովետական իշխանության գոյության 20—25 տարիների ընթացքում Կիրգիզական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը առաջադիմության այնպիսի մակարդակի է հասել, որ կարողանում է դասավանդումը մայրենի լեզվով կատարել ոչ միայն տարրական ու միջնակարգ դպրոցում, այլև գիտության մի շարք բնագավառներում, նաև բարձրագույն դպրոցում։ Ծաղկել են կիրգիզական ազգային մշակույթը, գրականությունը, արվեստը, որոնք հիմնված են կիրգիզական գրական լեզվի վրա։ Ստեղծվել է գիտությունների կիրգիզական ակադեմիա, որի գիտական հրատարակությունները լույս են տեսնում նաև կիրգիզերեն։ Կիրգիզական լեզվով է աշխատում օպերայի և բալետի պետական թատրոնը։ Կիրգիզ ժողովրդի մեջ երևան են եկել իր գրողները, գիտ-



նականները, դերասանները, ինժեներները, բժիշկները, ուսուցիչները։ 1914/15 ուս. տարում Կիրգիզստանում չեն եղել ոչ բարձրագույն, ոչ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններ։ 1964/65 ուս. տարում ռեսպուբլիկայի միջնակարգ մասնագիտական հաստատություններում սովորում էին 27,1 հազար մարդ, իսկ բուհերում՝ 29 հազար։ Բոլոր տեսակի հանրակրթական դպրոցներում 1914/15 ուս. տարում սովորում էին ընդամենը 7 հազար երեխա, իսկ 1964/65 ուս. տարում՝ մոտ 600 հազար։

Շատ ցուցանշական են նաև ՍՍՌՄ հնագիր ժողովուրդների զարգացման փաստերը։ Այսպես, հայերն ու վրացիները, որոնք իրենց գիրն ստեղծել են ավելի քան տասնհինգ դար առաջ, մինչև ռևոլյուցիան չունեին ո՛չ մի բարձրագույն ուսումնական հաստատություն, մայրենի լեզվով աշխատող ո՛չ մի գիտահետազոտական հիմնարկություն։ Այժմ Հայաստանում և Վրաստանում կան բազմաթիվ բուհեր, գիտահետազոտական ինստիտուտներ, գիտությունների ազգային ակադեմիաներ։

Լեզվաշինարարության, ինչպես և մյուս բնագավառներում լենինյան ազգային քաղաքականության իրականացմանը շատ մեծ օգնություն է ցույց տվել ռուս ժողովուրդը, որը անցյալում հետամնաց ժողովուրդներին եղբայրական օգնություն ցույց տալու գործում ոչ ուժեր է խնայում, ոչ միջոցներ։

ՍՍՌՄ-ում ազգային լեզուների զարգացումն իրականացվում է ժողովուրդների լիակատար իրավահավասարության և եղբայրական համագործակցության հիման վրա։ Իրավահավասարության հիմքի վրա կատարվող փոխազդեցությունը նպաստում է ազգային գրական լեզուների հարստացմանը, օժանդակում է հաջողությամբ լուծելու կյանքի առաջ քաշած սոցիալական կարևորագույն պրոբլեմներից մեկը՝ մայրենի լեզվի հետ միասին ազգամիջյան հաղորդակցման լեզվին տիրապետելու պրոբլեմը, ապահովում է սովետական ժողովուրդների լեզուների ընդհանուր բառապաշարի ստեղծումը, խթանում է բազմազգ Սովետական Միության պայմաններում լեզվային ինտերնացիոնալացման տենդենցին։

ՍՍՌՄ ժողովուրդների լեզուների փոխադարձ հարստացման պրոցեսները ամենից ավելի վառ արտահայտվում են նրանց բառապաշարի զարգացման մեջ, ի հաշիվ այն ընդհանուր բառերի, որոնք առաջանում են գլխավորապես ինտերնացիոնալ բառապաշարի և ռուսաց լեզվի բառապաշարի հիման վրա. սովետական ժամանակաշրջանի նորաբանությունները (սովետ, կոլխոզ, սովխոզ, սպուտնիկ, բրիգադիր և այլն), փիլիսոփայական, հասարակական-քաղաքական տերմինները (սոցիալիզմ, կոմունիզմ, պարտիա, մարքսիզմ, լենինիզմ, մատերիալիզմ, դիալեկտիկա և այլն), գիտա-տեխնիկական բառերը (ատոմ, ավտոմատիկա, էլեկտրոնիկա, հրթիռ, կոսմոս և այլն) այն տերմիններն են, որոնցով հարստացել է մեր երկրի լեզուների ճնշող մեծամասնությունը։ Հաշվումները ցույց են տալիս, որ նորագիր լեզուներում նոր հասարակական-քաղաքական և գիտա-տեխնիկական տերմինների մոտ 70—80 տոկոսը վերաբերում են ՍՍՌՄ լեզուների ընդհանուր բառային ֆոնդին։

Լեզուների փոխազդեցության ու փոխադարձ հարստացման բազմաթիվ փաստեր են նկատվում նաև շարահյուսական ու ոճական համակարգերի բնագավառներում։ Լեզուների զարգացման ու փոխադարձ հարստացման ընդհանուր տենդենցներն ու օրինաչափությունները վառ կերպով արտահայտվում են սովետական ժամանակաշրջանի հասարակական-քաղաքական, հրապարակա-

խոսական գրականության առանձնահատուկ ոճի ձևավորման մեջ, որ կազմվել է ռուսաց լեզվի ազդեցությամբ։ Իր հերթին ՍՍՌՄ ժողովուրդների ականավոր գրողների, բանաստեղծների ստեղծագործություններից կատարված թարգմանություններով ռուսաց լեզվի մեջ են թափանցել և շարունակում են թափանցել բառեր, տերմիններ և դարձվածաբանական տիպեր, գեղարվեստական պատկերավոր մտածողության շարահյուսական կառուցվածքներ, նպաստելով նրա հարստացմանը և արտահայտչական միջոցների ընդարձակմանը։

Միևնույն երկրում, կոմունիզմի կառուցման միևնույն հասարակական-քաղաքական ու սոցիալ-տնտեսական պայմաններում ապրող ժողովուրդների համար գիտական, գեղարվեստական մտածողության, հասարակական գիտակցության զարգացման ընդհանուր պրոցեսներն արտացոլող ընդհանուր հասկացությունների, տերմինների, պատկերավոր արտահայտությունների առաջացումն էական երևույթ է։ Լեզուների փոխադարձ հարստացման պրոցեսների անտեսումը հող է ստեղծում «ազգային առանձնահատկության» չափազանցման և հասարակական-քաղաքական, գիտական ու մշակութային կյանքի մեջ լեզուների փոխադարձ մեկուսացման համար։ Ահա թե ինչու լեզուների փոխադարձ հարստացման պրոցեսները, որոնք նպաստում են ազգերի և ազգային մշակույթների փոխադարձ հարստացմանն ու մերձեցմանը, արժանի են ամենայն աջակցության։

## ԱԶԳԱՄԻՋՅԱՆ ՀԱՂՈՐԴԱԿՑՄԱՆ ԼԵԶՈՒՆ

Սովետական բազմազգ պետությունը, կենսագործելով ժողովուրդների իրավահավասարության, նրանց լեզվի ու կուլտուրայի ըստ ամենայնի զարգացման լենինյան քաղաքականությունը, ազգամիջյան հաղորդակցման լեզվի կարիք է զգում։ Ազգամիջյան հաղորդակցման ընդհանուր լեզվի բացակայությունը լուրջ դժվարություններ կառաջացներ տարբեր ազգությունների ներկայացուցիչների ամենօրյա հաղորդակցման, կյանքի այլևայլ բնագավառներում նրանց հաղորդակցության գործում։

Սովետական իրականության պայմաններում ազգամիջյան հաղորդակցման լեզվի ֆունկցիաները ոչ մի լեզու նույնքան հաջողությամբ կատարել չէր կարող, որքան ռուսաց լեզուն։ Նրա այդ դերը պայմանավորված է բազմաթիվ սոցիալ-պատմական գործոններով, որոնցից նշենք գեթ հետևյալները. ռուսաց լեզուն մայրենի լեզու է ՍՍՌՄ բնակչության ավելի քան կեսի համար.

ուկրաինացիներն ու բելոռուսները, որոնք կազմում են ՍՍՌՄ բնակչության համարյա մեկ քառորդ մասը, սովորաբար գիտեն ռուսաց լեզուն, որը մոտիկ ազգակից է ուկրաիներենին ու բելոռուսերենին.

մեր երկրի ոչ ռուս բնակչության մի զգալի մասը ռուսաց լեզվին տիրապետում էր դեռ Հոկտեմբերյան հեղափոխությունից էլ առաջ։ Ներկայումս սովետական բոլոր ժողովուրդների մտավորականության համար այն դարձել է երկրորդ մայրենի լեզու։ Դեռ ավելին, 1959 թ. մարդահամարի ժամանակ ոչ ռուս ազգությանը պատկանող 10,2 միլիոն մարդ նշել են, որ ռուսաց լեզուն համարում են իրենց մայրենի լեզուն։ Այսպիսով, ՍՍՌՄ բնակչության $^3/_4$-ից ավելին այս կամ այն չափով գործնականորեն գիտե ռուսերեն.

ռուս ժողովրդի կարկառուն, ավանգարդային դերը ցարիզմի տապալման և ցարական ու տեղական, «յուրային» ճնշողների լուծը վերացնելու գործում,



ռուս ժողովրդի եղբայրական օգնությունը ազգային ռեսպուբլիկաների քաղաքական, տնտեսական ու մշակութային զարգացման գործում նույնպես զգալի չափով նպաստել է նրան, որ ռուսաց լեզուն սկսել է ՍՍՌՄ ժողովուրդների ազգամիջյան հաղորդակցման լեզվի ֆունկցիաներ կատարել.

վերջապես ռուսաց լեզուն ազգամիջյան հաղորդակցման լեզվի վերածվելու գործում խոշոր նշանակություն են ունեցել պատմականորեն ստեղծված ավանդույթները, այն դերը, որ ռուսական մշակույթը, գիտությունը պատմականորեն խաղացել են ՍՍՌՄ ժողովուրդների մշակույթների զարգացման գործում։

Սովետական Միության բոլոր ժողովուրդների ներկայացուցիչների կողմից ռուսաց լեզուն կամավոր սովորելը ժողովուրդների բարեկամության հաղթանակի վառ արտահայտություն է, ամրապնդում է այդ բարեկամությունը, նպաստում է փորձի փոխանակմանը և ամեն մի ազգի հաղորդակցմանը մյուս բոլոր ժողովուրդների մշակութային նվաճումներին և համաշխարհային մշակույթին։ Ռուսաց լեզուն կարևորագույն դեր է խաղում ՍՍՌՄ ժողովուրդների լեզուների փոխադարձ հարստացման պրոցեսում և որպես սովետական ժողովուրդների եղբայրական համագործակցության լեզու նպաստում է ՍՍՌՄ զարգացմանը որպես մի միասնական միութենական պետություն, որը զոդված է մեր երկրի բոլոր ժողովուրդների շահերի ու նպատակների ընդհանրությամբ, մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի միասնական գաղափարախոսությամբ։

Ռուսաց լեզուն թեպետև ժողովուրդների ազգամիջյան հաղորդակցման ընդհանուր լեզու է, բայց քաղաքական ու իրավական տեսակետից մեր երկրի լեզուների մեջ գրավում է իրավահավասար և ոչ ամենևին արտոնյալ դիրք։ Յուրաքանչյուր սովետական մարդ ամեն մի հասարակական վայրում, սկսած գյուղսովետից, ժողովրդական դատարանից և վերջացրած ՍՍՌՄ Գերագույն Սովետի նիստով, իրավունք ունի ելույթ ունենալու իր մայրենի լեզվով։ Սովետական մարդիկ կարող են պետական ամեն մի օրգանի գրավոր կամ բանավոր դիմել իրենց մայրենի լեզվով։ Սովետական պետության լեզվական կյանքի այս առանձնահատկությունը, որի մեջ արտահայտվում է ժողովուրդների բարեկամության լենինյան քաղաքականությունը, բուրժուական երկրների շատ ներկայացուցիչներ հասկանալ չեն կարող։ Նրանք հարցնում են. ՍՍՌՄ այդպիսի լեզվական քաղաքականությունը արդյոք «մրցակցություն» չի՞ ծնում ռուսաց լեզվի և ազգային լեզուների միջև։

Հասկանալի է, որ լեզուներն իրենք չեն կարող իրար դեմ մրցակցել, եթե դրա համար համապատասխան քաղաքական պայմաններ չկան։ Սովետական Միությունում, որտեղ ժողովուրդների քաղաքական ու իրավական հավասարությունը հաստատվել է Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունից անմիջապես հետո, լեզուների մրցակցության համար քաղաքական պայմաններ չեն եղել և չկան։

Ինչպես նշվեց, ռուսաց լեզուն սկսել է ազգամիջյան հաղորդակցման լեզվի ֆունկցիա կատարել օբյեկտիվ պատմական պատճառների շնորհիվ։ Հայտնի է, որ Վ. Ի. Լենինը վճռականորեն առարկում էր այն բանի դեմ, որ ռուսաց լեզուն բռնությամբ ժողովուրդների վզին փաթաթած, պարտադիր «պետական լեզու» դառնա։ ՍՍՌՄ-ում չկա բոլոր ժողովուրդների համար պարտադիր միասնական պետական լեզու. յուրաքանչյուր ժողովուրդ օգտվում է և՛ իր մայրենի լեզվից, և՛ արդեն պատմականորեն առանձնացած ազգամիջյան հաղորդակց-

ման լեզվից։ Եվ, որ առանձնապես կարևոր է, դրա հետ միասին ոչ միայն չեն խախտվում մյուս բոլոր լեզուների իրավահավասարության և ազատ զարգացման սկզբունքները, այլև, ընդհակառակը, այդ սկզբունքներն առավել լրիվ կիրառվելով տանում են դեպի ազգերի մերձեցում, դեպի նրանց ավելի սերտ բարեկամական համագործակցություն կյանքի բոլոր ոլորտներում, այդ թվում նաև լեզվական-մշակութային բնագավառում։ Ռուսաց լեզվի առանձնացումը որպես ազգամիջյան հաղորդակցման լեզու, նրա հասարակական ֆունկցիաների ընդարձակումը նրան ոչ մի արտոնություն չեն տալիս, բայց անտարակույս, նրա վրա դնում են լրացուցիչ պարտականություններ, որոնք բխում են նրա նոր ֆունկցիաներից, այն է՝ այդ լեզվի, նրա դասավանդման կատարելագործումը, ուրիշ լեզուներից գրականության թարգմանությունների կազմակերպումը և այլն։ Այսպիսով, չի կարելի լեզվի սոցիալական ֆունկցիաների հարցը շփոթել զանազան լեզուների իրավահավասարության ու ազատ զարգացման, կամավոր կերպով գործածելու և սովորելու հարցի հետ։

Ազգային լեզուները միջազգային լեզուների կողքին գոյություն են ունենալու նաև համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի հաղթանակից հետո։

Դրա համար էլ սովետական բազմազգ պետության լեզվական կյանքում ճիշտ գիծն այն է, որ, նախ՝ պետք է նպաստել ազգային գրական լեզուների հետագա զարգացմանը յուրաքանչյուր ժողովրդի կենսական պահանջմունքների սահմաններում և, երկրորդ՝ կատարելագործել և ընդլայնել ռուսաց լեզուն՝ որպես ազգամիջյան հաղորդակցման լեզու սովորելու գործը։

Լենինյան տեսությունը, որ հենվում է մարդկային հասարակության կյանքի օբյեկտիվ օրինաչափությունների վրա, ազգային հարաբերությունների զարգացման պրակտիկան ցույց են տալիս, որ մարդկության արդի լեզվական մասնատվածությունից դեպի լեզվային միասնությունն ընկած ուղին անցնում է սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում, ազգային մշակույթների ու լեզուների զարգացման ու ծաղկման շրջանում։

Ինչպես միջազգային համագործակցության պրակտիկան ցույց է տալիս, որ անհրաժեշտ է ներկա դարաշրջանում մի քանի առավել զարգացած ու տարածված կենդանի լեզուներն օգտագործել որպես միջազգային հաղորդակցման միջոցներ, այնպես էլ յուրաքանչյուր բազմազգ պետության կյանքը օրինաչափորեն տանում է դեպի այդ պետության մեջ օգտագործվող լեզուներից մեկ (առավել զարգացած ու տարածված) լեզվի առանձնացում՝ ազգամիջյան հաղորդակցման ու համագործակցության համար։ Առանց այդպիսի լեզվի չի կարող պետք եղած ձևով կազմակերպվել բազմազգ պետության ժողովուրդների հասարակական, տնտեսական ու մշակութային կյանքը։ Իհարկե, անհրաժեշտ է, որ դրա հետ միասին այս կամ այն լեզուն ամենափոքր չափով անգամ հարկադրաբար ուրիշների վզին փաթաթելու երևույթ չլինի։

Ներկայումս կարելի է գիտականորեն հաստատված համարել, որ մարդկային հասարակության զարգացումը ցեղերի ու ազգությունների բազմաթիվ լեզուներից և բարբառներից աստիճանաբար գնում է դեպի ազգերի բազմակողմանիորեն զարգացած գրական լեզուները և դեպի այդ լեզուներից մի քանիսի ազգամիջյան ու միջազգային հաղորդակցման ֆունկցիաների զարգացումը։ Բայց այս առաջադիմական պրոցեսը տեղի է ունենում խիստ հակասականորեն ու դանդաղ։ Համընդհանուր գրագիտության պայմաններում, մանավանդ սոցիալիստական երկրներում, գրական լեզուների կանոնների տարածումը տա-



նում է դեպի տերիտորիալ բարբառների ու խոսվածքների աստիճանական մահացում, դադարում են նոր բարբառներ ու խոսվածքներ առաջանալու պրոցեսները (մանավանդ արդյունաբերապես զարգացած երկրներում)։ Բայց ուրիշ պատմական գործոններ հակազդում են այդ պրոցեսներին, ցեղային բարբառների ու խոսվածքների միաձուլմանը մի միասնական ազգային լեզվի մեջ՝ նաև ազգերի կազմավորումից ու համախմբումից հետո։

Ազգային գրական լեզուների սոցիալական ֆունկցիաների ընդարձակումը ազդեցություն է գործում նաև այդ լեզուների ներկառուցվածքային զարգացման վրա։

## ԱԶԳԱՅԻՆ ԼԵԶՈՒՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՓՈՐՁԻ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Մեր երկիրը մեծ ու փոքր ազգերի և ազգությունների լեզուների զարգացման հարուստ փորձ ունի։ Նրանց համախմբումը, փոխազդեցությունն ու փոխադարձ հարստացումը ազգային-ազատագրական շարժման հաջողությունների կապակցությամբ ավելի ու ավելի մեծ միջազգային նշանակություն են ստանում։

Ասիայի ու Աֆրիկայի գաղութային լծից ազատագրված շատ երկրներ լայնորեն օգտագործում են լեզվաշինարարության սովետական փորձը։ Այնտեղ հրատարակվել են գրքեր ու հոդվածներ, որոնք լուսաբանում են լեզվաշինարարության փորձը ՍՍՌՄ-ում։ Մեր երկիրն այցելել են, օրինակ, Հնդկաստանի գիտնականների հատուկ պատվիրակություններ ու կառավարության ներկայացուցիչներ, լեզվի պրոբլեմի լուծման մեր փորձին ծանոթանալու համար։

Ասիայի և Աֆրիկայի գաղութային կախումից ազատագրված երիտասարդ պետություններում կարող են ստեղծագործաբար կիրառվել ազգերի ու ազգային լեզուների համախմբման, գիր չունեցող ժողովուրդների համար գիր ստեղծելու սովետական փորձի շատ կողմեր. այնտեղ կիրառում կգտնեն Սովետական Միությունում մշակված հատուկ մեթոդները այն լեզուների հետազոտման գործում, որոնց համար գիր պիտի ստեղծվի, գիր ստեղծելու համար բարբառային բազան ընտրելու գործում, միևնույն լեզվի և ազգակից լեզուների բարբառները որոշելու և նրանց սահմանազատելու գործում, այբուբեններ, ուղղագրություններ և տերմինաբանություն մշակելու գործում, առաջներում գիր չունեցող լեզուների համար ուսումնական ձեռնարկներ ստեղծելու, ուսուցումը մայրենի լեզվով կազմակերպելու գործում, ինչպես և շատ բան մայրենի լեզվով դպրոցի, մամուլի, արվեստի ու գրականության զարգացման փորձից։ Գաղութային տիրապետությունից ազատված ու ազատվող ժողովուրդների առջև այս բոլոր բնագավառներում շատ բարդ ու դժվարին խնդիրներ են կանգնած։ Այսպես, օրինակ, մամուլում հրապարակված տվյալների համաձայն մինչև վերջին ժամանակներս գրականություն չի եղել աֆրիկական այնպիսի լեզուներով, ինչպիսիք են՝ մանդինգոն, որով 3-ից մինչև 5 միլիոն մարդ է խոսում, մորեն, որը երկու միլիոնանոց բնակչության լեզուն է, ֆուլբեն, որով մոտ 5 միլիոն մարդ է խոսում և շատ այլ լեզուներ։

Սովետական Միությունն առաջին երկիրն է, որտեղ ժողովուրդների բարեկամության ու եղբայրության ոգով արդարացի լուծված են ազգային լեզուների և ազգամիջյան հաղորդակցման լեզվի զարգացման չափազանց բարդ հարցերը։

ՍՍՌՄ փոքր միջազգային վիճակի նշանակություն ունենալու փաստը սովետական սոցիոլոգների ու լեզվաբանների վրա հատուկ պատասխանատվություն է դնում ինչպես մեր երկրի ժողովուրդների լեզվական անցյալի, այնպես էլ սովետական ժողովուրդների լեզուների ներկայիս վիճակի հետազոտման գործում, լեզուների զարգացման հետագա հեռանկարը որոշելու գործում։

Ինչպես հայտնի է, ամբողջ աշխարհում աճում է հետաքրքրությունը ռուսաց լեզվի նկատմամբ։ Ձգտելով թուլացնել այդ հետաքրքրությունը՝ մեր թշնամիները ճգնում են տարածել միտումնավոր և գիտականորեն սնանկ կարծիք (մանավանդ ռուսերենի ուղղագրությունը կատարելագործելու ուղղությամբ կատարվող աշխատանքի կապակցությամբ), թե իբր ռուսաց լեզուն համարյա ամենաբարդն ու անկատարն է միջազգային լեզուների մեջ։ Իրականում ռուսաց լեզվի կառուցվածքը, այբուբենը և ուղղագրությունը թեպետև հետագա բարելավման կարիք են զգում, ինչպես և մյուս միջազգային լեզուների կառուցվածքը, այբուբենն ու ուղղագրությունը, բայց իրենց արժանիքներով վերջիններից չեն զիջում։ Մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրները, աշխարհի այլևայլ ժողովուրդների խոշորագույն գիտնականներն ու մշակույթի գործիչները բարձր են գնահատել ռուսաց լեզվի հարստությունն ու արտահայտչական միջոցները։ «Ինչ գեղեցիկ է ռուսաց լեզուն,— գրել է Ֆ. Էնգելսը,—...ամենաուժեղ ու ամենահարուստ կենդանի լեզուներից մեկը...»։

Միջազգային ու ազգամիջյան հաղորդակցման, դաստիարակության ու կրթության լեզվի կամավոր ընտրության լենինյան սկզբունքը հնարավորություն է տալիս օբյեկտիվորեն գնահատելու յուրաքանչյուր լեզվի զարգացածությունն ու հարստությունը, նրա դերն ու նշանակությունը մարդու գործունեության բոլոր բնագավառներում։ Այս սկզբունքին են համապատասխանում ռուսաց լեզվի օբյեկտիվ բնութագրումը, արտասահմանում ռուսերենի՝ որպես աշխարհի մեծագույն լեզուներից մեկի սովորելուն օժանդակելը։



Մենք կանգ առանք ՍՍՌՄ ժողովուրդների լեզուների զարգացման ու փոխադարձ հարստացման միայն մի քանի, մեր կարծիքով առանձնապես արդիական ընդհանուր-սոցիոլոգիական պրոբլեմների վրա։ Կան և ուրիշ արդիական սոցիոլոգիական ու լեզվագիտական պրոբլեմներ, որոնք տեսական ու գործնական մեծ հետաքրքրություն են ներկայացնում և հատուկ քննարկում են պահանջում։

Այսպես, սովետական հասարակությունը շարունակում է մեծ ուշադրություն նվիրել դպրոցներում, դասընթացներում և բուհերում մայրենի լեզվի, ռուսաց լեզվի և օտար լեզուների ուսուցմանը։ Պետությունն ամեն տարի հսկայական միջոցներ է հատկացնում դրա համար, բայց այդ գործի կազմակերպման ու դրվածքի մեջ դեռ խոշոր թերություններ կան և հաճախ արդյունքները չեն համապատասխանում ծախսած միջոցներին ու ջանքերին։ Դա զգալի չափով բացատրվում է լեզուների ուսուցման կազմակերպման և դասավանդման մեթոդների մշակման տեսական ցածր մակարդակով։ Լեզվաբանները պարտավոր են իրենց լուման մուծել լեզուների ուսուցումը բարելավելու գործում։ Դրա համար նրանք պետք է մշակեն դրանց դասավանդման լեզվաբանական հիմունքները, այսինքն՝ այնպիսի կոնկրետ մեթոդներ, որոնք նպաստեն



մայրենի լեզվի, ռուսաց լեզվի և օտար լեզուների դասավանդման արմատական բարելավմանը, լեզուները սովորելու ժամանակի զգալի կրճատմանը, երկլեզվության ու եռլեզվության արագ զարգացմանը (օրինակ՝ ազգային ռեսպուբլիկաներում, մարզերում ու շրջաններում) առաջին հերթին կրթության, դաստիարակության և հասարակական-քաղաքական կյանքի ոլորտներում։ Ըստ որում պետք է կազմակերպվի լեզվաբանների ստեղծագործական համագործակցությունը մեթոդիստների, հոգեբանների, բուհերի դասատուների և դպրոցների ուսուցիչների հետ։

Մինչև օրս չեն ստեղծվել լեզվաբանական առարկաների նոր դասագրքեր, թեև եղածները շատ կողմերով արդեն հնացել են։ Նոր դասագրքերը պետք է պարունակեն Ն. Յա. Մառի ու նրա հետևորդների գիտական ժառանգության, 1950 թ. լեզվաբանական բանավեճի արդյունքների, ինչպես և լեզվաբանության մեջ եղած նոր ուղղությունների, մասնավորապես կառուցվածքային լեզվաբանության զանազան հոսանքների (որոնք տարածում են գտել նաև մեր երկրում) օբյեկտիվ գնահատականը։

Ընդհանրապես ժամանակակից գիտության և մասնավորապես լեզվագիտության հաջող զարգացման համար կարևոր նշանակություն ունեն տերմինաբանության մշակումն ու միասնականացումը։ Գիտելիքների բոլոր բնագավառներում բազմապիսի տերմիններ են աճում ոչ թե օրերով, այլ ժամերով։ Այսպես, օրինակ, հենց միայն քիմիայի բնագավառում արդեն մի քանի միլիոն տերմին կա, էլեկտրոնիկա երիտասարդ գիտությունը արդեն տասնյակ հազարավոր տերմիններ ունի։ Չափազանց անկատար է, մասնավորապես, ժամանակակից գիտական տերմինոլոգիան, գրել է հայտնի գիտնական Ջոն Բեռնալը, նրա նկատմամբ գիտնականների գանգատները հարյուրապատիկ ավելի են, քան գանգատները բառի երկունքից։

Կյանքը, կոմունիստական շինարարության պրակտիկան պահանջում են մշակել տերմինաբանություն ստեղծելու գիտական սկզբունքներ, որոնք հիմնըված լինեն մեր բազմազգ պետությունում լեզվաշինարարության հարուստ փորձի վրա։ Որոշ լեզվաբաններ ու մասնագետներ տարվում են «տերմինաստեղծմամբ», անտեսելով լեզուների փոխադարձ հարստացման օբյեկտիվ օրինաչափությունները, հաճախ հրաժարվելով արդեն միջազգային դարձած տերմիններից։ Այսպես, «սպուտնիկ» տերմինը, որ արտասահմանյան շատ լեզուներ էլ փոխ են առել, անհաջող թարգմանվել է ՍՍՌՄ մի շարք լեզուներով (օրինակ, բուրյաթերեն՝ hемел одон, որ նշանակում է արհեստական աստղ)։ Հասկանալի է, սրանից չի հետևում, թե ամեն մի նոր տերմին միշտ պետք է փոխ առնել ռուսերենից կամ ստեղծել ինտերնացիոնալ բառերի օգնությամբ։ Հարկ եղած չափով պետք է օգտագործել մայրենի լեզվի հնարավորությունները և տերմինները փոխ առնել այն ժամանակ, երբ դա նպատակահարմար ու անհրաժեշտ է։ Ըստ որում անհիմն է լեզվաբաններից ոմանց այն կարծիքը, որը պնդում է, թե իբր տերմիններն ուրիշ լեզուներից փոխ առնելը ցույց է տալիս մայրենի լեզվի և նրա պոտենցիալ հնարավորությունների թերագնահատումը։ Ռուսերենի և ուրիշ գրավոր լեզուների տերմինաբանություն մշակելու գործում հաճախ այնքան էլ ճիշտ չեն հասկանում Վ. Ի. Լենինի դիտողությունները ռուսաց լեզուն մաքրելու վերաբերյալ։ Լենինը իրավացիորեն քննադատել է առանց կարիքի, առանց անհրաժեշտության օտար բառերի գործածությունը։ Բայց Վլադիմիր Իլյիչը երբեք բառերի, տերմինների նպատակա-

համար փոխառության դեմ չի եղել։ Անգլերենի, ռուսաց լեզվի և ժամանակակից այլ զարգացած լեզուների բառապաշարի մի զգալի մասը կազմում են փոխառված բառերը։ Օրինակ, անգլերենի բառապաշարի մոտ 60—70 տոկոսը ուրիշ լեզուներից փոխ առած բառեր են։

Պայքարելով արհեստական տերմինաստեղծման դեմ, հարկավոր է տերմիններ ստեղծել ինչպես մայրենի լեզվի հիման վրա, այնպես էլ դրանք փոխառնելով ռուսերենից և ուրիշ լեզուներից (որտեղ այդ նպատակահարմար է), հաշվի առնելով տերմինաբանության զարգացման ու մերձեցման հեռանկարները, հաշվի առնելով ինտերնացիոնալ բառային ֆոնդի առաջացումը։

Ամենօրյա ուշադրության կարիք են զգում գրական լեզուների այբուբենների միասնականացման, ուղղագրությունների կատարելագործման հարցերը։ Մինչդեռ շատ գրական լեզուների այբուբենների և ուղղագրության բարելավման մասին գործնական աշխատողների առաջարկությունները հաճախ գիտական լեզվաբանական հիմնարկությունների կողմից մնում են առանց քննարկման։

Մեր լեզվաբանների շնորհակալ խնդիրն է պրոպագանդել լեզվի պրոբլեմի լուծման սովետական փորձը, մի փորձ, որ միջազգային տեսական ու գործնական խոշոր նշանակություն ունի։

Սովետական լեզվաբանությունը պետք է սերտորեն կապված լինի կոմունիստական շինարարության պրակտիկայի, նրա արմատական խնդիրների ու հեռանկարների հետ։



Գ. ԳԱԼՈՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ԴՐՈՇՈՎ

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի փորձը ցույց է տալիս, որ սովետական իշխանության հաղթանակն ու ամրապնդումը ինչպես կենտրոնական Ռուսաստանում, այնպես էլ նրա ծայրամասերում, անհնար կլիներ առանց բոլոր ազգերի բանվորների ու գյուղացիների այն միասնության, որին կարողացավ հասնել Վ. Ի. Լենինի ստեղծած կոմունիստական պարտիան՝ ռուսական երեք ռևոլյուցիաների բովում։ Սովետական իշխանության համար մղած մարտերում Ռուսաստանի տարբեր ազգերի աշխատավոր մասսաների պրոլետարական համերաշխության փորձի ընդհանրացումը քաղաքական կարևորագույն նշանակություն ունի։ Այն ամենից առաջ օգնում է մեր երիտասարդությանը պրոլետարական ինտերնացիոնալիզմի ռևոլյուցիոն տրադիցիաների ոգով դաստիարակելու վսեմ գործին։

Արդի բուրժուական գաղափարախոսներն ամեն կերպ ձգտում են ժխտել Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ինտերնացիոնալ բնույթը։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի «ազգային սահմանափակվածության» մասին նրանց բարբաջանքները նպատակ ունեն նսեմացնել Ռուսաստանում հաղթանակած սոցիալիստական ռևոլյուցիայի միջազգային նշանակությունը, հարված հասցնել միջազգային բանվորական ու կոմունիստական շարժմանը, «ապացուցել», որ ռուս կոմունիստները հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո կանգնեցին «ազգային կոմունիզմի» դիրքերում։ Բուրժուական գաղափարախոսության գինանոցից վերցրած այս մաշված զենքով զինվում են նաև միջազգային կոմունիստական շարժման մեջ գլուխ բարձրացրած ռևիզիոնիստները։ Հասկանալի է. այդ պատճառով, Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ինտերնացիոնալ և ազգային խնդիրների անքակտելիության բնույթի բացահայտման կարևորությունը։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան կարողացավ միավորել ռուսական պրոլետարիատի ռևոլյուցիոն պայքարը ճնշված ազգերի ազգային-ազատագրական պայքարին, որովհետև հավասարապես արտահայտում էր ինչպես ռուսական պրոլետարիատի ու գյուղացիության, այնպես էլ ցարիզմի կողմից ճնշված բոլոր ժողովուրդների ազգային շահերը։ Հոկտեմբերի հաղթանակի համար Անդրկովկասի ժողովուրդների մղած համատեղ պայքարը, Ռուսաստանի պրոլե-

տարիատի և Անդրկովկասի բազմազգ աշխատավորների ինտերնացիոնալ և
ազգային շահերի միասնությունը դրա վառ օրինակն են։

Անդրկովկասը, որպես միասնական տնտեսական ու քաղաքական օրգա-
նիզմի մի մասը, սերտորեն կապված էր Ռուսաստանի հետ։ «Քանի որ տարբեր
ազգությունները մեկ պետության մեջ են ապրում,— գրել է Վ. Ի. Լենինը,—
նրանց կապակցում են տնտեսական, իրավական ու կենցաղային բնույթի մի-
լիոնավոր ու միլիարդավոր թելեր» (Երկեր, հ. 19, էջ 629)։ Եվ, չնայած իր
տնտեսական, քաղաքական ու կուլտուրական կյանքի յուրահատկություններին,
Անդրկովկասն ամբողջությամբ ոտք դրեց Ռուսաստանում զարգացող կապի-
տալիզմի ուղին, իսկ երկրամասի ժողովուրդների ազգային-ազատագրական
շարժումները սերտորեն կապվեցին Ռուսաստանի ռևոլյուցիոն բանվորական
շարժման հետ։

Եվ, պատահական չէ, որ XX դարի արշալույսին ռուսական ռևոլյուցիոն
բանվորական շարժման ազդեցության տակ Կովկասում հանդես եկան առաջին
մարքսիստական խմբակներն ու ապա լենինյան-իսկրայական տիպի սոցիալ-
դեմոկրատական կազմակերպությունները, որոնք իրենց ծագման օրից պայքար
ծավալեցին ընդդեմ օպորտունիզմի և բուրժուական նացիոնալիզմի՝ հանուն
Անդրկովկասի պրոլետարիատի ինտերնացիոնալ համախմբման։

Կովկասի լենինյանները շատ լավ էին հասկանում, որ ճնշված ազգերի ազ-
գային-ազատագրական շարժումները կարող են հաղթանակով պսակվել, եթե
դրանք սերտորեն կապվեն ռուսական պրոլետարիատի ռևոլյուցիոն ազատա-
գրական պայքարի հետ։ Այդ պատճառով էլ Ռուսաստանի ծայրամասերի, ինչ-
պես և Անդրկովկասի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումները
դարձան պրոլետարական ռևոլյուցիայի ռեզերվը։ Նկատի պետք է ունենալ նաև
այն, որ Անդրկովկասի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումները
պրոլետարական հունով վարելու համար պայքարող սոցիալ-դեմոկրատական
կազմակերպությունները լավ էին հասկանում, որ ոչ միայն ցարիզմի, այլև
Թուրքական բռնապետության լծից հայ ժողովրդի ազգային ու սոցիալական
ազատագրման հեռանկարներն անպայման առնչվում էին Ռուսաստանում սո-
ցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի հետ։

XX դարի շեմին, երբ հայ ժողովրդի ազատագրական պայքարն ուղղված
էր սուլթանական Թուրքիայի և ցարիզմի դեմ, ճնշված հայ ազգի բուրժուա-
կան նացիոնալիզմի համադեմոկրատական տարրը չէր կարող առաջադիմական
չլինել։ Բուրժուազիայի քաղաքական պարտիաներն էլ իրենց ձևավորման
շրջանում փորձում էին կենդանի ուժ դարձող սոցիալիզմի գաղափարները
հարմարեցնել իրենց ազգային-բուրժուական շահերին։

Պրոլետարիատի համար, Վ. Ի. Լենինի արտահայտությամբ, ազգային պա-
հանջները ենթարկվում են դասակարգային պայքարի շահերին։ Հասկանալի է,
որ իմպերիալիզմի և պրոլետարական ռևոլյուցիաների դարաշրջանում ազգա-
յին-ազատագրական շարժումների նպատակների ու խնդիրների բուրժուական
ու պրոլետարական հայեցակետերը պետք է բախվեին և բախվեցին։ Անդրկով-
կասի բուրժուազիան քաղաքական և տնտեսական կախման մեջ գտնվելով ցա-
րիզմից սկսեց փնտրել համաձայնություն նրա հետ՝ ընդդեմ իր պրոլետա-
րիատի։ Այսպիսով, Անդրկովկասի ճնշված ազգերի բուրժուական նացիոնա-
լիզմը Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նախապատրաստման և անցկացման ժա-
մանակաշրջանում դարձավ սոցիալիստական ռևոլյուցիայի կատաղի թշնամին։



Անդրկովկասի պրոլետարիատի շահերը պահանջում էին պայքարը ծա-
վալել երկու ճակատով՝ ցարական ինքնակալության և տեղական բուրժուական
նացիոնալիզմի դեմ։ Այդ պայքարում երկրամասի բոլոր ազգերի աշխատավոր-
ների համերաշխությունը և նրանց ինտերնացիոնալ կապերի ամրապնդումը
ռուս ռևոլյուցիոն պրոլետարիատի հետ դարձավ կենսական խնդիր, իսկ սո-
ցիալ-դեմոկրատական կազմակերպությունները վերածվեցին առավել մար-
տական կազմակերպությունների։ Վ. Ի. Լենինը, դեռևս 1905 թվականին, տա-
լով Կովկասի տնտեսական ու քաղաքական խոր վերլուծությունը, մատնանշում
էր, «...որ Կովկասի սոցիալ-քաղաքական կյանքի հատուկ պայմանները
նպաստել են այնտեղ մեր պարտիայի ամենամարտական կազմակերպություն-
ներն ստեղծելու» (Երկեր, հ. 8, էջ 536)։

Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների մարտունակությունը
բացատրվում էր, ամենից առաջ, նրանց կազմի ու գործունեության ինտերնա-
ցիոնալ բնույթով։ Բոլշևիկները հանդես եկան որպես երկրամասի բազմազգ
պրոլետարիատի ինտերնացիոնալ տրադիցիաների լավագույն կրողներ։

Ինչպես Անդրկովկասի, այնպես էլ Ռուսաստանի մյուս ծայրամասերի
ճնշված ազգերի աշխատավորները մեծ խանդավառությամբ ընդունեցին Հոկ-
տեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակի լուրը և կանգնեցին նրա նվաճումների
պաշտպանության դիրքերում, որովհետև միայն սոցիալիստական ռևոլյուցիայի
հաղթանակի մեջ էին նրանք տեսնում ոչ միայն իրենց սոցիալական, այլև
ազգային ազատագրման հնարավորությունը։ Հոկտեմբերյան ռևոլյուցիան օբ-
յեկտիվորեն պատասխանում էր ցարիզմի կողմից ճնշված փոքր ազգերի ազ-
գային-ազատագրական շարժման հասունացած պահանջներին։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան ընդմիշտ ոչնչացրեց մեր երկրի աշխատա-
վորների դասակարգային և ազգային ճնշումը, նոր դարագլուխ բացեց Ռու-
սաստանի ժողովուրդների հարաբերությունների մեջ։ Բայց Անդրկովկասում
ստեղծված ներքին ու արտաքին ծանր պայմաններն ստիպեցին երկրամասի
աշխատավորներին՝ շարունակել պայքարը սովետական իշխանության համար։

Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների, նրանց երկրամա-
սային ղեկավար կենտրոնների՝ պարտիայի Կովկասյան Երկրային կոմիտեի և
ապա ՌԿ(բ)Պ Կովկասյան բյուրոյի ամբողջ քաղաքականության և պրակտիկ
գործունեության նպատակն էր՝ բոլոր ազգերի աշխատավորների ինտերնա-
ցիոնալ համախմբումը կոմունիստական պարտիայի, սովետական իշխանու-
թյան և ռուսական բանվոր դասակարգի շուրջը։

Անդրկովկասում սոցիալիստական ռևոլյուցիայի դրոշը առաջինը բարձ-
րացրեց Բաքվի հերոսական բազմազգ պրոլետարիատը։ Սովետական Բաքուն
դարձավ ո՛չ միայն Անդրկովկասի, այլև ճնշված Արևելքի ժողովուրդների ազա-
տագրման փարոսը։ Այն պրոլետարական համերաշխության վառ օրինակ
ծառայեց։

Սովետական իշխանության ամրապնդումը Բաքվում, ռևոլյուցիոն վերելքը
ամբողջ երկրամասում սարսափի մեջ գցեցին հակառևոլյուցիոն նացիոնա-
լիստներին և օտարերկրյա իմպերիալիստներին, որոնք միավորեցին իրենց
ուժերը՝ Սովետական Բաքվի դեմ։ Բուրժուա-նացիոնալիստական պարտիա-
ներն ստեղծեցին «ապադասակարգային» ազգային հայրենակցություններ և
ծավալեցին սանձարձակ շովինիստական պրոպագանդա, ձգտելով երկպա-
ռակություն մտցնել ռևոլյուցիոն ուժերի շարքերում։

Ի հակակշիռ նացիոնալիստական կազմակերպությունների, պարտիայի Բաքվի Կոմիտեի որոշմամբ, բոլշևիկներն ստեղծեցին ինտերնացիոնալ բանվորական հայրենակցություններ, որոնք լայն ագիտացիա էին մղում գյուղերում, թուլացնում նացիոնալիստների ազդեցությունը, նպաստում բոլոր ազգերի բանվորների ու գյուղացիների ինտերնացիոնալ կապերի ամրապնդմանը։ Երիտասարդության շրջանում այդ ուղղությամբ բեղմնավոր գործունեություն ծավալեց Բաքվի բանվորական երիտասարդության Ինտերնացիոնալ միությունը։

Բաքվի, ամբողջ Անդրկովկասի աշխատավորությանը լենինյան ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու ուղղությամբ հսկայական դեր խաղաց Բաքվի բոլշևիկյան մամուլը, որն անգնահատելի զենք էր՝ բուրժուական նացիոնալիզմի դեմ մղվող պայքարում։ Բաքվի բոլշևիկյան մամուլը աշխատավորության ինտերնացիոնալ համախմբման պայքարի տարեգրությունն է։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների կենդանի մարմնացում էր Բաքվի կոմունայի մարտական դրուժինան, որի շարքերում ձեռք-ձեռքի պայքարում էին հայերը, ռուսները, ադրբեջանցիները, վրացիները, լեռնականները, հրեաները։

Անդրկովկասի բազմազգ պրոլետարիատի ինտերնացիոնալ միասնությունը մեծ քննություն բռնեց հատկապես 1918 թ. Բաքվի մարտյան դեպքերի ժամանակ, երբ մուսավաթական բանդաները գերմանա-թուրքական իմպերիալիստների հետ դավադիր միություն կնքած հակառևոլյուցիոն խռովություն բարձրացրին, նպատակ ունենալով տապալել սովետական իշխանությունը Բաքվում և Անդրկովկասը ենթարկել թուրքական պրոտեկտորատին։ Երբ ադրբեջանական բեկերն ու խաները մութ խավերի գլուխն անցած գրոհում էին Բաքվի կոմունայի վրա, «Կարմիր գվարդիան, որ բաղկացած էր հայ, մուսուլման և ռուս բանվորներից, նավթահանքերը պաշտպանում էր թշնամու հարձակումից» (Ստ. Շահումյան, Երկեր, հ. 3, էջ 145)։

Պարտիայի երկրային կոմիտեի կոչով Բաքվի սովետական իշխանության պաշտպանությամբ հանդես եկան ոչ միայն Ադրբեջանի, այլև Հայաստանի, Վրաստանի, Դաղստանի—ամբողջ Անդրկովկասի աշխատավորները։

Անդրկովկասի շովինիստական թունոտ մթնոլորտում Բաքվի կոմունան հանդիսացավ պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշակակիրը, վերածվեց երկրամասի բազմազգ պրոլետարիատի համերաշխ ընտանիքի։

Դասակարգային պայքարը Հայաստանում, Վրաստանում և Անդրկովկասում է՛լ ավելի սրվեց, իսկ բուրժուա-նացիոնալիստական պարտիաները լրիվ վարկաբեկվեցին իրենց՝ որպես հակաժողովրդական, պրոիմպերիալիստական պարտիաներ։ Դաժան տեռորի և վայրենի կամայականության պայմաններում միայն բոլշևիկներն էին, որ իրենց ձեռքը վերցրին Անդրկովկասի ժողովուրդների ազատագրական պայքարի դրոշը, նրա շուրջը համախմբեցին բազմազգ աշխատավորությանը և առաջնորդեցին դեպի հաղթանակ։

Ազգամիջյան կոտորածներից հյուծված և կյանքի դառն փորձով իմաստնացած՝ երկրամասի աշխատավորները համոզվեցին, որ իրենց ազգային ու սոցիալական ազատագրումը կարող է ձեռք բերվել միայն երկրամասի բոլոր ազգերի ինտերնացիոնալ համախմբման և սովետական իշխանության հաստատման միջոցով։ ՌԿ(բ)Պ Կենտկոմին 1919 թ. վերջերին ներկայացրած «Կովկասյան հարցի շուրջը» թեզիսներում Ա. Ի. Միկոյանը գրում է. ««Իրենց» կա-



պիտալիստների և կալվածատերերի երկու տարվա տիրապետությունից հետո... Կովկասի բանվորներն ու գյուղացիները աշխատավորների ինտերնացիոնալ համախմբման և սովետական իշխանության համար քաղաքացիական պատերազմի անհրաժեշտության գիտակցության եկան։ Այսպիսով, Սովետական իշխանության գաղափարը կլիմայավարժվեց և կովկասյան ժողովուրդների պրոլետարիատի ու գյուղական չքավորության համար դարձավ անհրաժեշտություն և օբյեկտիվ անխուսափելիություն, որոնք այժմ արդեն պատրաստ են արյամբ նվաճելու այդ իշխանությունը» (ՄԼԻ-ի Ադրբեջանական պարտարխիվ. պատճենների ֆոնդ, գ. 39, թ. 6)։

Անդրկովկասի բանվորա-գյուղացիական մասսաներին ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու գործում հսկայական նշանակություն ունեցավ ՌԿ(բ)Պ Կենտկոմի և անձամբ Վ. Ի. Լենինի օգնությունը երկրամասի բոլշևիկյան կազմակերպություններին։ Միայն 1919 թվականին ՌԿ(բ)Պ Կենտկոմի Քաղբյուրոն և Կազմբյուրոն ավելի քան տասն անգամ քննարկել են Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների հետ կապված հարցեր, որոնցից շատերի քննարկմանն անձամբ մասնակցել է Լենինը։

Ստանալով ՌԿ(բ)Պ Կենտկոմի ամենօրյա օգնությունը և ղեկավարվելով Վլադիմիր Իլյիչի իմաստուն ցուցումներով, Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպություններին հաջողվեց աշխատավորական լայն մասսաներին դուրս բերել բուրժուա-նացիոնալիստական պարտիաների ազդեցությունից և տանել իրենց հետևից։ Սովետական իշխանության համար երկրամասի աշխատավորների համատեղ պայքարի բազմաթիվ փաստեր այդ են վկայում։

Այսպես, 1919 թ. սկզբներին, երբ դենիկինյան բանդաները մարտեր էին մղում Սովետական Ռուսաստանի դեմ և նրանց օգնում էին անդրկովկասյան ռեսպուբլիկաների կառավարությունները, Սովետական Ռուսաստանի կառավարությունը դիմեց վերջիններիս՝ կոչ անելով համատեղ պայքար կազմակերպել Ռուսաստանի և Կովկասի բանվորա-գյուղացիական մասսաների ընդհանուր թշնամու դեմ։ Բուրժուական նացիոնալիստները մերժեցին Սովետական Ռուսաստանի կառավարությանը։ Բայց Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի շատ բանվորներ ու գյուղացիներ պարտիայի Երկրային կոմիտեի կոչով մտան Դենիկինի դեմ պայքարող հատուկ ջոկատները։

Հայտնի է, օրինակ, որ դաշնակցական կառավարությունն էլ իր հերթին էր կազմակերպում ջոկատներ՝ դենիկինյան բանակի շարքերում, Սովետական Ռուսաստանի դեմ պայքարելու համար։ Չնայած դրան, հայ զինվորներն իրենց զենքն ուղղում էին ոչ թե Սովետական Ռուսաստանի, այլ դենիկինյան բանդաների դեմ։ «Кубанский край» թերթի վկայությամբ դա «Դենիկինին շատ էր կատաղեցնում»։ Դենիկինը, գրում է թերթը, «շատ էր կատաղած հայերի դեմ, որովհետև հայերն Արմավիրում երկու անգամ հանդես են եկել նրա դեմ, որի հետևանքով կամավորական դիվիզիայի շտաբը գերի է ընկել բոլշևիկներին», իսկ հայկական ջոկատն անցել է բոլշևիկների կողմը (տե՛ս ЦГАОРСС СССР, ф. 446, оп. 2, д. 35, л. 9 (քաղվածք՝ թերթից))։

Կամ մի այլ օրինակ. դենիկինյան բանդաների դեմ Դաղստանում պարտիզանական պայքարի ակտիվ մասնակից Աբդուրահիմ Դալգատը իր հուշերում գրում է, թե ինչպես Դերբենտը դենիկինյան «կամավորներից» ազատագրելու համար իրենց հետ կողք-կողքի պայքարում էին Բաքվից եկած ռուսները, և երբ նրանցից մեկին հարց տրվեց, թե «Ինչո՞ւ է նա, ռուսը, այստեղ և կռվում

է պարտիզանների հետ միասին», «Մեր մասնագիտությունն է,— ծիծաղելով պատասխանեց բաքվեցին,— կռվել ռևոլյուցիայի համար, որտեղ էլ որ այն լինի» («Борьба за власть Сэветов в Дагестане» (Сборник воспоминаний, Махач-Кала, 1958, стр. 55—56)։ Այս պատասխանում շատ բան է ասված տարբեր ազգերի աշխատավորների պրոլետարական համերաշխության մասին։

Նույնպիսի գիտակցությամբ էին պայքարում Անդրկովկասի աշխատավորները անգլիական օկուպանտների դեմ, որը կարևոր դեր խաղաց նրանց նվաճողական քաղաքականության ձախողման գործում։ Ավելին, երկրամասի աշխատավորների ինտերնացիոնալ համախմբվածության փաստը հեղափոխիչ ազդեցություն ունեցավ հենց անգլիական օկուպացիոն զորքերի զինվորների վրա։ Այդ մասին վկայող բազմաթիվ փաստեր կան։

Ներքին և օտարերկրյա հակառևոլյուցիայի դեմ մղած պայքարում է՛լ ավելի ամրապնդվեց Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի աշխատավորների ինտերնացիոնալ համախմբվածությունը։

Բուրժուական արդի գաղափարախոսները (Ռիչարդ Փայփս, Ֆրեդերիկ Շուման, Հանս Կոն և ուրիշներ), ինչպես նաև հայրենադավ ազգասերները՝ բուրժուական նացիոնալիստները, փորձում են ժխտել սովետական իշխանության համար Անդրկովկասի բանվորների ու գյուղացիների ինտերնացիոնալ պայքարի հանրահայտ փաստերը։ Խոսելով վրացական, հայկական և ադրբեջանական բուրժուազիայի իրարամերժ ձգտումների և այդ հողի վրա առաջացած ազգամիջյան ընդհարումների մասին, նրանք այդ վերագրում են երկրամասի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումներին, ձգտելով ապացուցել, որ իբր թե Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի կոմունիստական պարտիաներն իրենց երկրների ազգային բուրժուազիայի քաղաքականության ժառանգորդներն են եղել, իսկ երկրամասի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումները կրել են զուտ ազգայնական բնույթ և ոչինչ ընդհանուր չեն ունեցել պրոլետարիատի ազատագրական պայքարի հետ։

Անդրկովկասում սովետական իշխանության համար մղած պայքարի ամբողջ պատմությունը հերքում է բուրժուական գաղափարախոսների այդ հերյուրանքը։ Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի բոլշևիկյան կազմակերպությունների և ապա ազգային կոմպարտիաների վարած քաղաքականությունը ոչ մի ընդհանուր բան չուներ և չէր էլ կարող ունենալ բուրժուա-նացիոնալիստական պարտիաների վարած քաղաքականության հետ։ Հանդիսանալով ՌԿ(բ)Պ մարտական ջոկատները, նրանք գլխավորում էին աշխատավոր մասսաների պայքարը՝ երկրամասում սովետական իշխանության հաստատման համար։

Պետք է նշել, սակայն, որ պարտիայի Կովկասյան Երկրային կոմիտեն, առանձին կազմակերպություններ ու գործիչներ տակտիկական լուրջ սխալներ թույլ տվեցին. նրանք չհամաձայնեցին Ստ. Շահումյանի հետ, որը դեռևս 1918 թ. կեսերին, ելնելով տեղական առանձնահատկություններից և ազգերի ինքնորոշման լենինյան լոզունգից, առաջ էր քաշում Կովկասի անկախ սովետական ռեսպուբլիկաներ ստեղծելու լոզունգը։ Այդ լոզունգի հակառակորդներն անհիմն կերպով վախենում էին, որ այն նացիոնալիզմին քաղաքացիական իրավունք կտա և կթուլացնի երկրամասի աշխատավորների ինտերնացիոնալ պայքարը։ Պահանջվեց մեկ տարի, որպեսզի վերջիններս զգային իրենց սխալը։

1919 թ. կեսերին պարտիայի Բաքվի և Կովկասյան Երկրային կոմիտե-



ներն առաջ քաշեցին Անդրկովկասի սովետական անկախ ռեսպուբլիկաներ ստեղծելու լոզունգը։ Դրան զուգահեռ հարց դրվեց երկրամասի բոլշևիկյան տեղական կազմակերպությունների հիման վրա Ադրբեջանի, Հայաստանի և Վրաստանի կոմունիստական պարտիաներ ստեղծելու մասին։ ՌԿ(բ)Պ Կենտկոմը պաշտպանեց այդ նախաձեռնությունը և Կովկասյան Երկրային կոմիտեի միջոցով ղեկավարեց այդ պրոցեսը։ Այս հարցում, հատկապես, մեծ ծառայություն ունեն Ս. Օրջոնիկիձեն և Ա. Միկոյանը։ Ջեռնամուխ լինելով վերը նշված խնդիրների կենսագործմանը, ինչպես նշում է Ա. Միկոյանը, խնդիր դրվեց ավելի մեծ թափով շարունակել «աշխատանքը մասսաների մեջ՝ նացիոնալիզմի մնացուկները վերացնելու, նրանց գլխից դուրս մղելու ինքնակա հնոտին, որը մշակվել է ինքնորոշվող բուրժուազիայի կողմից» (ՄԼԻ-ի Ադրբեջ. ֆիլ. պարտարխիվ, պատճենների ֆոնդ, գ. 39, թ. 7)։

Անդրկովկասի անկախ սովետական ռեսպուբլիկաներ ստեղծելու լոզունգը հեղափոխիչ նշանակություն ունեցավ։ Չնայած բուրժուանացիոնալիստական պարտիաների իշխանության տարիներին լուրջ հարված հասցվեց մեր ժողովուրդների տրադիցիոն բարեկամությանը, դասակարգային մարտերի փոթորիկներում ծնված Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի կոմպարտիաները, ՌԿ(բ)Պ Կենտկոմի և անձամբ Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ կարողացան շովինիստական շմոլքի պայմաններում միավորել Անդրկովկասի բազմազգ աշխատավորության շարքերը և պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշով առաջնորդել նրան դեպի սովետական իշխանության համար մղվող պայքարի հաղթական ավարտը։

Անդրկովկասի աշխատավորների պրոլետարական համերաշխությունը վառ կերպով դրսևորվեց 1920—1921 թվականներին, երբ Ադրբեջանի, Հայաստանի ու Վրաստանի բանվորներն ու գյուղացիները տապալեցին բուրժուազիայի տիրապետությունը և սովետական իշխանության դրոշ բարձրացրին։

1920 թ. ապրիլի 28-ին Ադրբեջանում հաստատվեց սովետական իշխանություն։ Այդ լուրը Հայաստանի ու Վրաստանի աշխատավորները դիմավորեցին մեծ խանդավառությամբ։ Մայիսի մեկը Հայաստանում անցավ ամբողջ Անդրկովկասում սովետական իշխանություն հաստատելու լոզունգով։ Մայիսմեկյան ցույցերը շուտով վերածվեցին զինված ապստամբության։ Դաշնակցական կառավարությունը հայտարարվեց տապալված և Հայաստանում հռչակվեց սովետական իշխանություն։ Ապստամբության օրերին Ադրբեջանի բանվորներն ու գյուղացիները խմբերով մոտենում էին Հայաստանի սահմաններին և իրենց օգնությունն առաջարկում ապստամբներին։

Ապստամբության պարտությունից հետո, երբ Հայաստանում մոլեգնում էր սպիտակ տեռորը, ապստամբության բազմաթիվ մասնակիցներ անցան Սովետական Ադրբեջան և այնտեղ ապաստան գտան։ Ադրբեջանի տերիտորիայում ձևավորվեց հայկական առանձին կարմիրբանակային գունդը, որը հետագայում XI կարմիր բանակի զորամասերի հետ մտավ Հայաստան։ Ադրբեջանի տերիտորիայում էր գործում ՀԿՊ Կենտկոմի Արտասահմանյան բյուրոն։ Զանգեզուրի լեռներում դարանակալած դաշնակների դեմ մղվող պայքարում ձեռք ձեռքի տված պայքարում էին հայ և ադրբեջանցի աշխատավորները։

Հայ և վրացի աշխատավորների դասակարգային համերաշխությունը հատկապես վառ կերպով դրսևորվեց 1921 թ. Լոռվա ապստամբության օրերին։ Լոռվա բոլշևիկյան ընդհատակյա կազմակերպությունները Բորչալուի գավառի

*վրացի բոլշևիկների հետ միասին ոտքի հանեցին հայ և վրացի աշխատավորներին ընդդեմ մենշևիկյան կառավարության։*

*Պրոլետարական ինտերնացիոնալիզմի ցայտուն արտահայտությունն է սովետական իշխանության համար Անդրկովկասի ժողովուրդների մղած պայքարում ռուս մեծ ժողովրդի ցույց տված օգնությունը։*

*Սովետական Ռուսաստանի և Վ. Ի. Լենինի գլխավորած կոմունիստական պարտիայի հերոսական պայքարը իմպերիալիստական տերությունների ոտնձգությունների և երկրի ներքին հակառևոլյուցիայի դեմ վճռական նշանակություն ունեցավ Անդրկովկասի ժողովուրդների ազգային ու սոցիալական ազատագրման գործում։ Չպաշտպաներ ռուս ժողովուրդը Մեծ Հոկտեմբերի նվաճումները, չէր լինի նաև հայ, վրաց և ադրբեջանական ժողովուրդների ազատագրությունը։ Սրանումն է, ամենից առաջ, ռուս մեծ ժողովրդի ծառայությունը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի՝ նրա պարտքի կատարումը։*

*Բուրժուական նացիոնալիստների և օտարերկրյա գաղութարարների տիրապետության դժնդակ օրերին միայն Սովետական Ռուսաստանն էր, որ եղբայրական օգնության ձեռք մեկնեց երկրամասի աշխատավորներին։ Սովետական Ռուսաստանի կառավարությունն էր, որ հռչակեց դեկրետ Արևմտյան Հայաստանի անկախության մասին, նա էր, որ վճռականապես բողոքեց 1918 թ. Թուրքիայի Անդրկովկաս կատարած արշավանքի դեմ և դատապարտեց թուրքական ռազմամոլների հայաջինջ քաղաքականությունը։ Սովետական Ռուսաստանի կառավարությունն էր դարձյալ, որ ապաստան տվեց թուրքական յաթաղանից փախած հայ շինականին և տնտեսական հսկայական օգնություն կազմակերպեց հայ գաղթականությանը։*

*Երբ 1920 թ. աշնանը Անտանտի իմպերիալիստների հրահրանքով թուրքական նացիոնալիստները նորից ներխուժեցին Հայաստան, ավերելով քաղաքներն ու գյուղերը, ոչնչացնելով հարյուր հազարավոր անմեղ մարդկանց, Սովետական Ռուսաստանի կառավարությունն էր, որ պաշտպան կանգնեց հայ ժողովրդին։ Թուրքական նոր հարձակումը Հայաստանի վրա Վ. Ի. Լենինը գնահատեց որպես ամբողջ Անդրկովկասը զավթելու փորձ։ 1920 թ. հոկտեմբերի 9-ին պարտիայի Մոսկվայի կազմակերպության ակտիվի խորհրդակցությունում տված զեկուցման մեջ Լենինը նշեց. «Վերջերս թուրքերը հարձակում են սկսել Հայաստանի վրա, նպատակ ունենալով գրավել Բաթումը, իսկ հետո կարող է Բաքուն...»* (Ленинский сборник XXXVI, стр. 131)։

*Սակայն հայ ժողովրդին բնաջնջելու և ամբողջ Անդրկովկասը նվաճելու թուրքական զավթիչների պլանները տապալվեցին։ 1920 թ. նոյեմբերի 29-ին Հայաստանի վրա ծածանվեց Հոկտեմբերի ալ դրոշը, Հայաստանը դարձավ սովետական։ Հայ ժողովրդի արևելյան հատվածը ընդմիշտ փրկվեց ֆիզիկական ոչնչացման վտանգից և կանգնեց ազգային վերածննդի ուղու վրա։ Վ. Ի. Լենինը ողջունեց իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշխատավորական Հայաստանը։ Իսկ 1920 թ. դեկտեմբերի 21-ին Սովետների VIII համագումարի ՌԿ(բ)Պ ֆրակցիայի նիստում Վ. Ի. Լենինը հայտարարեց. «Թուրքական հարձակումը մեր դեմ էր ուղղված։ Անտանտը մեզ համար փոս էր փորում և ինքն էլ ընկավ այնտեղ, որովհետև մենք ձեռք բերեցինք Սովետական Հայաստան։*

*Թուրքիայի գլխին կանգնած են կադետները, օկտյաբրիստները, նացիոնալիստները, որոնք պատրաստ են մեզ Անտանտին ծախել»* (Журнал «Коммунист», № 6, 1963, стр. 8)։



*Հայաստանում սովետական իշխանություն հաստատվելուց հետո էլ թուրքերը շարունակում էին իրենց ագրեսիվ քաղաքականությունը Հայաստանի նկատմամբ, բազմիցս ձգտելով պատերազմական գործողություններ սկսել նրա դեմ։ Սովետական Ռուսաստանի կառավարությունը վճռականապես հանդես եկավ նախապատրաստվող նոր ագրեսիայի դեմ, մատնանշելով թե ինչ հետևանքներ կարող է ունենալ թուրքական հարձակումը։*

*1921 թ. ապրիլի 6-ին Ս. Օրջոնիկիձեին ուղարկած հեռագրում Գ. Չիչերինը հաղորդում էր. «Ալի Ֆուադը (Մոսկվայում Թուրքիայի դեսպանը— Գ. Գ.) ինձ խոստացել է անհապաղ ազատել Ալեքսանդրապոլը։ Նրան իսկույն ևեթ հաղորդում եմ Կարաբեքիրի խուլիգանության մասին, մատնանշելով, որ Թուրքիայի և Սովետական Հայաստանի միջև պատերազմը կնշանակի պատերազմ Թուրքիայի և Սովետական Ռուսաստանի միջև»* («Документы внешней политики СССР», т. IV, стр. 50)։

*Հասկանալի է, թե ինչ կլիներ տնտեսապես քայքայված և ռազմականապես դեռևս շատ թույլ Հայաստանի վիճակը, եթե Սովետական Ռուսաստանը պաշտպան չկանգներ։ Սովետական Ռուսաստանը մեծ ջանքեր գործադրեց թուրքական օկուպանտներին 1921 թ. մարտի 21-ի պայմանագրով սահմանված Հայաստանի տերիտորիայից դուրս վռնդելու, ինչպես նաև Զանգեզուրը դաշնակներից ազատագրելու գործում։*

*Ամբողջ Անդրկովկասում սովետական իշխանություն հաստատելուց հետո էլ Հայաստանի, Վրաստանի ու Ադրբեջանի աշխատավորները չէին կարող պաշտպանել իրենց ազատությունն ու պետական անկախությունը իմպերիալիստական տերությունների ոտնձգություններից, եթե չլիներ Սովետական Ռուսաստանի օգնությունը։*

*Ջերմագին ողջունելով Կովկասի սովետական ռեսպուբլիկաներին, Լենինը կոմունիստների առաջնահերթ խնդիրներից մեկը համարում էր Կովկասի տարբեր ազգությունների բանվորների ու գյուղացիների միջև ազգային խաղաղության ամրապնդումը։ Նա հաստատ հույս էր հայտնում, որ Կովկասի սովետական ռեսպուբլիկաների «սերտ դաշինքը կստեղծի ազգային խաղաղության մի այնպիսի օրինակ, որը չի տեսնված բուրժուազիայի ժամանակ և անհնարին է բուրժուական հասարակարգում» (Երկեր, հ. 32, էջ 402)։*

*Սա Վ. Ի. Լենինի պատվիրանն է Կովկասի բոլոր կոմունիստներին, բոլոր աշխատավորներին։ Չի կարող լինել ավելի մեծ դավաճանություն մեր ժողովուրդների ազգային շահերին, քան այդ բարեկամության խախտման թեկուզ և աննշան փորձը։ ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը ամրապնդվել և ամրապնդվում է սովետական իշխանության տարիներին։ Անդրկովկասի ժողովուրդների տրադիցիոն բարեկամության, նրանց պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու գործում մեծ դեր խաղաց Անդրֆեդերացիան, որի կազմակերպիչն ու ոգեշնչողը Վ. Ի. Լենինն էր։ Անդրկովկասի միավորված եղբայրական ռեսպուբլիկաները տնտեսական ու քաղաքական սերտ դաշինքի մեջ մտան Սովետական Ռուսաստանի հետ։*

*Մեր Մեծ Հայրենիքի բոլոր ժողովուրդների բարեկամությունը ցեմենտող ուժը կոմունիստական պարտիան է, որը բարձր է պահում պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշը։*

# ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ ՊԱՐՏԻԱՆ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՀԱՂԹԱՆԱԿԻ ՈԳԵՇՆՉՈՂ ՈՒ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉ

Ռ. ՄՈՎՍԻՍՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ

1917 թվականի փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան զգալի տեղաշարժեր կատարեց Ռուսաստանի բազմազգ ժողովուրդների հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում։ Նա շարժման մեջ դրեց երկրի բոլոր դասակարգերին ու քաղաքական ուժերին, նրանցից յուրաքանչյուրից հրամայաբար պահանջելով արագորեն որոշել իր դիրքն ու տակտիկան ռևոլյուցիայի հետագա զարգացման ընթացքի և բնույթի վերաբերյալ։ Եվ նրանք բոլորն էլ զարմանալի արագությամբ կատարեցին այդ, ամենայրիվ պարզությամբ և հստակությամբ դրսևորեցին իրենց քաղաքական վարքագիծն ու տակտիկան։

Իսկ քաղաքական ի՞նչ ուժեր էին գործում այդ շրջանում Ռուսաստանում և ինչպիսին էր նրանց տակտիկան փետրվարյան ռևոլյուցիայի և նրա հետագա զարգացման ու խորացման նկատմամբ։

Քաղաքական առաջին խոշոր ուժը ճորտատեր-կալվածատերերի դասակարգն էր։ Լինելով ցարական միապետության հենարանը, կալվածատերերի դասակարգը, հասկանալի պատճառով, դարձավ ռեակցիայի գլխավոր ուժը և, հին չինովնիկության ու գեներալիտետի հետ միասին, ամեն ինչ արեց՝ ճնշելու ժողովրդական մասսաների զինված ապստամբությունը, փրկելու միապետությունը կործանումից, բնականաբար և շարունակելու ցարիզմի արտաքին ու ներքին քաղաքականությունը։

Քաղաքական երկրորդ կարևոր ուժը բուրժուազիան էր՝ օկտյաբրիստների և կադետների գլխավորությամբ։ Ռուսական բուրժուազիան, որը դեռ վաղուց ձգտում էր քաղաքական իշխանության, տեսնելով ժողովրդական լայն մասսաների անզիջում պայքարը ցարիզմի դեմ, ապավինելով անգլո-ֆրանսիական իմպերիալիզմի ուժերին ու խորհուրդներին, մտավ ռևոլյուցիայի ընդհանուր հորձանուտի մեջ, մասնակցեց միապետական կարգի տապալման գործին և մանրբուրժուական պարտիաների ուղղակի աջակցությամբ իրականում յուրացրեց ժողովրդական մասսաների ռևոլյուցիոն պայքարի պտուղները՝ զավթեց քաղաքական իշխանությունը և ստեղծեց բուրժուական ժամանակավոր կառավարություն։ Բայց բուրժուազիան այն ուժը չէր, որ ցանկանար ցարիզմի տապալումից հետո արմատական փոփոխություններ մտցներ երկրի տնտեսական ու քաղաքական կյանքում։ Նա մահու չափ վախենում էր ռևոլյուցիայի հետագա ծավալումից ու խորացումից և, այդ պատճառով էլ, զավթելով քաղաքական իշխանությունը, ռևոլյուցիան համարեց ավարտված, գործադրեց բոլոր ջանքերը նրա հետագա խորացումն արգելակելու համար։

Ռուսական բուրժուազիան շլուծեց և իր ռեակցիոն բնույթի համաձայն չէր էլ կարող լուծել ոչ մի հարց, որ հուզում էր ժողովրդին և որոնց համար նա զինված պայքարի էր ելել ցարական միապետության դեմ։ Խոսելով ժամանակավոր կառավարության դասակարգային բնույթի ու նպատակների մասին, դեռ մարտի 20-ին Լենինը գրել է. «Օկտյաբրիստների և կադետների, Գուչկովների և Միլյուկովների կառավարությունը չի կարող,— նույնիսկ եթե նա անկեղծորեն ցանկանա այդ (Գուչկովի և Լվովի անկեղծության մասին կարող են մտածել միայն մանուկները),— չի կարող տալ ժողովրդին ոչ խաղաղություն, ոչ հաց, ոչ ազատություն։

Խաղաղություն՝ այն պատճառով, որովհետև նա պատերազմի կառավարություն է, իմպերիալիստական սպանդը շարունակելու կառավարություն, կողոպուտի կառավարություն...

Հաց՝ այն պատճառով, որովհետև դա բուրժուական կառավարություն է։ Լավագույն դեպքում նա կտա ժողովրդին, ինչպես տվեց Գերմանիան, «հանճարեղորեն կազմակերպված սով...

Ազատություն՝ այն պատճառով, որովհետև դա կալվածատիրական-կապիտալիստական կառավարություն է, որ վախենում է ժողովրդից և արդեն սկսել է գործարքը ռոմանովյան դինաստիայի հետ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 23, էջ 409—410)։

Ժամանակավոր կառավարության 8-ամսյա գործունեությունը հաստատեց լենինյան այդ գնահատականի բացարձակ ճշմարտացիությունը։ Բանվոր դասակարգին ամենաչնչին չափով չհատուցվեց այն արյան համար, որ նա թափել էր։ Չլուծվեց նաև ագրարային հարցը։ Աշխատավոր գյուղացիությունը կրկին մնաց առանց հողի, դաժանորեն շահագործվելով կալվածատերերի ու կուլակների կողմից։ Լիովին պահպանվեց ազգային ճնշումը։ Ռուսաստանի ճնշված ազգերից և ոչ մեկը չստացավ ազատություն և ինքնորոշման իրավունք։ Ժամանակավոր կառավարությունը հետևողականորեն շարունակեց իմպերիալիստական թալանչիական պատերազմը «մինչև վերջ» հասցնելու հակաժողովրդական քաղաքականությունը։

Քաղաքական երրորդ ուժը մանրբուրժուական համաձայնողական պարտիաներն էին՝ մենշևիկներն ու էսեռները։ Մենշևիկներն ու էսեռները, որոնք զգալի ազդեցություն ունեին գյուղացիության և բանվոր դասակարգի ոչ գիտակից շրջանների վրա, նույնպես մասնակցեցին ռևոլյուցիային։ Բայց նրանք հավատարիմ մնալով բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի բնույթի և շարժիչ ուժերի վերաբերյալ ունեցած իրենց հակամարքսիստական տեսությանը, գտան, որ ռևոլյուցիան իր բնույթով բուրժուական է, որ նա լուծել է իր առջև դրված բոլոր խնդիրները, հետևաբար և ավարտվել է։ Համաձայնողական պար-

տիաները գտնում էին, որ բանվոր դասակարգը պետք է պաշտպանի և աջակցի ժամանակավոր կառավարությանը:

Ռևոլյուցիայի պտուղներից օգտվեցին նաև այս պարտիաները: Օգտվելով ռևոլյուցիայի ընթացքում իրենց համար ստեղծված նպաստավոր պայմաններից՝ պրոլետարիատի կազմի լուրջ փոփոխությունից, մանրբուրժուական տարերքի վիթխարի ազդեցությունից, բոլշևիկների պարտիայի ընդհատակում գտնվելուց և նրա առաջնորդների բացակայությունից ու այլ հանգամանքներից, մենշևիկներն ու էսեռները իրենց հիմնական ուշադրությունը դարձրին սովետների ընտրության վրա, կարողացան մեծամասնություն կազմել բանվորական ու զինվորական սովետներում, այդ թվում նաև Պետրոգրադի սովետի գործադիր կոմիտեում և այդպիսով զավթեցին նրանց ղեկավարությունը: Կանգնելով Պետրոգրադի սովետի ղեկավարության գլուխ, նրանք ժողովրդից գաղտնի և նրա թիկունքում համաձայնության եկան լիբերալ բուրժուազիայի հետ, փաստական իշխանությունը հանձնելով նրանց: Իրենց սոցիալիստական կոչող այդ պարտիաները, որոնք մի ժամանակ վճռաբար հանդես էին գալիս ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարությանը սոցիալ-դեմոկրատիայի մասնակցության դեմ, այժմ կաշվից դուրս էին գալիս ապահովելու իրենց մասնակցությունը ժամանակավոր բուրժուական ռեակցիոն կառավարությանը, որին և հասան հետագայում՝ կազմելով բուրժուազիայի հետ կոալիցիոն կառավարություն: Մենշևիկների ու էսեռների ամբողջ գործունեությունն ուղղված էր ռևոլյուցիայի հետագա խորացման ու զարգացման, բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստականի վերաճելու բոլշևիկյան տակտիկայի դեմ:

Այսպիսով, ինչպես տեսնում ենք, քաղաքական առաջին և երկրորդ ուժերի միջև գոյություն ունեցող հակասությունը խոր և սկզբունքային չէր: Այն առաջացել էր, ինչպես Լենինն էր ասում, միայն մոմենտի կոնյունկտուրայից, իմպերիալիստական պատերազմում իրադարձությունների կտրուկ շրջադարձից: Այդ պատճառով էլ զարմանալի չէր, որ ժամանակավոր կառավարությունը վախենալով ռևոլյուցիայի հետագա խորացումից և սեփական ուժերով անզոր գտնվելով կասեցնել նրա հետագա զարգացումը, դեռ ցարական միապետությունը լրիվ չոչնչացրած, սկսեց գործարքի մեջ մտնել ռոմանովների դինաստիայի հետ, նրա մեջ տեսնելով իր ապավենը և ինքն էլ ապավինելով նրան:

Բուրժուազիայի հետ խոր հակասության մեջ չէին գտնվում նաև մենշևիկներն ու էսեռները: Սակայն սովետները, անկախ նրանց ղեկավարության մենշևիկյան և էսեռական լինելուց, ռևոլյուցիայի օրգաններն էին, որոնք իրենց դաշնակիցներ ու պաշտպաններ էին փնտրում պրոլետարիատի ու ամենաչքավոր բնակչության ամբողջ մասսայի մեջ: Այդ է պատճառը, որ սովետները օբյեկտիվորեն դարձան բանվոր դասակարգի և գյուղացիության դիկտատուրայի օրգանը և երկրում ստեղծվեց երկու դիկտատուրայի յուրահատուկ միահյուսում՝ երկիշխանություն: Վ. Ի. Լենինը վիթխարի նշանակություն էր տալիս սովետների դերին ռևոլյուցիայի հետագա զարգացման գործում: «Բանվորների դեպուտատների սովետը,— գրել է նա,— բանվորների կազմակերպությունը, բանվորական կառավարության սաղմն է,— բնակչության բոլոր ամենաչքավոր մասսաների, այսինքն բնակչության ինը տասներորդական մասի շահերի ներկայացուցիչը, բնակչություն, որ ձգտում է ձեռք բերել խաղաղություն, հաց, ազատություն» (Երկեր, հ. 23, էջ 407):

Բնակչության այդ ինը տասներորդական մասի շահերի հետևողական



պաշտպանը քաղաքական չորրորդ ուժն էր՝ բոլշևիկյան պարտիան, որը կանգնած էր ռևոլյուցիան մինչև վերջը հասցնելու, բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստականի վերաճելու տեսակետի վրա:

Բոլշևիկները փետրվարյան ռևոլյուցիան համարում էին բուրժուա-դեմոկրատական, համաժողովրդական ռևոլյուցիա և հենց այդ նպատակով էլ գտնում էին, որ չպետք է նրա վրա կանգ առնել, այլ պետք է ժողովրդական լայն մասսաներին բացատրել բուրժուական պոլիտիկանների խաբեբայությունը և ոչ մի վստահություն ու աջակցություն ցույց չտալ ժամանակավոր բուրժուական կառավարությանը: Լենինը ժամանակավոր կառավարությանն աջակցելը համարում էր բացահայտ դավաճանություն պրոլետարիատի գործին, որովհետև ընթացիկ մոմենտի յուրահատկությունը ռևոլյուցիայի առաջին էտապից երկրորդ էտապին անցնելն էր, որի շուրջ և ծավալվում էր կատաղի պայքարը քաղաքական բոլոր ուժերի միջև: Լենինը նշում էր, որ պրոլետարիատը, դաշնակցած Ռուսաստանի կիսապրոլետարական և, մասամբ մանրգյուղացիական բնակչության լայն, շատ տասնյակ միլիոնների հասնող մասսաների հետ, չպետք է կանգ առնի կես ճանապարհի վրա, այլ պետք է շարունակի ռևոլյուցիան, այն վերածի սոցիալիստականի: Նա վճռական կերպով գտնում էր, որ տվյալ պատմական մոմենտում պայքարի տակտիկական գլխավոր լոզունգն ու կոչը պետք է լինի՝ «բանվորնե՛ր, դուք պրոլետարական, ժողովրդական հերոսության հրաշքներ ցուցաբերեցիք ցարիզմի դեմ մղված քաղաքացիական պատերազմում, դուք պետք է պրոլետարական և համաժողովրդական կազմակերպության հրաշքներ ցուցաբերեք, որպեսզի նախապատրաստեք ձեր հաղթանակը ռևոլյուցիայի երկրորդ էտապում» (Երկեր, հատ. 23, էջ 411):

Այդպիսով բոլշևիկյան պարտիան միակ, մինչև վերջը ռևոլյուցիոն ուժն էր, որը ճիշտ էր գնահատում ռևոլյուցիայի բնույթն ու շարժիչ ուժերը, հետևողականորեն պաշտպանում էր ժողովրդական մասսաների շահերը և, ղեկավարվելով սոցիալիստական ռևոլյուցիայի լենինյան տեսությամբ, գլխավորում էր բանվոր դասակարգի և չքավորագույն գյուղացիության, բոլոր աշխատավորների և ճնշված ժողովուրդների պայքարը բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստականի վերաճելու, պրոլետարիատի դիկտատուրա հաստատելու համար:



1917 թվականի ապրիլի 13-ին 10 տարվա վտարանդիությունից հետո Պետրոգրադ վերադարձավ Լենինը: Հաջորդ օրը Կենտկոմի, Պետրոգրադի կոմիտեի անդամների և սովետների համառուսաստանյան խորհրդակցության բոլշևիկ պատգամավորների առաջ նա հանդես եկավ «Պրոլետարիատի խնդիրների մասին տվյալ ռևոլյուցիայում» զեկուցումով, որոնց թեզիսները ապրիլի 7-ին հրատարակվեցին «Правда»-ում: Ապրիլյան հռչակավոր թեզիսներում խոր վերլուծության էին ենթարկված Ռուսաստանում կատարված դասակարգային տեղաշարժերն ու ուժերի հարաբերակցությունը և տրված էր բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստական ռևոլյուցիայի վերաճելու գործում պարտիայի գործունեության տեսականորեն խոր հիմնավորված պլանը:

Ամեն մի ռևոլյուցիայի հիմնական հարցը իշխանության հարցն է: Փետրվարյան ռևոլյուցիայից հետո ստեղծված երկու իշխանությունները, հակա-

մարտ երկու դասակարգերի երկու դիկտատուրաները միաժամանակ երկարատև գոյություն ունենալ չէին կարող, վերջիվերջո նրանցից մեկը իր տեղը պետք է զիջեր մյուսին, որը կվճռեր դասակարգերի պայքարը։ Բոլոր իսկական ռևոլյուցիոներների խնդիրն էր՝ պայքարել ռևոլյուցիայի առաջին էտապից երկրորդ էտապին անցնելու համար, որի դեպքում միայն երկիշխանությունը կվերջանար հօգուտ պրոլետարիատի միիշխանության։ Անդրադառնալով այդ հիմնական և գլխավոր հարցին, Լենինը գրել է. «Ռուսաստանում ընթացիկ մոմենտի առանձնահատկությունը անցումն է ռևոլյուցիայի առաջին էտապից, որը պրոլետարիատի բավականաչափ գիտակից և կազմակերպված չլինելու պատճառով իշխանությունը տվեց բուրժուազիային, դեպի նրա երկրորդ էտապը, որն իշխանությունը պետք է տա պրոլետարիատի և գյուղացիության ամենաչքավոր խավերի ձեռքը» (Երկեր, հ. 24, էջ 4)։

Այստեղից բխում էր, որ սոցիալիստական ռևոլյուցիայի շարժիչ ուժերը կարող են լինել միայն նրա հաղթանակով շահագրգռված դասակարգերը՝ պրոլետարիատն ու չքավոր գյուղացիությունը։ Ինչ վերաբերում էր միջակ գյուղացիությանը, ապա պարտիան նրա նկատմամբ անցնում էր նոր լոզունգի՝ նրան չեզոքացնելու քաղաքականությանը, քանի որ միջակը իր սոցիալական երկակի դրության համապատասխան տատանվում էր չքավորության և կուլակության միջև։

Նախանշելով սոցիալիստական ռևոլյուցիայի կուրսը և բնութագրելով նրա շարժիչ ուժերը, Լենինը միաժամանակ հիմնավորեց իշխանության կազմակերպման քաղաքական ձևը։ Ընդհանրացնելով Փարիզի կոմունայի և 1905 թվականի ռուսական առաջին ռևոլյուցիայի, ինչպես նաև փետրվարյան ռևոլյուցիայի փորձը, նա եկավ այն եզրակացության, որ ռուսական պայմաններում պրոլետարիատի և ամենաչքավոր գյուղացիության քաղաքական իշխանության լավագույն ձևը սովետներն են։

Ելակետ ունենալով լենինյան այդ դիրքորոշումը, պարտիան տվեց՝ ամբողջ իշխանությունը սովետներին լոզունգը։ Բայց ռևոլյուցիայի զարգացման առաջին էտապում այդ լոզունգի իրականացումը չպետք է հասցներ և չէր կարող հասցնել պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման։

Առաջ քաշելով ամբողջ իշխանությունը սովետներին լոզունգը, պարտիան խնդիր չէր դնում անմիջապես զինված ապստամբության միջոցով տապալել ժամանակավոր կառավարությունը և ստեղծել պրոլետարիատի դիկտատուրա։ Առաջադրել այդպիսի պահանջ, նշանակում էր հակասության մեջ ընկնել, հանդես գալ հենց սովետների դեմ, քանի որ նրանք գտնվելով համաձայնողական պարտիաների ազդեցության տակ, դեռևս պաշտպանում էին ժամանակավոր կառավարությանը։ Բայց առաջ չքաշելով ժամանակավոր կառավարությունն անհապաղ տապալելու պահանջը, պարտիան չէր կարող անտարբեր մնալ նրա քաղաքականության ու վարքագծի նկատմամբ։ Պարտիայի խնդիրը,— ասում էր Լենինը,— պետք է լինի ոչ մի աջակցություն ցույց չտալ ժամանակավոր կառավարությանը, այլ ամեն կերպ ժողովրդական լայն մասսաների առաջ բացահայտել նրա իմպերիալիստական բնույթը, մերկացնել նրա արտաքին և ներքին ռեակցիոն քաղաքականությունը։

Ամբողջ իշխանությունը սովետներին, լոզունգը նշանակում էր ոչնչացնել պետական հին ապարատը և ստեղծել ժողովրդի շահերը պաշտպանող պետական նոր ապարատ։ Այդ նշանակում էր երկիշխանության վերացում հօգուտ սովետների միիշխանության, լիակատար իշխանության հանձնում էսեռներին ու մենշևիկներին, քանի որ նրանք էին մեծամասնություն կազմում սովետներում։ Ամբողջ իշխանությունը էսեռա-մենշևիկյան սովետներին անցնելու դեպքում երկրում պետք է հաստատվեր բանվորա-գյուղացիական ռևոլյուցիոն դեմոկրատական դիկտատուրա, որը համապատասխանում էր բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի խնդիրներին։ Բայց արդյոք այստեղ պարադոքս չկար, մանավանդ որ պարտիան քաջ հասկանում էր, որ ամբողջ իշխանությունը հանձնելով էսեռներին ու մենշևիկներին, դրանով չէն փոխվի այդ պարտիաների վարքագիծն ու քաղաքականությունը, նրանց սոցիալական էությունը։ Բանն այն էր, որ նախ բոլոր դեպքերում առանց զինված նոր ապստամբության բուրժուազիային քաղաքական իշխանությունից զրկելը, ինքնըստինքյան, մեծ առաջադիմական քայլ կլիներ, երկրորդ, ամբողջ իշխանությունը էսեռների ու մենշևիկների ձեռքն անցնելու պայմաններում, նրանց կողմից իրենց հին, ըստ էության, դավաճանական քաղաքականության շարունակումը ժողովրդական լայն մասսաների առաջ արագ կմերկացներ նրանց, որն անշուշտ կհեշտացներ էսեռա-մենշևիկյան ազդեցությունից մասսաների ազատագրման գործը։ Ժողովրդական լայն խավերը աստիճանաբար կհեռանային համաձայնողական պարտիաներից, նրանց դուրս կվռնդեին սովետներից և փոխարենը կընտրեին իսկական ռևոլյուցիոներներին։

Ինչ վերաբերում է սովետների քաղաքականության նկատմամբ ունենալիք վերաբերմունքին, ապա բոլշևիկները մնալով սովետներում, պետք է համբերատար, սիստեմատիկ, համառ և հետևողական կերպով քննադատեին սովետների տակտիկայի սխալները, պարզաբանեին մասսաներին համաձայնողական պարտիաների իսկական էությունը, միաժամանակ աշխատեին ընտրությունների միջոցով սովետներում կազմել մեծամասնություն։ Հենց որ բոլշևիկները սովետներում նվաճեին մեծամասնություն, նրանք արդեն կկարողանային փոխել կառավարության կազմը, այսինքն՝ ամբողջ իշխանությունը կվերցնեին իրենց ձեռքը։ Ամբողջ իշխանությունը բոլշևիկների ձեռքն անցնելով աստիճանաբար բանվորա-գյուղացիական ռևոլյուցիոն դիկտատուրան կվերածվեր պրոլետարիատի դիկտատուրայի։ Այդ էր բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան խաղաղ ճանապարհով սոցիալիստական ռևոլյուցիայի վերաճելու լենինյան հանճարեղ պլանի էությունը։

Բայց Լենինը, չբավականանալով այդ պլանի ձևական հիմնավորումով, թեզիսներում միաժամանակ շարադրեց գործնական այն միջոցառումները, տնտեսական ու քաղաքական այն լոզունգները, որոնց միջոցով նա կարող էր նվաճել մասսաներին իր կողմը և հասնել պրոլետարիատի դիկտատուրայի հաստատմանը։ Դրանք էին՝ երկրի բոլոր բանկերի անհապաղ միաձուլում մեկ համազգային բանկի մեջ և նրանց, ինչպես նաև հասարակական արտադրության և մթերքների բաշխման վերաբերմամբ սովետների վերահսկողության սահմանում, երկրի բոլոր հողերի ազգայնացում, որոնք պետք է անցնեն բատրակների և գյուղացիական դեպուտատների տեղական սովետների տնօրինությանը, վերջ տալ իմպերիալիստական թալանչիական պատերազմին, կնքել դեմոկրատական հաշտություն՝ առանց անեքսիաների և կոնտրիբուցիայի, ազգային հարցի արդարացի լուծում, վերապահելով բոլոր ազգերին ինքնորոշման իրավունք, մինչև պետական անջատում և այլն։

Լենինյան թեզիսները, որոնցում տրված էր բուրժուա-դեմոկրատական

ռևոլյուցիան խաղաղ ճանապարհով սոցիալիստական ռևոլյուցիայի վերաճելու համար մղվող պայքարում բոլշևիկյան պարտիայի գործունեության հանճարեղ պլանը, ավիններով դիմավորեցին բուրժուական և համաձայնողական պարտիաները։ Ինչ վերաբերում է բոլշևիկյան պարտիային, ապա նա ամբողջությամբ վերցրած հավանություն տվեց լենինյան թեզիսներին և ցուցաբերեց գաղափարական մեծ համախմբվածություն։ Միայն պարտիայի մի քանի օպորտունիստական տարրեր տատանումներ ցուցաբերեցին և հանդես եկան ռևոլյուցիայի հետագա զարգացման լենինյան պլանի դեմ։ Սակայն պարտիայի VII (ապրիլյան) կոնֆերանսը լիովին հավանություն տվեց ապրիլյան թեզիսներին և հաստատեց մեկ, առանձին վերցրած երկրում՝ Ռուսաստանում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի հնարավորության վերաբերյալ լենինյան ուսմունքին։



Ապրիլյան կոնֆերանսի որոշումները ուղեցույց դարձան ամբողջ պարտիայի, նրա բոլոր կազմակերպությունների համար՝ կենտրոնում և ծայրամասերում։ Այն բանից հետո, երբ մշակված էր բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան խաղաղ ճանապարհով սոցիալիստականի վերաճելու գիտական պլանը, պարտիայի գերագույն խնդիրը դարձավ այդ պլանի կենսագործման համար մասսաների նվաճումը, սոցիալիստական ռևոլյուցիայի շարժիչ ուժերի համախմբումը, հաղթանակի համար քաղաքական բանակի ստեղծումը։ Պարտիան իր քաղաքական պայքարի գլխավոր հարվածն ուղղեց բուրժուազիայի և համաձայնողական պարտիաների դեմ, ամեն քայլափոխում մերկացնելով նրանց հակաժողովրդական քաղաքականության էությունը։

Ժողովրդական լայն մասսաներին բոլշևիկների լոզունգների շուրջը համախմբելու, տատանվող տարրերի՝ սոցիալիստական ռևոլյուցիայի կողմն անցնելու գործում խոշոր դեր խաղացին ապրիլյան ցույցերը։ Այդ ցույցերը, որոնք գերազանցապես ուղղված էին ժամանակավոր կառավարության՝ պատերազմը շարունակելու քաղաքականության դեմ, բուրժուազիայի իշխանության ճգնաժամի սկիզբը դրեցին։ Ստեղծված խոր ճգնաժամից բուրժուազիան կարողացավ ժամանակավորապես դուրս գալ Պետրոգրադի սովետի մենշևիկյան գործկոմի հետ կնքելով համաձայնություն և ստեղծելով կոալիցիոն կառավարություն։ Բայց դա նրան չէր կարող փրկել, որովհետև ճգնաժամի պատճառները չվերացվեցին, երկրի քայքայման պրոցեսը շարունակվում էր ուժեղանալ։

Մայիսին ամբողջ երկրով մեկ ծավալվեցին բանվորական գործադուլները՝ անտեսական դրության բարելավման լոզունգներով։ Գյուղացիները բազմաթիվ վայրերում կալվածատերերից խլում էին հողերը։ Գյուղացիությանը բոլշևիկների կողմը նվաճելու գործում մեծ նշանակություն ունեցավ մայիսի 22-ին գյուղացիական դեպուտատների համառուսաստանյան առաջին համագումարում Լենինի ելույթը՝ ագրարային հարցի բոլշևիկյան ծրագրի վերաբերյալ։ Բոլշևիկները վիթխարի աշխատանք ծավալեցին նաև զինվորների շրջանում, կոչ անելով նրանց միահամուռ կերպով հանդես գալ թալանչիական պատերազմի շարունակման դեմ։

Ռևոլյուցիայի քաղաքական բանակի ստեղծման գործում խոշոր դեր խաղացին հունիսյան և հուլիսյան ցույցերը, որոնք ապացուցեցին բոլշևիկների ազդեցության վիթխարի աճը մասսաների վրա։ Բայց ամբողջությամբ վերցրած



դեռ ժողովրդի մեծամասնությունը գնում էր էսեռների ու մենշևիկների հետևից, որոնք համառորեն շարունակում էին պաշտպանել ժամանակավոր կառավարությանը և հրաժարվում էին ամբողջ իշխանությունը վերցնել սովետների ձեռքը։ Թևավորված համաձայնողական պարտիաների դավաճանական քաղաքականությունից, ժամանակավոր կառավարությունը արյան մեջ խեղդեց Պետրոգրադի բանվորների հուլիսյան ցույցը, որը և դարձավ հօգուտ բուրժուազիայի երկիշխանության վերացման սկիզբը երկրում։



Հուլիսյան օրերն արմատապես փոխեցին իրադրությունը և դասակարգային ուժերի հարաբերակցությունն ամբողջ երկրում։ Էսեռա-մենշևիկյան պարտիաները լիովին գլորվելով հակառևոլյուցիայի լագերը, դարձան հակառևոլյուցիոն բուրժուազիայի գործակալները։ Ռևոլյուցիայի խաղաղ զարգացման լենինյան պլանը անհնար դարձավ իրականացնել։ Սովետները դարձան ժամանակավոր կառավարության կցորդը, հաստատվեց բուրժուազիայի դիկտատուրան։ Ենթարկվելով կատաղի հալածանքների, բոլշևիկյան պարտիան իր առաջնորդներին թաքցրեց ընդհատակում։ Հուլիսյան դեպքերից հետո վերջացավ ռևոլյուցիայի խաղաղ զարգացման շրջանը։ Փոխվեցին պարտիաների ու դասակարգերի վարքագիծն ու տակտիկան։ Նոր իրադրության մեջ պարտիան ևս պետք է անհապաղ փոխեր իր տակտիկան, իր լոզունգները, իր վերաբերմունքը դեպի դասակարգերն ու պարտիաները։

Նոր իրադրության մեջ նոր տակտիկայի հարցերի մշակումով զբաղվեց պարտիայի VI համագումարը, որը գումարվեց կիսալեգալ պայմաններում։ Համագումարը որոշեց ժամանակավորապես հանել «Ամբողջ իշխանությունը սովետներին» լոզունգը և նախապատրաստվել զինված ապստամբության միջոցով իշխանությունը գրավելուն, որը հնարավոր էր միայն ռևոլյուցիոն նոր վերելքի պայմաններում։

Անցումը ռևոլյուցիայի խաղաղ զարգացման կուրսից զինված ապստամբության կուրսին՝ չէր վերացնում, սակայն, այն միջոցառումների կենսագործման անհրաժեշտությունը, որոնց միջոցով հնարավոր էր մասսաներին նվաճել ռևոլյուցիայի կողմը։

Զինված VI համագումարի որոշումներով, դժվարին պայմաններում, պարտիան վիթխարի ագիտացիոն-պրոպագանդիստական և կազմակերպչական աշխատանք ծավալեց աշխատավորական լայն խավերի ու բանակի մեջ՝ իշխանությունը զենքի միջոցով գրավելու համար։ Պարտիայի ամբողջ ջանքերը շուտով տվեցին իրենց դրական արդյունքները։ Հասնելով միիշխանության, բուրժուազիան հարձակում սկսեց տնտեսական բնագավառում՝ փակվեցին շատ գործարաններ, որն առաջ բերեց տասնյակ հազարավոր բանվորների գործազրկություն, չտեսնված չափերի հասավ սպեկուլյացիան։ Բուրժուազիան հույս ուներ «սովի ոսկրոտ ձեռքով» խեղդել ռևոլյուցիան։ Բայց դա միայն ուժեղացրեց ժողովրդական լայն մասսաների դժգոհությունը, ծայրահեղորեն սրելով դասակարգային պայքարը կապիտալի դեմ, արագացնելով մասսաների շրջադարձը դեպի բոլշևիկները։

Այդ շրջադարձը ավելի շեշտակի դարձավ, երբ բուրժուազիան փորձեց հաստատել ռազմական դիկտատուրա, օգոստոսին կազմակերպելով գեներալ

Կոռնիլովի դավադրությունը։ Կոռնիլովյան դավադրության հաղթանակը մահացու հարված կլիներ ռևոլյուցիային։ Այդ պատճառով էլ պարտիան իր բոլոր ուժերը մոբիլիզացրեց միապետական բուրժուազիայի ռազմական դիկտատուրայի ստեղծման փորձը ձախողելու համար։ Բոլշևիկների կոչով մայրաքաղաքի բանվորները կազմելով կարմիր գվարդիայի ջոկատներ, զենքի ուժով փակեցին Կոռնիլովի ճանապարհը։ Ձախողվեց ռևոլյուցիան ճնշելու այդ փորձը։

Կոռնիլովի դեմ ակտիվ կերպով հանդես եկան շատ սովետներ։ Հաշվի առնելով այդ հանգամանքը, ինչպես նաև երկրում ծավալվող ռևոլյուցիոն վերելքը, պարտիան վերջին փորձը կատարեց՝ օգտագործելու իշխանությունը խաղաղ ճանապարհով պրոլետարիատի ձեռքն անցնելու հնարավորությունը։ Պարտիան առաջարկեց էսեռներին ու մենշևիկներին իշխանությունը վերցնել սովետների ձեռքը, բայց ստացավ մերժում։ Սակայն դա չէր կարող փոխել երևույթների զարգացման ընթացքը։ Կոռնիլովյան դավադրության ճնշումը կրկին նոր իրադարձություն և ուժերի նոր հարաբերակցություն ստեղծեց երկրում։ Աշխատավորներն սկսեցին սովետներից ետ կանչել էսեռա-մենշևիկյան պատգամավորներին։ Սկսվեց սովետների բոլշևիկացման պրոցես։ Օգոստոսի 31-ին Պետրոգրադի սովետը որոշում ընդունեց ամբողջ իշխանությունը սովետներին անցնելու մասին։ Սեպտեմբերի 5-ին բոլշևիկյան բանաձև ընդունեց Մոսկվայի սովետը։ Երկու մայրաքաղաքների սովետների օրինակին շուտով հետևեցին երկրի բոլոր ծայրերում ավելի քան 250 սովետներ։ Այդ պայմաններում պարտիան կրկին առաջ քաշեց «Ամբողջ իշխանությունը սովետներին» լոզունգը, որը, սակայն այս անգամ նշանակում էր զինված ապստամբության միջոցով բուրժուական կառավարության տապալում և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատում։



Այսպիսով այն մեծ պայքարը, որ ծավալեցին բոլշևիկները յոթ ամսվա ընթացքում, ապարդյուն չանցավ։ Սեպտեմբերին երկրում արդեն առկա էր այն ամենը, ինչ Լենինը ռևոլյուցիոն իրադրություն էր համարում։ Շահագործող դասակարգերը հին ձևով այլևս չէին կարողանում կառավարել, իսկ ռևոլյուցիայի շարժիչ ուժերը կազմող դասակարգերը հին ձևով չէին կարողանում կառավարվել։ Ռևոլյուցիոն շարժումը բանվոր դասակարգի, գյուղացիության և զորքի մեջ ընդհուպ մոտեցել էր իշխանության գրավման պրոբլեմին։

Այս նոր իրադրության մեջ պարզ դարձավ, որ երկրին սպառնացող աղետից դուրս գալու միակ միջոցը հաղթական սոցիալիստական ռևոլյուցիայի միջոցով իշխանության գրավումն է բանվոր դասակարգի կողմից։ Սեպտեմբերի 12—14-ին Լենինը գրեց «Բոլշևիկները պետք է վերցնեն իշխանությունը» ու «Մարքսիզմը և ապստամբությունը» հռչակավոր նամակները, որոնցում ցույց տվեց, որ իշխանության գրավման համար ստեղծվել են օբյեկտիվ և սուբյեկտիվ բոլոր նախադրյալները, հետևաբար կենտկոմի, Պետրոգրադի ու Մոսկվայի կոմիտեների, ինչպես նաև պարտիական բոլոր կազմակերպությունների խնդիրը պետք է լինի կազմակերպել և գլխավորել զինված ապստամբությունը ժամանակավոր կառավարության դեմ։ Սեպտեմբերի 15-ին Կենտկոմը քննեց այդ նամակները և բոլշևիկյան բոլոր կոմիտեներին ցուցում տվեց կազմակերպել կարմիր գվարդիական ջոկատներ և նախապատրաստվել զինված ապստամբության։



Հոկտեմբերի 7-ին Կենտկոմի որոշմամբ գաղտնի կերպով Պետրոգրադ ժամանեց Լենինը։ Հոկտեմբերի 10-ին Կենտկոմը քննարկեց Լենինի զեկուցումն ընթացիկ մոմենտի մասին և որոշում ընդունեց զինված ապստամբության նախապատրաստման մասին, որի աշխատանքները գլխավորելու համար ընտրեց քաղաքական բյուրո՝ Լենինի գլխավորությամբ։ Մայրաքաղաքում ապստամբությունը իրականացնելու օրգան ճանաչվեց Պետրոգրադի սովետին կից ստեղծված ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն։ Ապստամբության վերաբերյալ Կենտկոմի որոշմանը դեմ քվեարկեցին Կամենևն ու Զինովևը, իսկ Տրոցկին առաջարկեց ապստամբությունը հետաձգել մինչև սովետների 2-րդ համագումարի հրավիրումը։ Դրանք ապստամբությունը վիժեցնելու դավաճանական փորձեր էին։ Հոկտեմբերի 16-ին կայացավ կենտրոնական կոմիտեի ընդլայնված նիստը, որը կրկին հաստատեց ապստամբության վերաբերյալ Լենինի բանաձևը և ընտրեց ապստամբության ղեկավար օրգաններ, որը և սկսեց արագորեն նախապատրաստել զինված ապստամբությունը։ Բայց այդ օրերին Կամենևը և Զինովևը կատարեցին հրեշավոր դավաճանություն։ Նրանք կիսամենշևիկյան «Նովայա ժիզն» թերթում թշնամուն մատնեցին զինված ապստամբության մասին պարտիայի որոշումը, որը հնարավորություն տվեց ժամանակավոր կառավարությանը շտապ միջոցներ ձեռնարկել ապստամբությունը ճնշելու համար։ Ռևոլյուցիան կանխելն այլևս անհնար էր։ Պարտիան Լենինի գլխավորությամբ ամեն ինչ արեց հաջողությամբ սկսելու և ավարտելու զինված ապստամբությունը, որը հասունանում էր օր առ օր, ժամ առ ժամ։ Հոկտեմբերի 24-ին Կենտկոմի անդամներին ուղղված նամակում Լենինը գրեց. «Ես այս տողերը գրում եմ 24-ի երեկոյան, դրությունը ծայր աստիճան կրիտիկական է։ Պարզից էլ պարզ է, որ այժմ, արդեն հիրավի, ապստամբությունն ուշացնելը մահվան է հավասար

...ո՛չ մի դեպքում իշխանությունը չթողնել Կերենսկու և ընկերության ձեռքին մինչև 25-ը, ո՛չ մի կերպ. գործը վճռել անպայման այսօր՝ երեկոյան կամ գիշերը։

Պատմությունը չի ների հապաղումը ռևոլյուցիոներներին, որոնք կարող էին հաղթել այսօր (և անշուշտ կհաղթեն այսօր), ռիսկ անելով շատ բան կորցնելու վաղը, ռիսկ անելով կորցնելու ամեն ինչ» (Երկեր, հատ. 26, էջ 278, 279)։

Կատարելով Լենինի ցուցումը՝ Հոկտեմբերի 24-ի երեկոյան սկսվեց զինված ապստամբությունը։ Ռևոլյուցիոն զորամասերը գրավեցին նախատեսված օբյեկտները և շրջապատեցին Ձմեռային պալատը, որը ապստամբները գրավեցին 25-ի լույս 26-ի գիշերը։ Ընկավ ժամանակավոր կառավարությունը, հաղթանակեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան։ Նույն օրը գումարված սովետների երկրորդ համագումարը հռչակեց իշխանությունը սովետներին անցնելու մասին իր պատմական որոշումը։ Դա նոր դարագլխի, սոցիալիզմի դարագլխի սկիզբն էր մարդկության պատմության մեջ։ Ռուսաստանի պրոլետարիատի երկարատև հերոսական պայքարը հաղթանակով ավարտվեց։ Այդ պայքարը գլխավորեց բոլշևիկյան պարտիան, նա հանդիսացավ սոցիալիստական ռևոլյուցիայի ոգեշնչողն ու կազմակերպիչը։

# ԱՊՐԱՆՔԱՅԻՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆ. ԱՊՐԱՆՔ ԵՎ ՓՈՂ

Վ. ԳԱԲՈՒՉՅԱՆ

Նյութական բարիքների արտադրությունը մարդկային հասարակության գոյության առաջին պայմանն է՝ պատմական բոլոր ժամանակաշրջաններում։

Նյութական բարիքների արտադրության և այդ բարիքների՝ սպառման անցնելու ձևը բոլոր ժամանակաշրջաններում միանման չի եղել։ Մարդկությանը հայտնի են արտադրության երկու տիպեր՝ բնամթերային և ապրանքային։

**Բնամթերային** է այն տնտեսությունը, որում արտադրված արդյունքները չեն փոխանակվում, սպառվում են նույն տնտեսության անդամների կողմից։ Հակառակ դրան՝ **ապրանքային** տնտեսությունում արտադրությունը իրականացվում է ոչ թե նույն տնտեսության անդամների պահանջները բավարարելու, այլ փոխանակության համար։ Այդպիսի տնտեսությունը կոչվում է ապրանքային, որովհետև նրանում արտադրված արդյունքը փոխանակության մեջ մտնելու հետևանքով դառնում է ապրանք։ Մինչդեռ բնամթերային տնտեսությունում արտադրված արդյունքը սոսկ իր է, ապրանք չէ հենց այն պատճառով, որ չի փոխանակվում։ Այսպիսով, յուրաքանչյուր ապրանք իր է, սակայն յուրաքանչյուր իր ապրանք չէ։

Իսկ ինչպե՞ս է, որ բնամթերայինը իր տեղը զիջեց ապրանքային արտադրությանը, որո՞նք են ապրանքային արտադրության հանդես գալու նախադրյալները։

Դրանք երկուսն են. նախ՝ աշխատանքի հասարակական բաժանման որոշակի աստիճանը և, երկրորդ՝ արտադրողների, որպես տարբեր սեփականատերերի անջատումը։ Այդ երկու նախադրյալների զուգորդումը տեղի ունեցավ նախնադարյան համայնական հասարակարգի քայքայման և ստրկատիրական հասարակարգի ծագման շրջանում, այն բանից հետո, երբ կատարվել էր աշխատանքի հասարակական երկրորդ խոշոր բաժանումը։

Արհեստի բաժանումը երկրագործությունից, ինչպես աշխատանքի ամեն մի հասարակական բաժանում, պայմանավորված էր արտադրողական ուժերի, առաջին հերթին՝ աշխատանքի գործիքների զարգացմամբ։ Արհեստի և երկրագործական արտադրության գործիքների զարգացման շնորհիվ տնտեսապես ավելի ձեռնտու էր, իսկ հասարակական կյանքի կազմակերպման տեսակետից ավելի հարմար, որպեսզի մարդիկ զբաղվեին կա՛մ երկրագործությամբ, կա՛մ արհեստով, փոխանակ այդ երկուսը զուգորդելու։ Դրանով այդ երկու ճյուղերի արդյունքները փոխանակության առարկա դարձան, վերածվեցին ապրանքների։

Ճիշտ է, մինչև արհեստի անջատումը նույնպես տեղի էին ունենում փոխանակության գործարքներ, հատկապես աշխատանքի առաջին խոշոր հասարակական բաժանումից հետո։ Սակայն հենց աշխատանքի հասարակական երկրորդ խոշոր բաժանումը հնարավոր դարձրեց հանուն փոխանակության կատարվող արտադրությունը՝ ապրանքային արտադրությունը։

Որպեսզի այդ հնարավորությունն իրականություն դառնար, անհրաժեշտ էր նաև արտադրության միջոցների նկատմամբ տարբեր սեփականատերերի առկայությունը։ Մինչև նախնադարյան համայնական հասարակարգի քայքայման ժամանակաշրջանը ապրանքային արտադրություն չկար ո՛չ միայն այն պատճառով, որ աշխատանքի հասարակական բաժանումն անհրաժեշտ չափով չէր խորացել, այլև նրա համար, որ արտադրության միջոցների նկատմամբ գոյություն ուներ մեկ միասնական՝ համայնական սեփականություն և արդյունքները բաշխվում էին առանց փոխանակության։

Մի անգամ հանդես գալուց հետո, ապրանքային արտադրությունը զարգանում է խորությամբ ու լայնությամբ՝ անցնելով երկու շրջան՝ պարզ ապրանքային արտադրության և կապիտալիստական ապրանքային արտադրության։

**Պարզ ապրանքային արտադրությունը և կապիտալիստական ապրանքային արտադրությունն** ունեն ընդհանուր և տարբերիչ գծեր։ Նրանց ընդհանրությունն այն է, որ երկուսն էլ հենվում են արտադրության միջոցների մասնավոր սեփականության վրա։ Կապիտալիստի ձեռնարկությունը պատկանում է իրեն, ճիշտ այնպես, ինչպես պարզ ապրանքային արտադրողի տնտեսությունը պատկանում է այն վարող արհեստավորին կամ գյուղացուն։ Սակայն, ի տարբերություն պարզ ապրանքային արտադրության, կապիտալիստական արտադրության մեջ աշխատում է ոչ թե ինքը՝ կապիտալիստը, այլ վարձու բանվորը։ Հետևաբար, պարզ ապրանքային արտադրության մեջ չկա կապիտալիստականին հատուկ շահագործումը։

Կապիտալիստական արտադրությունը ապրանքային արտադրության ամենազարգացած և համապարփակ ձևն է, որտեղ բանվորի աշխատուժը նույնպես դառնում է ապրանք։ Սա, իհարկե, չի նշանակում, թե կապիտալիստական ապրանքային արտադրության հանդես գալով բացառվում է պարզ ապրանքային արտադրությունը։ Կապիտալիզմի ժամանակ, ապրանքային ավելի զարգացած հարաբերությունների ֆոնի վրա, պահպանվում է պարզ ապրանքային արտադրությունը։ Ստրկատիրական և ֆեոդալական հասարակարգերում տիրապետող բնամթերային հարաբերությունների հետ նույնպես գոյակցում էր պարզ ապրանքային արտադրությունը։

Արտադրության կապիտալիստական եղանակի ուսումնասիրությունը Մարքսն սկսել է ամենատարրական ձևի, ամենապարզ, բայց միևնույն ժամանակ ամենամասսայական բջջի՝ ապրանքի վերլուծությունից, քանի որ կապիտալիստական հասարակության հարստությունը ներկայանում է որպես ապրանքների մի հսկայական հավաքածու։

**Ապրանքը** փոխանակության համար արտադրված իր է։ Որպեսզի այն կարողանա փոխանակվել, մարդկանց համար պիտանի և ընդունելի լինել,

պետք է բավարարի մարդկային որևէ պահանջմունք։ Այլ կերպ ասած՝ ապրանքի մի հատկությունը՝ նրա որևէ օգտակարություն ունենալն է, մարդու այս կամ այն պահանջմունքը բավարարելու ունակությունը։ Ապրանքի այդ հատկությունը նրա **սպառողական արժեքն** է։ Ըստ որում այստեղ կարևոր չէ, թե ի՞նչ կարգի, ի՞նչ բնույթի պահանջմունք է բավարարում ապրանքը՝ սնվելու թե՞ հագնվելու, անձնական թե՞ արտադրողական։

Սակայն, հասարակական սպառողական արժեք ունենալը դեռևս բավական չէ, որպեսզի իրն ապրանք դառնա։ Ապրանք չեն դառնում ո՛չ միայն իր՝ արտադրողի կողմից օգտագործվող, այլև առանց փոխանակության ուրիշ սպառողի անցնող իրերը, ինչպես, օրինակ, միջնադարում հարկերի ու ռենտայի ձևով գյուղացիների և արհեստավորների կողմից ֆեոդալներին բաժին հանվող բարիքները։

Այսպիսով, սպառողական արժեք կրող աշխատանքի արդյունքը ապրանքի է վերածվում միայն այն ժամանակ, երբ սպառողին անցնում է փոխանակության միջոցով։ Նշանակում է՝ բացի սպառողական արժեքից, ապրանքը պետք է օժտված լինի նաև փոխանակվելու ունակությամբ։ Այլ կերպ ասած՝ ապրանքի երկրորդ հատկությունը նրա **փոխանակային արժեք** լինելն է։

Փոխանակային արժեքը միմյանց հետ փոխանակվող ապրանքների քանակական հարաբերությունն է. օրինակ՝ մեկ զույգ կոշիկը փոխանակվում է 5 մետր գործվածքով։ Սակայն ինչո՞ւ մեկ զույգ կոշիկը փոխանակվում է հենց 5 մետր և ոչ թե, ասենք, 0,5 կամ՝ 30 մետր գործվածքով։ Ի՞նչն է ընկած 1 զույգ կոշիկ=5 մետր գործվածք հավասարության հիմքում։

Տարբեր ապրանքատեսակների տարբեր քանակները միմյանց հավասարեցնելու, այսինքն՝ փոխանակային հարաբերությունների ստեղծման հիմքում չեն կարող ընկած լինել նրանց սպառողական արժեքները։ Սպառողական արժեքը ոչ թե ապրանքատեսակները մեկ հայտարարի բերող, այլ նրանց միմյանցից տարբերող հատկանիշն է։

Այն ընդհանրությունը, որ կա բոլոր տեսակի ապրանքների միջև, նրանց՝ մարդկային աշխատանքի արդյունք լինելն է։ Ամեն մի ապրանք արտադրվում է աշխատանքի այս կամ այն քանակով։ Հետևաբար ապրանքները փոխանակվում են չափակցելով նրանց արտադրման համար ծախսված աշխատաժամանակները։ Մեկ զույգ կոշիկը փոխանակվում է 5 մետր գործվածքով, կամ մեկ զույգ կոշիկն արժե այնքան, որքան 5 մետր գործվածքը, որովհետև 1 զույգ կոշիկի արտադրման համար անհրաժեշտ է այնքան աշխատաժամանակ, որքան 5 մետր գործվածքի արտադրման համար։ Յուրաքանչյուր ապրանք ունի **արժեք**, որը մարդկային աշխատանքի մարմնավորումն է։

Այսպիսով, ապրանքը սպառողական արժեքի և արժեքի միասնությունն է։ Ապրանքի սպառողական արժեքը ֆիզիկապես տեսանելի ու շոշափելի է։ Եթե վերցնենք որևէ առանձին ապրանք (օրինակ՝ կոշիկը) ուրիշ ապրանքներից մեկուսացած վիճակում, ոչ մի բան չի խանգարի սահմանելու նրա սպառողական արժեքը։ Նույնը չի կարելի ասել արժեքի վերաբերյալ։ Վերջինս թաքնված է ապրանքի մեջ։ Կոշիկի արժեքը կդրսևորվի միայն այն դեպքում, երբ փոխանակային հարաբերության մեջ դնենք մեկ ուրիշ ապրանքի հետ։ Մեր օրինակում՝ մեկ զույգ կոշիկ=5 մետր գործվածք։ Այստեղից կարելի է եզրակացնել, որ արժեքը բովանդակությունն է, էությունը, իսկ փոխանակային արժեքը՝ էության դրսևորման ձևն է, երևույթը։



Ապրանքի՝ զույգ հատկանիշներով օժտված լինելը պայմանավորված է ապրանքաստեղծ **աշխատանքի երկու՝ կոնկրետ և աբստրակտ բնույթ** ունենալով։ Ապրանքարտադրողի աշխատանքը կոնկրետ է, որովհետև նա որոշակի նպատակ ունի, որոշակի գործիքներ է օգտագործում և որոշակի էներգիա է ծախսում։ Կոնկրետ աշխատանքն ստեղծում է ապրանքի սպառողական արժեքը։ Կոշկակարի գործիքները, նրա ծախսած էներգիան ու նպատակը այլ են, քան ատաղձագործինը և հենց այդ տարբերությունների հետևանքով է, որ կոշկակարի և ատաղձագործի աշխատանքների արդյունքով ստացվում են մարդկային տարբեր պահանջմունքներ բավարարող ապրանքներ։

Եթե վերանանք աշխատանքի տեսակները միմյանցից տարբերող կոնկրետությունից, ապրանքաստեղծ բոլոր աշխատանքները կնմանվեն իրար։ Կնմանվեն նրանով, որ բոլորը հանդես կգան որպես աշխատանք առհասարակ, որպես մարդկային էներգիայի ծախսում։ Հենց սա էլ աբստրակտ աշխատանքն է, որն ստեղծում է ապրանքի արժեքը։ Ի հակադրություն կոնկրետ բնույթի, որն աշխատանքի տեսակները միմյանցից տարբերող կողմն է, իրենց աբստրակտ բնույթով բոլոր ապրանքարտադրողների աշխատանքները նույնանում են, միասեռ ու համադրելի են դառնում։ Հենց այդ ընդհանրությունն է, որ հնարավորություն է տալիս քանակական հարաբերություններ սահմանելու փոխանակվող ապրանքատեսակների միջև։

Կոնկրետ և աբստրակտ աշխատանքի, ապրանքի սպառողական արժեքի և արժեքի մեջ իր արտահայտությունն է գտնում ապրանքարտադրողների **մասնավոր և հասարակական աշխատանքի** հակասությունը։ Արտադրության միջոցների նկատմամբ մասնավոր սեփականության տիրապետման պայմաններում յուրաքանչյուր ապրանքարտադրողի աշխատանք մասնավոր է, արտադրողների՝ միմյանցից մեկուսացած գործունեությունն է։ Միաժամանակ այն հասարակական է, քանի որ յուրաքանչյուր ապրանքարտադրողի աշխատանք հասարակության մեջ կատարված ամբողջ աշխատանքի մի մասնիկն է։ Սակայն աշխատանքի հասարակական բնույթը քողարկված է։ Այն հանդես է գալիս միայն շուկայում, երբ տարբեր ապրանքարտադրողների մասնավոր աշխատանքների արդյունքները հանդիպադրվում և փոխանակության են ենթարկվում, որը, ինչպես գիտենք, կատարվում է արժեքների հավասարեցման հիման վրա։ Այսպիսով, աշխատանքի հասարակական բնույթը դրսևորվում է ապրանքի արժեքի և այն ստեղծող աբստրակտ աշխատանքի միջոցով։

Աշխատանքի հասարակական բնույթի ոչ-անմիջականորեն դրսևորվելու հետևանքով ապրանքարտադրողը չգիտե, թե ի՞նչ բախտ է վիճակվելու իր մասնավոր, կոնկրետ աշխատանքով ստեղծվող սպառողական արժեքին։ Հասարակական ճանաչում կգտնի՞ արդյոք իր մասնավոր աշխատանքը։ Այդ հարցին պատասխան է տալիս շուկան։

Ինչպես վերևում ցույց տրվեց, արժեքն ապրանքի մեջ առարկայացած աշխատանքն է։ Կարո՞ղ ենք արդյոք այստեղից եզրակացնել, թե նույն ապրանքատեսակների շարքում ավելի բարձր արժեք ունի այն, որն ավելի շատ աշխատանք է կլանել։ Իհարկե՝ ոչ։ Եթե այդպես լիներ, ապա ավելի ծույլ, ավելի հետամնաց գործիքներով աշխատողի արտադրած ապրանքը ավելի մեծ արժեք կունենար։

Պարզ է, որ մեկ ապրանքատեսակի արտադրությամբ զբաղվում են շատերը, որոնցից ամեն մեկը արդյունքի միավորի վրա տարբեր չափի աշխա-

տաժամանակ է ծախսում։ Նրանցից յուրաքանչյուրի ծախսած ժամանակը անհատական աշխատաժամանակ է։ Սակայն, ապրանքի արժեքը որոշվում է ոչ թե այդ, այլ հանրորեն անհրաժեշտ աշխատաժամանակով, որը հասարակականորեն նորմալ պայմաններում պահանջվում է տվյալ ապրանքի արտադրման համար։ Հասարակականորեն անհրաժեշտ աշխատաժամանակով արտադրվում է տվյալ ապրանքատեսակի մեծ մասը։ Այդ աշխատաժամանակի տևողությունը որոշվում է տեխնիկայի, արտադրողի հմտության և նրա աշխատանքի ինտենսիվության միջին մակարդակով։



Փոխանակության պրոցեսը զարգացել ու կատարելագործվել է ապրանքային արտադրության զարգացման զուգահեռ։ Այդ ընթացքում փոխանակությունն անցել է չորս ստադիա, որոնցից յուրաքանչյուրին համապատասխանում է որոշակի արժեձև, այսինքն՝ փոխանակության պրոցեսում ապրանքների՝ միմյանց հարաբերման որոշակի եղանակ։ Այդ արժեձևերն են՝

արժեքի պարզ, առանձին կամ պատահական ձև,

արժեքի լրիվ կամ ծավալուն ձև,

արժեքի ընդհանրական ձև,

արժեքի փողային ձև։

Փոխանակության պրոցեսի զարգացումը, արժեձևերի հերթափոխումը միաժամանակ փողի ծագման պրոցեսն է։ Արժեձևերի հերթափոխման պատմության ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ փողը ապրանքային արտադրության և փոխանակության զարգացման արգասիք է։

**Արժեքի պարզ, առանձին կամ պատահական ձևն** արտահայտում է ապրանքային արտադրության ու փոխանակության ամենասաորին աստիճանը։ Արդյունքները փոխանակվում էին պատահականորեն, նրանք չէին արտադրվում այդ նպատակով։ Ենթադրենք հանդիպում էին երկու տոհմեր, որոնցից մեկն ուներ ավելցուկ աղեղ, իսկ մյուսը՝ կացին։ Դրանք կարող էին փոխանակվել, եթե յուրաքանչյուր տոհմ մյուս առարկայի պահանջն ունենար։

Ենթադրենք երկու աղեղ փոխանակվում է մեկ կացնի հետ՝

2 աղեղ=1 կացին։

Երկու արդյունքներն էլ ապրանք են, սակայն փոխանակության ընթացքում դրանցից յուրաքանչյուրը տարբեր դեր է կատարում և տնտեսական տարբեր ձև ընդունում։ Ապրանքներից մեկը՝ աղեղը, կատարում է ակտիվ դեր և գտնվում է հարաբերական ձևում, իսկ մյուսը՝ կացինը, կատարում է պասսիվ դեր և գտնվում է համարժեքային ձևում։ Առաջինն իր արժեքի արտահայտությունն է որոնում, իսկ երկրորդն սպասում է ծառայելու որպես հայելի՝ առաջին ապրանքի արժեքն արտահայտելու համար։

Պետք է ընդգծել, որ համարժեքի դերը բխում է ապրանքի ո՛չ թե բնական, այլ հասարակական հատկություններից։ Կացինը համարժեք է դարձել ոչ թե իր իրային հատկությունների, այլ հասարակական այն հարաբերությունների շնորհիվ, որոնցում հանդիպում են աղեղի և կացնի տերերը։

Պարզ կամ պատահական արժեձևը անբավարար էր փոխանակության ավելի զարգացած աստիճանի համար, քանի որ անհրաժեշտություն էր առաջացել, որպեսզի մի ապրանք կարողանար իր արժեքն արտահայտել ոչ թե



մեկ, այլ մի ամբողջ շարք ապրանքների սպառողական արժեքների միջոցով։ Ծվ, ահա, հանդես եկավ **արժեքի լրիվ կամ ծավալուն ձևը**՝ փոխանակության հետևյալ տեսքով.

| | |
|---|---|
| 1 ոչխար | 6 աղեղ<br>3 կացին<br>2 պարկ ցորեն<br>0,5 ունցիա ոսկի<br>10 մետր գործվածք |

Տեսնում ենք, որ ոչխարը կարող է փոխանակվել շատ ապրանքների հետ։ Բնական է, որ համարժեքի դեր կատարող ապրանքատեսակների թիվը չի սահմանափակվում այս օրինակում բերվածներով։

Պարզ կամ պատահական փոխանակման ժամանակ արժեքն արտահայտման մեկ ձև ուներ։ Ծավալուն փոխանակության ժամանակ հանդես են գալիս բազմաթիվ համարժեքներ, և արժեքը շատ արտահայտություններ է ձեռք բերում։

Ապրանքային արտադրության հետագա զարգացման հետ մեկտեղ հետզհետե ավելի մեծ չափով են զգացվում լրիվ կամ ծավալուն արժեձևի թերությունները։ Հաճախ հնարավոր չի լինում ձեռք բերել այս կամ այն ապրանքը։ Եթե ոչխարի տերը ցանկանում է ստանալ ցորեն, իսկ ցորենի տերը ցանկանում է ոչ թե ոչխար, այլ երկաթ, ապա ոչխարը նախ միջանկյալ պետք է փոխանակվի երկաթով, ապա միայն երկաթի դիմաց ոչխարի տերը կստանա իր ցանկացած ապրանքը՝ ցորենը։ Եթե ենթադրենք, որ երկաթի տերը, իր հերթին, նույնպես ոչխար չի ցանկանում, այլ պահանջում է, ասենք, աղեղ, ապա ոչխարի տերը պետք է մի լրացուցիչ փոխանակություն ևս կատարի, նախօրոք ոչխարը փոխանակի աղեղով։ Իհարկե, բացառված չէ, որ աղեղի տերը նույնպես չցանկանա ոչխար, այլ պահանջի, ասենք՝ գործվածք։ Անհրաժեշտ է դառնում առանձնացնել մի ապրանք, որը համարժեքի դերում փոխանակելի լինի մյուս բոլոր ապրանքների հետ։ Հանդես է գալիս **արժեքի ընդհանրական ձևը**՝ փոխանակության հետևյալ տեսքով.

| | |
|---|---|
| 6 աղեղ<br>3 կացին<br>2 պարկ ցորեն<br>0,5 ունցիա ոսկի<br>10 մետր գործվածք | 1 ոչխար |

Այժմ բոլոր ապրանքներն իրենց արժեքն արտահայտում են մեկ ապրանքի՝ ոչխարի միջոցով, որը դարձել է համարժեք մյուս բոլոր ապրանքների համար։ Այսպիսով, ընդհանրական ձևում համարժեքը ընդհանրական է, համընդհանուր է հարաբերական ձևում գտնվող բոլոր ապրանքների համար։

Առաջին անգամ ընդհանրական ձևն է, որ բոլոր ապրանքները որպես արժեքներ իրոք հարաբերության մեջ է դնում միմյանց հետ։

Թեև արժեքի նախորդ ձևերի համեմատությամբ ընդհանրականը համապատասխանում է ապրանքային արտադրության և փոխանակության զարգացման ավելի բարձր աստիճանի, բայց դեռևս ընդհանրական ձևում համարժեքի հասարակական ֆունկցիան մշտական չէ և սահմանափակված է տեղական

շրջանակներով։ Փոխանակային հարաբերությունների հետագա զարգացումը պահանջում էր մշտական ընդհանրական համարժեք՝ փոխանակության համեմատաբար կայուն արժեքների արտահայտման հնարավորություն ունենալու համար։

Այդ արտոնյալ տեղը պատմականորեն զբաղեցրեց ոսկին։ Բոլոր ապրանքների արժեքներն սկսեցին չափել ոսկու միջոցով և փոխանակությունը ստացավ հետևյալ տեսքը.

| | | |
|---|---|---|
| 1 ոչխար | } | 0,5 ունցիա ոսկի |
| 6 աղեղ | | |
| 3 կացին | | |
| 2 պարկ ցորեն | | |
| 10 մետր գործվածք | | |

Այս տեսքով ներկայացող արժեձևը կոչվում է փողային, որովհետև ոսկին ընդհանրական համարժեքի դերում փող է։ Ոսկին, ինչպես և արժեքի նախորդ ձևում ոչխարը, հասարակական նույն դերն է կատարում, երկուսն էլ ընդհանրական համարժեք են։ Այսպիսով, եթե սահմանելու լինենք փողի էությունը, կարող ենք ասել, որ փողն ընդհանրական համարժեք է, սակայն այնպիսի ընդհանրական համարժեք, որը մշտապես ու կայուն կերպով իր վրա է վերցնում այդ հասարակական ֆունկցիան։ Ամեն մի համարժեք, ինչպես և փողը, ապրանք է։ Դեռ մինչև ընդհանրական համարժեքի դերին անցնելը ոսկին հանդես է եկել ապրանքային աշխարհի մյուս ներկայացուցիչների կողքին։ Հետևաբար՝ ոսկին ոչ թե իր է, այլ հասարակական հարաբերություն։ Բնությունը չէ, որ ոսկին փող է դարձնում։ Ոսկին փող է դառնում փոխանակության և արժեձևերի հասարակական երկարատև, տարերային զարգացման հետևանքով։

Ոսկին կարողանում է փողի դեր կատարել, որովհետև ինքն ապրանք է և, որպես այդպիսին, փողն ունի արժեք և սպառողական արժեք։ Սակայն, լինելով փողային ապրանք, ոսկու սպառողական արժեքը երկճեղքվում է։ Նախ, ոսկու՝ որպես սովորական ապրանքի, սպառողական արժեքը կայանում է նրանում, որ նա հանդիսանում է աշխատանքի առարկա՝ տարբեր իրերի պատրաստման համար։ Երկրորդ՝ նրա սպառողական արժեքը հանգում է հասարակական, փողային ֆունկցիաների իրականացմանը։

Փողի էությունն ուսումնասիրելուց հետո տեսնենք, թե իր ծագումից հետո տնտեսական կյանքում կոնկրետ ի՞նչ դեր է կատարում փողը։

Փողը կատարում է հասարակական հինգ դեր, այլ կերպ ասած՝ ունի հինգ ֆունկցիա։ Դրանք են՝

փողը որպես արժեքի չափ,
փողը որպես շրջանառության միջոց,
փողը որպես գանձ կազմելու միջոց,
փողը որպես վճարելամիջոց և
համաշխարհային փող։

Փողի առաջին ֆունկցիան արժեքի չափի դեր կատարելն է։ Այս ֆունկցիայի էությունն այն է, որ փողի միջոցով չափվում են մյուս ապրանքների արժեքները։

Ապրանքը փոխանակվում է ոսկով, որովհետև ո՛չ միայն փոխանակվող ապրանքի, այլև ոսկու վրա նույնպես հասարակական մարդկային աշխատանք



է ծախսված։ Փողը նույնպես ապրանք է, արժեք ունի. ավելին, այն հանդես է գալիս որպես հասարակական աշխատանքի մարմնավորում։ Հասկանալի է, որ եթե փողը ապրանք չլիներ, արժեք չունենար, ապա չէր կարողանա չափել մյուս ապրանքների արժեքը ճիշտ այնպես, ինչպես կշեռքի մեկ նժարի վրա եթե որևէ կշռաքար չդնենք, չենք կարողանա կշռել մյուս նժարի վրա դրված իրը։

Ապրանքի արժեքը, որն արտահայտվում է փողով, դրամաձևն է, կամ գինը։ Այլ կերպ ասած՝ գինը ապրանքի արժեքի դրամական արտահայտությունն է։

Ոսկին որպես մետաղ չափվում է կշռային միավորներով։ Յուրաքանչյուր կշռային միավոր ոսկի որոշակի քանակությամբ հասարակական աշխատանք է մարմնավորում, այսինքն՝ ունի որոշակի արժեք։ Ապրանքների արժեքները փողով չափելն անհրաժեշտ է դարձնում չափել հենց փողի կշռային մեծությունը, որն իրականացվում է գների մասշտաբի միջոցով։ Այսպիսով, ոսկու կշռային որոշակի քանակը դառնում է ապրանքի արժեքի չափը։ Ոսկու՝ ապրանքների արժեքի չափի ֆունկցիայից զարգանում է գների մասշտաբը։

Փողի արժեքի չափի ֆունկցիան փաստորեն իրականացվում է գների մասշտաբի միջոցով։ Սակայն, արժեքի չափի ֆունկցիայի և գների մասշտաբի միջև էական տարբերություն կա։ Եթե որպես արժեքի չափ ոսկին որոշում է մյուս բոլոր ապրանքների արժեքները, ապա որպես գների մասշտաբ նա չափում է իր սեփական մեծությունը՝ դրամական միավորի միջոցով։ Բացի դրանից, արժեքի չափը որոշվում է տարերայնորեն, մարդկանց կամքից անկախ, մինչդեռ գների մասշտաբը սահմանվում է օրենսդրական կարգով։ Վերջապես, որպես արժեքի չափ հանդես է գալիս դրամական ապրանքը՝ ոսկին, որի արժեքը փոփոխվում է հենց ոսկեմետաղի արտադրման համար հասարակականորեն անհրաժեշտ աշխատաժամանակի փոփոխման հետևանքով։ Մինչդեռ, ինչպես էլ որ փոփոխվելիս լինի ոսկու արժեքը, գների մասշտաբը կմնա անփոփոխ։

Փողն արժեքի չափի ֆունկցիան կատարում է իդեալականորեն,— ասում է Մարքսը։ Դա նշանակում է, որ արժեքների չափման և արտահայտման գործողությունը տեղի է ունենում առանց դրամական նյութի անմիջական առկայության։ Ապրանքի արժեքը չափելու համար չի պահանջվում առկա դրամ ունենալ։

Առանց փողի, առանց ընդհանրական համարժեքի կատարվող փոխանակության ժամանակ ապրանքները հանդիպադրվում են անմիջականորեն, տեղի է ունենում պարզ ապրանքափոխանակության Ա—Ա պրոցեսը։ Հետևաբար ապրանքարտադրողների շերտավորում չկա, ապրանքարտադրողները չեն բաժանվում գնորդների և վաճառողների։ Յուրաքանչյուր վաճառող միաժամանակ գնորդ է և յուրաքանչյուր գնորդ՝ միաժամանակ վաճառող։ Փողի հանդես գալով ապրանքների փոխանակության պրոցեսը դադարեց մեկ միասնական գործարք լինելուց և տրոհվեց երկու փուլերի՝ վաճառքի (Ա—Փ) և գնման (Փ—Ա)։ Ապրանքափոխանակության պրոցեսում հանդես գալով որպես միջնորդ՝ փողը դրանով իսկ սկսեց կատարել շրջանառության միջոցի ֆունկցիան։ Փողի միջնորդությամբ կատարվող փոխանակությունը՝ ապրանքաշրջանառությունը, ստացավ Ա—Փ—Ա տեսքը։

Եթե արժեքի չափի ֆունկցիան փողը կարող էր իդեալականորեն կատա-

րել, ապա շրջանառության միջոցի ֆունկցիան իդեալականորեն կատարվել չի կարող։ Փողը միայն իր առկա, շոշափելի վիճակով է իրականացնում շրջանառության միջոցի ֆունկցիան։

Թղթադրամի հանդես գալը կապված է փողի շրջանառության միջոցի ֆունկցիայի հետ։ Թղթադրամը դրամից տարբերվում է նրանով, որ ինքը սեփական ոչ մի արժեք չունի և շրջանառություն է կատարում որպես մետաղե փողի ներկայացուցիչ։ Շրջանառության մեջ գտնվող թղթադրամի քանակը պետք է համապատասխանի նրա կողմից ներկայացվող ոսկեդրամի քանակին։ Սա թղթադրամի շրջանառության օրենքն է։ Եթե շրջանառության մեջ ավելի շատ թղթադրամ կա, քան անհրաժեշտ է, ապա թղթադրամի արժեքը կընկնի․ տեղի կունենա ինֆլյացիա։

Եթե Ա—Փ փուլը իրականացնելուց հետո ապրանքաշրջանառության Ա—Փ—Ա պրոցեսը ընդհատվի, այսինքն՝ չկատարվի Փ—Ա փուլը, և եթե Ա—Փ պրոցեսն իրականացրած ապրանքատերը ստացված փողը կուտակի, ապա այն գանձի կվերածվի։ Այսպիսով, գանձը գոյանում է շրջանառությունից հանված փողերով։

Սակայն շրջանառությունից հանված ամեն մի փող դեռևս գանձի ֆունկցիայում չի գտնվում։ Անհրաժեշտ է փողի՝ որպես գանձի ֆունկցիան տարբերել դրամական սովորական ռեզերվից, որը գոյանում է ոչ թե կուտակման, այլ ուրիշ նպատակներով շրջանառությունից ժամանակավորապես հանված փողերից։ Մյուս կողմից՝ թեև գանձը շրջանառությունից մշտապես հանված փող է, սակայն այն կկորցներ իր նշանակությունը, եթե հնարավոր չլիներ հարկ եղած դեպքում վերադարձնել շրջանառության ոլորտ։ Երբ շրջանառության համար անհրաժեշտ փողի քանակը ապահովված չի լինում, գանձի ձևում գտնվող փողերից համապատասխան գումար է դուրս նետվում՝ լրացնելու առաջացած բացը։ Եվ, ընդհակառակը, երբ շրջանառության մեջ գտնվում է ավելի շատ ոսկեդրամ, քան անհրաժեշտ է, ապա այդ ավելցուկը դուրս է գալիս շրջանառությունից և անցնում է նրա գանձ ֆունկցիային։

Փողի՝ որպես գանձի ֆունկցիան հարստության կուտակումն է ոսկու ձևով։ Ըստ որում, ոսկին ո՛չ միայն փողի, այլև ձուլվածքի և արդուզարդի ձևով էլ կարող է ծառայել որպես գանձ։

Ապրանքային արտադրության և ապրանքաշրջանառության զարգացման զուգընթաց ստեղծվում են այնպիսի պայմաններ, որոնց հետևանքով ապրանքի վաճառքի ժամանակ անմիջականորեն փողի շարժում տեղի չի ունենում. ապրանքը մեկից անցնում է մյուսին, իսկ այդ ապրանքի գնի վճարումը հետաձգվում է։ Այլ կերպ ասած՝ գործարքը կատարվում է ապառիկ վճարման կարգով։ Այն բոլոր դեպքերում, երբ տնտեսական հարաբերություններն իրականացվում են վճարումը հետաձգելու պայմանով, փողը հանդես է գալիս իր վճարելամիջոցի ֆունկցիայով։

Ապառիկ գործարքի անհրաժեշտությունը բխում է բուն իսկ ապրանքային արտադրությունից։ Սակայն սա չի նշանակում, թե փողի վճարելամիջոցի ֆունկցիան միշտ կապված է ապրանքային հարաբերությունների հետ, կամ միշտ ապրանքաշրջանառությունից է բխում։ Վաշխառությունը նույնպես փողն օգտագործում է վճարելամիջոցի ֆունկցիայով։ Փողի վճարելամիջոցի ֆունկցիան հանդես է գալիս վարկային հարաբերություններում, որոնք կապիտալիզմի զարգացման գործում այնքան կարևոր դեր են խաղացել։



Ապրանքային արտադրության զարգացման և աշխատանքի միջազգային բաժանման հետևանքով ապրանքաշրջանառությունը դուրս է գալիս առանձին երկրների սահմաններից։ Տարբեր երկրների միջև կատարվող ապրանքային փոխանակությունը պայմանավորում է նաև փողի տեղափոխությունը մեկ երկրից մյուսը։ Սակայն, փողը մեկ երկրից մյուսն է տեղափոխվում ոչ միայն միջազգային առևտրական գործարքների, այլև զուտ ֆինանսա-վարկային հարաբերությունների հետևանքով։ Այն դեպքերում, երբ փողը, անկախ դրդապատճառի բնույթից, դուրս է գալիս մեկ երկրի սահմաններից, նա կատարում է համաշխարհային փողի ֆունկցիան։ Համաշխարհային փողը ոսկին է։ Թղթադրամը, կամ ոչ լիարժեք դրամները փողի այդ ֆունկցիան իրականացնել չեն կարող։

Ինչպես վերևում նշվեց, ապրանքների արտադրությունն ու փոխանակությունն իրականացվում են հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքային ծախսումների հիման վրա։ Սա արժեքի օրենքի՝ ապրանքային արտադրության այդ տնտեսական օրենքի պահանջն է։

Եթե ապրանքների փոխանակության հիմքում ընկած է նրանց արժեքների հավասարությունը, եթե արժեքները որոշվում են ապրանքների մեջ պարունակվող հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի քանակով, նշանակում է՝ այն ապրանքարտադրողը, որի ծախսած անհատական աշխատաժամանակը ավելի փոքր է, քան այդ ապրանքի արտադրման համար հասարակականորեն անհրաժեշտ աշխատաժամանակը, նպաստավոր պայմաններում է։ Ընդհակառակը, հասարակականորեն անհրաժեշտ աշխատաժամանակից գերազանցող անհատական աշխատաժամանակ ունեցող ապրանքարտադրողը չի կարողանա իրացնել իր ծախսած աշխատանքի արդյունքի մի մասը և կտուժի։ Այսպիսով, արժեքի օրենքը ապրանքային արտադրության արտադրողական ուժերի տարերային զարգացումը խթանող օրենքն է։

Արժեքի օրենքը գների մեխանիզմի միջոցով տարերայնորեն կարգավորում է արտադրությունը՝ հասարակական աշխատանքի և արտադրության միջոցների բաշխումը տնտեսության տարբեր ճյուղերի միջև։ Գինը, որն ապրանքի արժեքի դրամական արտահայտությունն է, շեղվում է արժեքից՝ պահանջի ու առաջարկի միջև գոյություն ունեցող հարաբերության տատանումների հետևանքով։

Արտադրության միջոցների նկատմամբ մասնավոր սեփականության տիրապետման պայմաններում արժեքի օրենքի գործողությունն ուժեղացնում է մրցակցային պայքարը ապրանքարտադրողների միջև։ Արժեքի շուրջ շուկայական գների տատանումները, անհատական աշխատաժամանակի շեղումները հասարակականորեն անհրաժեշտ աշխատաժամանակից, ուժեղացնում են տնտեսական անհավասարությունը և պայքարն ապրանքարտադրողների միջև։ Նրանց մի մասը սնանկանում, պրոլետարիատի շարքերն է անցնում, իսկ մյուս մասը հարստանում և բուրժուազիայի է վերածվում։ Այսպիսով, արժեքի օրենքը կապիտալիստական արտադրական հարաբերությունների ծագման ու զարգացման օրենքն է։



# Բնության ԿՅԱՆՔԸ

## ՖՈՏՈՊԵՐԻՈԴԻԶՄ

*(Բուսական աշխարհի հետաքրքրական երևույթներից մեկը)*

Վ. ՂԱԶԱՐՅԱՆ

ՀՍՍՌ ԳԱ թղթակից-անդամ

Բուսական և կենդանական աշխարհը զարմանալիորեն հարուստ է ո՛չ միայն իր տեսակների և ձևերի անսահման այլակերպությամբ, այլև կյանքի բազմազան պայմաններին հարմարվելու ընդունակությամբ։ Կենդանի նյութերին հատուկ բոլոր այդ ունակություններն օրգանիզմները ձեռք են բերել երկարամյա էվոլյուցիայի ընթացքում, որով և հնարավորություն են ստացել կատարելագործելու կենսական պրոցեսները, ընդլայնելու տարածման արիալը և բազմապատկելու տեսակների և նրանց անհատների թիվը։

Էվոլյուցիոն հարմարողականության շնորհիվ կենդանի օրգանիզմները լայնորեն տարածվել և մշտական բնակություն են հաստատել հյուսիսային դաժան կլիմա և կարճ վեգետացիոն շրջան ունեցող երկրամասերից սկսած մինչև հասարակածային մշտապես տաք ու խոնավ երկրները, օվկիանոսների խորքի թափանցիկ ջրային զանգվածներից մինչև բարձրադիր լեռնային գագաթները, որոնք տարվա մեծ մասը ծածկված են ձյունե սավանով։ Նույնիսկ կիզիչ անապատային ավազուտները զերծ չեն մեր կանաչ բարեկամներից։

Բույսերի հարմարողականությունը հավասարապես դրսևորվել է արտաքին միջավայրի բազմաթիվ գործոնների՝ խոնավության, չորության, հանքային նյութերի, ջերմության, լույսի հանդեպ։ Ցամաքային շատ բույսեր իրենց կյանքը մշտապես կապել են այնպիսի միջավայրի հետ, որտեղ առկա է առատ խոնավությունը, մինչդեռ մի այլ խումբ բույսեր տարվա խոնավ եղանակներին մեկ անգամ իրենց հյուսվածքները հագեցնելով ջրով, հնարավորություն են ստանում դիմադրելու երկարատև ու դաժան երաշտներին։ Բույսերից շատերը առանց վնասվելու տանում են ձմռվա ամենասաստիկ սառնամանիքները, իսկ տրոպիկական շատ բույսեր անկարող են պահպանելու իրենց կյանքը պատահական կարճատև ցրտահարումներից։ Բազմաթիվ բույսեր ընդունակ են աճելու և արագությամբ բազմանալու խիտ անտառների ստվերի տակ, իսկ լուսասեր բույսերի կյանքը անվերադարձ մարում է, երբ նրանք պատահմամբ հայտնվում են ստվերոտ միջավայրում։

Բույսերն անտարբեր չեն նաև հողի մեջ եղած հանքային նյութերի պարունակության հանդեպ։ Երկրի վրա հսկայական ցամաքային տարածություններ, որոնք կարող են մեծ ծառայություններ մատուցել մարդկությանը, մինչև օրս էլ մնում են անօգտագործելի միայն այն պատճառով, որ հողում եղած աղերի քանակը հասնում է մեծ տոկոսի։ Չնայած դրան, բազմաթիվ վայրի բույսեր իրենց չափազանց լավ են զգում այդ աղուտներում։ Ջրի հետ միասին առանց վնասվելու այդ բույսերն առատությամբ հողից կլանում են հսկայական քանակությամբ աղ, այնուհետև հեռացնում են այն՝ տերևների վրա եղած մանրադիտակային ծակոտիներով, որոնք կոչված են գազափոխանակության և ջրի գոլորշիացման համար։ Այդպիսի աղադիմացկուն բույսերն արտաքուստ անհասկանալի պատճառներով կորցնում են իրենց կենսունակությունը, երբ աճեցնում ենք նորմալ հողային պայմաններում։

Բույսերի վերը թվարկված, ինչպես և շատ այլ հատկություններ ձեռք են բերվել երկարատև էվոլյուցիայի ընթացքում մշտապես ընթացող գոյության կռվի, միլիոնավոր չհարմարված սերունդների ոչնչացման ճանապարհով, երկու հիմնական գործոնների՝ ժառանգական փոփոխությունների պատահական դրսևորման և օգտակար հարմարանքների բնական ընտրության պայմաններում։ Բոլոր պատահական ժառանգական փոփոխությունները, որոնք այս կամ այն չափով նպաստել են տվյալ միջավայրում որևիցէ անհատի հարմարվելուն, նույն չափով էլ օժանդակել են նրա վերաճին, իսկ մյուս չհարմարված բույսերը ոչնչացել են գոյության դաժան կռվում։

Օրգանական ձևերի էվոլյուցիայի դարվինյան այս տեսության տեսադաշտից երկար ժամանակ դուրս է մնացել բույսերի ու կենդանիների մի այլ կարևոր հարմարողական երևույթ, որը հաջողվեց հայտնաբերել միայն մեր դարի 20-ական թվականներին։ Այդ բույսերի զարմանալի հատկությունը կապված է ցերեկվա ու գիշերվա հերթափոխության, ինչպես և օրվա այդ երկու մասերի տևողությունների սեզոնային փոփոխության հետ։

Տարվա բաժանումը չորս եղանակների, ինչպես հայտնի է, կապված է ամառային ու ձմեռային արևադարձի և գարնանային ու աշնանային օրահավասարների հետ։ Ամառային արևադարձը համընկնում է հուլիսի 22-ին։ Այդ ժամանակից սկսած հյուսիսային և բարեխառն լայնություններում օրն աստիճանաբար երկարում է և, որպես կանոն, նրա տևողությունն աճում է՝ հասարակածային գոտու 12 ժամից մինչև հյուսիսային բևեռի անընդհատ լուսավորությունը։ Դրան հաջորդում է օրվա տևողության կարճացում ընդհուպ մինչև սեպտեմբերի 22-ը, երբ գիշերվա ու ցերեկվա տևողությունը հավասարվում է՝ դառնալով 12 ժամ։ Օրվա կարճացման այդ տենդենցը դրսևորվում է մինչև դեկտեմբերի 22-ը, որը և հանդիսանում է աստղաբաշխական ձմեռվա սկիզբը։ Դրան հաջորդում է օրվա տևողության աստիճանական ավելացումը, մինչև մարտի 22-ը, երբ գիշերվա ու ցերեկվա տևողությունները նորից հավասարվում են։

Երկրի տարբեր լայնություններում տարվա եղանակներին համապատասխան արեգակի բարձրությունը փոխվում է հորիզոնի վրա 0-ից մինչև 90°, որի հետ միասին փոխվում է օրվա տևողությունը։ Այս երկու գործոններով էլ որոշվում է արևային էներգիայի այն քանակը, որն ընկնում է երկրի վրա։ Ցերեկը, բոլոր բույսերն ընկալելով արևի ճառագայթները, կատարում են ֆոտոսինթեզ և իրենց հյուսվածքները հարստացնում օրգանական նյութերով։ Գիշերվա ժամերին այդ պրոցեսը փոխարինվում է մի այլ խումբ ռեակցիաներով, որի ժամանակ ծախսվում է ցերեկվա ընթացքում կուտակած էներգիայի մի մասը։

Բույսերն իրենց զարգացման երկարամյա պատմության ընթացքում ամեն օր ենթարկվելով լույսի և մթության, կամ այլ կերպ ասած՝ ֆոտոպերիոդիզմի ազդեցության, բոլոր կենսական պրոցեսները հարմարեցրել են այդ ռիթմին։ Ցերեկվա ու գիշերվա տևողությունների աստիճանական փոփոխության հանդեպ, նրանք անտարբեր չեն մնացել նաև վեգետացիոն սեզոնի ընթացքում։ Բույսերի աճը, ծաղկումը, սերմնակալումը, վեգետատիվ բազմացումը, աշնանային տերևաթափը, ձմեռադիմացկունությունը և բազմաթիվ այլ առանձնահատկությունների ու ֆիզիոլոգո-բիոքիմիական բարդ պրոցեսների դրսևորումը կապված է ֆոտոպերիոդիկ ազդեցության հետ։ Բուսական օրգանիզմների զարգացման այս առանձնահատկություններն էին, որ մինչև վերջերս դուրս էին մնացել մեր իմացության տեսադաշտից, որի հետևանքով անհասկանալի էին մնացել նրանց վարքագծի և պտղակալման բազմաթիվ հարցեր։

### ՖՈՏՈՊԵՐԻՈԴԻԶՄԻ ՀԱՅՏՆԱԳՈՐԾՈՒՄԸ

Գիտության մեջ երկար ժամանակ առաջին հայացքից տրամաբանական թվացող այն կարծիքն էր իշխում, որ բույսերի աճը և պտղակալումը շատ ավելի լավ կարող են ընթանալ այն դեպքում, երբ նրանք ստանան անընդհատ լույս, քանի որ օրգանական նյութերի սինթեզն իրականանում է միայն արևի ճառագայթների էներգիայի հաշվին։ Այդ հավանական ենթադրությունը ճշտվում է միայն որոշ բույսերի մոտ։ Պարզվում է, որ շատ բույսեր իրենց ավելի լավ են զգում օրվա տևողությունից պակաս լույս ստանալու դեպքում։ Այսպես, օրինակ՝ Տարնուրը 1912 թվականին կանեփ և մի շարք այլ բույսեր աճեցրել է կարճ օրվա պայմաններում և նկատել, որ այս դեպքում, չնայած դրանք համեմատաբար թույլ են աճում, բայց ավելի շուտ են ծաղկում, քան երկար օրվա լուսային ռեժիմում։ Այս և մի շարք այլ գիտնականների՝ նման և հակասական թվացող փորձերի արդյունքները մնում են անուշադրության մատնված և, որ ամենագլխավորն է, չբացատրված մինչև Գարների և Ալլարդի մանրազնին ուսումնասիրությունը։ Աշխատելով ծխախոտի հիբրիդացման բնագավառում, այդ երկու գիտնականներին հաջողվում է ստանալ հսկայական վեգետատիվ հզորության հասնող մի ձև, որի սերմնաբույսերը, հակառակ ծնողական ձևերի, ամբողջ ամառ շարունակում էին ինտենսիվ աճել, սակայն չէին ծաղկում ու սերմնակալում։ Թողնելով բնական օրվա պայմաններում, այդ գիտնականները նկատում են, որ նրանք արագությամբ սերմնակալման են անցնում ձմռանը, երբ բնական օրվա տևողությունն զգալի չափով կարճանում է։ Այս հետաքրքրական երևույթն անմիջապես գրավեց նրանց ուշադրությունը, և մեկը մյուսի հետևից

փորձնական աշխատանքների ոլորտն ընդգրկվեցին մեծ թվով բույսեր։ Հետագայում նրանց հաջողվեց հաստատել, որ այդ բույսերի ծաղկումը պայմանավորված է, առաջին հերթին՝ օրվա տևողությամբ։ Ըստ որում բույսերի մի մասը ծաղկում է միայն այն դեպքում, երբ տրվում է 12 ժամից ավելի կարճ օր։ Մյուս խումբը՝ ընդհակառակը, այդպիսի լուսակայման պայմաններում շարունակում է աճել, կազմավորելով նորանոր վեգետատիվ օրգաններ, առանց ծաղիկների հիմնադրման։ Վերջիններիս սերմնակալումը զգալի չափով արագանում է, երբ արհեստականորեն երկարացվում է լույսի տևողությունը, կամ երբ նրանց աճեցնում ենք անընդհատ լույսի պայմաններում։



Նկ. № 1. Հաճար տարբեր խմբերով աճեցվել է 18, 14, 13, 12, 11 և 10 ժամվա լուսային օրվա պայմաններում։ Հասկակալել են միայն այն բույսերը, որոնք ստացել են երկար օր։

Այդ բնագավառում ստացված հետաքրքրական փաստերից մեկն էլ այն է, որ վերջին խմբի բույսերը նույնքան արագությամբ անցնում են ծաղկման և սերմնակալման, երբ կարճ օրվա բնական լույսից բացի տրվում է մի քանի ժամ չափազանց թույլ, նույնիսկ լուսնյակի շողերի ինտենսիվության հավասար լույս։ Այս փաստը ցույց է տալիս, որ նորալուսնի լույսը նույնպես դրական ազդեցություն է ունենում բույսերի ծաղկման վրա։ Այդ փորձերի արդյունքները Գարներին և Ալլարդին հնարավորություն տվին դասակարգելու բույսերը ըստ ծաղկման՝ օրվա տևողության հանդեպ։ Բոլոր այն բույսերը, որոնք նորմալ ծաղկում ու սերմնակալում են 12 ժամից պակաս տևողություն ունեցող լուսային օրվա պայմաններում, կոչվել են կարճ օրվա բույսեր, ավելի երկար օրվա պայմաններում ծաղկող բույսերը՝ երկար օրվա բույսեր։ Բույսերի մի երրորդ խումբն էլ ծաղկել է 8 ժամվա տևողություն ունեցող օրից մինչև 24 ժամ լուսավորվածություն ունեցող միջավայրում։ Այդպիսի բույսերին նրանք անվանել են օրվա տևողության հանդեպ չեզոք բույսեր։

Գարների ու Ալլարդի առաջարկած տերմինոլոգիան և դասակարգումը հետագայում լայն ընդունելություն գտավ և շարունակում է նույնությամբ պահպանվել գիտական գրականության մեջ։

Օրվա տևողության հանդեպ չեզոք բույսերից շատերն արագ ծաղկում են ավելի կարճ օրում, մյուսները՝ երկար։ Բացի դրանից այդ բույսերը ծաղկելով կարճ օրում չեն սերմնակալում, մինչդեռ մի այլ ենթախմբի բույսեր արագ ծաղկում և սերմնակալում են երկար օրում։ Այս նշանակում է, որ նրանք իրենց ծաղկման ռեակցիայով չեն տարբերվում, իսկ սերմնակալման տեսակետից տարբեր վարք են ցուցաբերում օրվա երկարության հանդեպ։ Այսպիսով, օրվա երկարությունը որոշակի ազդեցություն է թողնում աճման և այլ ֆիզիոլոգիական պրոցեսների վրա, օրինակ, այն բույսերը, որոնց ծաղկումը երկար օրում արագանում է, դրա փոխարեն ցուցաբերում են դանդաղ աճ, մինչդեռ կարճ օրվա պայմաններում ուժեղանում է նրանց աճը, թուլանում ծաղկման տեմպը։ Այս փաստերը վկայում են, որ իրականում օրվա երկարության հանդեպ չեզոք բույսեր չկան, չնայած մասնագետների շրջանում այդ տերմինն ընդհանուր ընդունելություն է գտել։

Գարների և Ալլարդի հայտնաբերած երևույթը՝ ցերեկվա և գիշերվա տևողությունների հարաբերության ազդեցությունը բույսերի ծաղկման ու սերմնակալման և կենսական այլ պրոցեսների վրա, կոչվում է ֆոտոպերիոդիզմ։ Վերջինիս խոր ու բազմակողմանի ուսումնասիրման հիման վրա մեկը մյուսի հետևից պարզաբանվում են բուսական օրգանիզմների զարգացման ու աճման նորանոր, մինչ այդ գիտությանն անհայտ առանձնահատկություններ։ Ամենից առաջ ռուս գիտնականներ Դորշենկոյի, Լյուբիմենկոյի և Մաքսիմովի աշխատանքներով հաստատվում է այն փաստը, որ երկար օրվա բույսերը՝ հյուսիսային ծագում ունեցող տեսակներն են, որոնց դարավոր էվոլյուցիան ընթացել է հյուսիսային լայնությունների ամառային երկար օրվա պայմաններում։ Կարճ օրվա բույսերը, ընդհակառակը, հարավային ծագում ունեն, որտեղ օրվա տևողությունը չի գերազանցում 12 ժամից։ Օրվա երկարության հանդեպ չեզոք բույսերը տարածման լայն արեալ ունեցող խոտային տեսակներն են, որոնց մենք հանդիպում ենք ինչպես հարավային ու բարեխառն, այնպես էլ հյուսիսային լայնություններում։ Այս պատճառով էլ նրանք համարվել են թե՛ երկար և թե կարճ օրվա պայմաններին։ Շատ բույսերի մոտ նշված հարմարողականությունն այն աստիճան է ամրապնդվել ժառանգականորեն, որ նույնիսկ օրվա տևողության կես ժամվա փոփոխությունը երկար ժամանակ բացառում է բույսերի ծաղկումը։ Այսպես, օրինակ՝ տեֆրոզիա կանդիդա բույսը, որի հայրենիքը հասարակածային գոտու կղզիներից մեկն է, ծաղկման համար օրվա ընթացքում պահանջում է միայն 12 ժամ լույս։ Երբ տալիս ենք 12 և կես, կամ 11 ու կես ժամ լույս, նա շարունակում է իր վեգետատիվ աճը, երկար ժամանակ չցուցաբերելով ծաղկման նշաններ։ Պարզվում է, որ նրա հայրենիքում ամռան ամիսներին օրվա տևողությունը հավասար է 12 ժամվա։

Դժվար չէ որոշել մեզ շրջապատող բնության մեջ հանդիպող այս կամ այն բույսի ֆոտոպերիոդիկ պատկանելությունը, հետևելով նրանց ծաղկմանը։ Ամռան կեսերին ծաղկակալող բոլոր բույսերը պատկանում են երկար օրվա խմբին, իսկ աշնան կարճ օրում ծաղկողները՝ կարճ օրվա խմբին։ Ծառային բույսերից շատերը չեն ենթարկվում այս օրինաչափությանը։ Նրանց ծաղկման համար, բացի օրվա տևողությունից, կարևոր նշանակություն ունեն և այլ կարգի ֆակտորներ՝ հանքային սննդառություն, ջրի ազդեցություն, որոշակի հասակ և այլն։

Ֆոտոպերիոդիզմի հետագա խոր ուսումնասիրությունները ցույց են տվել, որ բույսերի ծաղկումը պայմանավորված է ոչ այնքան օրվա, որքան մթության շրջանի՝ գիշերվա տևողությամբ։ Այդ բանը չափազանց լավ երևում է, երբ պարբերաբար գիշերվա մթությունն ընդհատում ենք 1—2 րոպե լուսակայումով։ Այս դեպքում բույսերը դադարում են ծաղկելուց։ Այդ նշանակում է, որ 1—2 րոպե տևողությամբ լույսը չեզոքացնում է մթության ազդեցությունը, և բույսն այն ընկալում է որպես երկար օր։ Նման պայմաններում նորմալ ծաղկում են հյուսիսային ծագում ունեցող բույսերը, չնայած օրվա ընթացքում լույսի տևողությունը չի գերազանցում 12 ժամից։

Գիշերվա ընթացքում տրված 1—2 րոպե տևողությամբ լույսի ազդեցությունը կապված է բույսի ֆոտոսինթետիկ գործունեության հետ։ Ինչպես հայտնի է, բույսի կանաչ տերևները ֆոտոսինթեզի ընթացքում կլանում են օդի ածխաթթու գազը և այն միացնում արմատների միջոցով բարձրացող ջրին, սինթեզելով ածխաջրատներ (շաքարներ)։ Այդ պրոցեսում նրանք օգտագործում են արևի էներգիան։ Երբ գիշերվա ընթացքում կարճ օրվա բույսին տալիս ենք կարճ լուսակայում, որի հետևանքով տերևները զրկվում են ածխաթթու գազից, այսինքն՝ ֆոտոսինթեզի հնարավորությունից, ապա այն նորմալ ծաղկում է։ Այդ նշանակում է, որ ածխաթթու գազի բացառման դեպքում բույսը փաստորեն չի ընկալում լույսը։ Այստեղից գիտնականները եկել են այն եզրակացության, որ ֆոտոպերիոդիկ ռեակցիան սերտորեն կապված է ֆոտոսինթեզի հետ։ Մյուս կողմից, այդ փորձը մեզ բերում է այն համոզման, որ ֆոտոպերիոդիկ ազդեցությունը բույսերն ընկալում են տերևներով, քանի որ նրանք հանդիսանում են ֆոտոսինթետիկ մակերեսներ։ Գիտնականներն այդ եզրակացությանն են հանգել նաև մի շարք այլ փորձերի շնորհիվ։ Պարզվում է, որ բույսերը միշտ ծաղկում են այն ժամանակ, երբ կարճ կամ երկար օրվա ազդեցության ենթարկվում են տերևները։ Մյուս բոլոր օրգաններն ու մասերը նույն թվում և աճման կոները, որոնց վրա առաջանում են ծաղիկներ, անտարբեր են ցերեկվա ու գիշերվա տևողությունների փոփոխության հանդեպ։



№ 2. Կարմրատերև պերիլայի տերևներից մեկը գտնվել է բնական երկար օրվա պայմաններում, իսկ մյուսը ամեն օր ստացել է միայն 10 ժամ լույս (մյուս ժամերին գտնվել է լուսանթափանց ծրարի մեջ)։ Կարճ օր ստացող տերևի ծոցային ընձյուղը 30 օրից հետո անցել է սերմնակալման։

Բույսերի վրա ֆոտոպերիոդները ներգործում են բույսի անհատական զարգացման որոշ էտապից և հասակից սկսած։ Նոր ծլած բույսերը համարյա անզգա են այդ ֆակտորի ազդեցության նկատմամբ։ Որքան մեծանում են տերևները և կրկնապատկվում նրանց թիվը, այնքան բույսը բարձրացնում է իր զգայնությունը նշված գործոնի հանդեպ։ Դրա լավագույն ապացույցը խրիզանթեմների հետ կատարված փորձերն են։ 30 օրական բույսերը ծաղկակալելու համար պահանջում են 45 կարճ օր, մինչդեռ 90 օրականները՝ 15 կարճ օր։ Բույսերի այս հատկու-

թյունը որոշիչ հանգամանք է բերքատվության համար։ Եթե բույսը ֆոտոպերիոդիկ ազդեցության ենթարկվի առաջին իսկ տերևների ձևավորումից, այս դեպքում նա շատ ավելի շուտ կանցնի ծաղկակալման, սակայն կկազմավորվեն անհամեմատ քիչ ծաղիկներ ու սերմեր։

Անհրաժեշտ է միաժամանակ նկատի ունենալ, որ ինտենսիվ աճող բույսերն իրենց վրա կրում են հասակով խիստ տարբեր տերևներ։ Ստորին յարուսի տերևները, լինելով ավելի զարգացած, ցուցաբերում են ֆոտոպերիոդիկ ազդեցության ընկալման մեծ զգայունություն՝ գագաթային փոքրիկ տերևների համեմատությամբ։ Այս հանգամանքը նպաստում է բույսի ծաղկման պրոցեսի երկարացմանը, այսինքն՝ ծաղիկների ու սերմերի թվի ավելացմանը։

Կան բույսեր էլ, որոնց տերևների ֆոտոպերիոդիկ զգայնությունը շատ ցածր է, որպես կանոն դրանք տալիս են բարձր բերք։ Մինչդեռ այն բույսերը, որոնց ֆոտոպերիոդիկ զգայնությունը շատ բարձր է, ծաղկում են վաղ հասակում և կազմավորում համեմատաբար քիչ բերք։ Մի շարք բույսեր էլ, 1—2 կարճ օր ստանալով, անցնում են ծաղկման և սերմնակալման։ Այսպիսի բույսերի բերքատվությունը ցածր է, բայց դրա փոխարեն տարվա ընթացքում կարող են տալ մի քանի սերունդ, եթե պայմանները նպաստավոր են նրանց զարգացման համար։ Հասարակածային գոտում գյուղատնտեսական մի շարք կուլտուրաներից 2—3 բերքի ստացումը կապված է նրանց վերը նշված հատկության հետ։

## ՖՈՏՈՊԵՐԻՈԴԻԶՄԻ ԳՈՐԾՆԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Ֆոտոպերիոդիզմի հայտնագործումը բացի տեսականից, ունի նաև կարևոր կիրառական նշանակություն։ Ուսումնասիրելով բույսերի կենսագործունեության տարբեր կողմերի վրա նրա ունեցած ազդեցությունը, գիտնականները մշակել և առաջարկել են մի շարք ագրո և ֆիտոտեխնիկական միջոցառումներ, որոնք հնարավորություն են տալիս կանոնավորելու բույսերի ծաղկումը, սերմնակալումը, աճը, բարձրացնելու ցրտադիմացկունությունը, ճիշտ ռայոնացնելու գյուղատնտեսական կուլտուրաները, արագացնելու վեգետատիվ բազմացումը և այլն։

Երբ կարճ կամ երկար օրվա բույսերի համար ստեղծում ենք ոչ օպտիմալ ռեժիմ, այսինքն՝ երբ կարճ օրվա բույսը աճեցնում ենք երկար օրում կամ ընդհակառակը՝ երկար օրվա բույսը ենթարկում ենք կարճ օրվա ազդեցության, ապա անհնար է դառնում նրանց ծաղկակալումը։ Օգտագործելով բույսերի այս հատկությունը՝ գիտնականները կարճ ու երկար օրվա բույսերն աճեցնում են լուսային այնպիսի ռեժիմի պայմաններում, որպեսզի նրանք ծաղկեն միաժամանակ։ Այս եղանակով տարվա ցանկացած ժամանակ ջերմոցային պայմաններում ստիպում են ծաղկելու դեկորատիվ բույսերին կամ հյուսիսային մարզերում նույն ջերմոցներում ստանալու բանջարանոցային կուլտուրաների բերք։ Ըստ որում հետաքրքրական է, որ բույսերի ծաղկումը և սերմնակալումն արագացնելու համար ամենևին էլ պարտադիր չէ դրանց տալ համապատասխան երկարության օր մինչև ծաղկումը։ Մի շարք փորձերով պարզվել է, որ այդ նպատակին հասնելու համար բավական է բույսը ենթարկել 10—15 համապատասխան ֆոտոպերիոդների, այնուհետև դրանք տեղափոխել բնական օրվա պայմաններ։ Այս դեպքում, զգալիորեն արագանում է փորձարկող բույսերի ծաղկումը։ Իմանալով ամեն մի բույսի պահանջը ֆոտոպերիոդների հանդեպ, կարելի է ստիպել նրանց ծաղկել ցանկացած ժամանակ։ Այս երևույթը գիտնականներն անվանել են ֆոտոպերիոդիկ հետազդեցություն։ Այսինքն՝ բույսի կողմից ստացված ֆոտոպերիոդների ազդեցության արդյունքները որոշ ժամանակ պահպանվելով նրա մեջ, այն դրսևորվում է ծաղկման պրոցեսի արագացմամբ։

Օրվա երկարության փոփոխությունը, բացի ծաղկման ժամկետների կանոնավորումից, զգալի ազդեցություն է թողնում նաև բույսերի աճման ինտենսիվության ու տևողության վրա։ Այս տեսակետից աշխարհագրական տարբեր ծագում ունեցող բույսերը խիստ տարբերվում են իրենց աճման տեմպով կարճ կամ երկար օրում։ Հենց իրենք՝ ֆոտոպերիոդիզմի հեղինակները, նկատել են, որ շատ բույսեր երկար օրում ցույց են տալիս ինտենսիվ և երկարատև աճ, իսկ կարճ օրում, ընդհակառակը, կասեցնում են աճը և անցնում տերևաթափի։ Այսպես, օրինակ՝ երկար օրվա սպիտակ ակացիայի վրա դրված փորձերը պարզել են, որ երբ նրան տալիս ենք օրական 9 ժամ լույս, շարունակում են աճել միայն 21 օր, 13 ժամ տևողություն ունեցող օրվա լույսի դեպքում՝ 64 օր, 19 ժամ լույսի պայմաններում՝ 86, իսկ անընդհատ լուսավորվածության դեպքում՝ 105 օր։ Ինչպես տեսնում ենք, մշտական լույսի առկայության պայմաններում բույսերի աճման տևողությունը մեծանում է մոտավորապես 5 անգամ։ Նման արդյունքներ են ստացվում նաև աճման պրոցեսների ուսումնասիրության փորձերում։ Չափելով սպիտակ ակացիայի սերմնաբույսերի տարեկան աճը տարբեր երկարության օրվա պայմաններում, ստացվել են հետևյալ տվյալները՝ 19 ժամ լուսավորության դեպքում ակացիայի տարեկան աճը կազմել է 50 սմ, 14 ժամի պայմաններում՝ 22, իսկ 10



ժամի պայմաններում՝ 2 սմ։ Տվյալ դեպքում բույսերի աճը երկար օրում 25 անգամ ավելի է եղել այն բույսերի աճման համեմատությամբ, որոնք գտնվել են կարճ օրում։ Սպիտակ ակացիային հակառակ, խինինը, որի հայրենիքը հարավային Ամերիկայի տաք ու խոնավ անտառներն են, ավելի ուժեղ աճում է կարճ օրվա պայմաններում։

Շատ բույսեր մեր պայմաններում կլիմայավարժեցման չեն ենթարկվում ոչ թե այն պատճառով, որ աննպաստ են ջերմային կամ այլ կարգի արտաքին գործոնները, այլ այն պատճառով, որ ամառվա ամիսներին օրվա տևողությունը համեմատաբար կարճ է։ Բազում տարիների ընթացքում նրանք չեն հասնում որոշակի վեգետատիվ հզորության և մնում են գաճաճ։ Այսպես, օրինակ՝ սիբիրյան խեժափեշիի երկամյա բուսակները պահելով 10 ժամվա տևողություն ունեցող օրվա պայմաններում, տարեկան տալիս են ոչ ավելի քան 0,2 սմ աճ, 14 ժամվա պայմաններում՝ 1,5, իսկ Լենինգրադի լայնության պայմաններում, որտեղ օրվա տևողությունը գերազանցում է 17 ժամից, տալիս են 46 սմ աճ։ Այս և նման այլ կարգի փաստերը ցույց են տալիս, որ բույսերի աճը, բացի հողակլիմայական պայմաններից՝ անմիջականորեն պայմանավորված է օրվա տևողությամբ։

Լուսային ռեժիմը դրական ազդեցություն է թողնում նաև բույսերի ցրտադիմացկունության վրա։ Նախքան ձմռան սառնամանիքների վրա հասնելը, բույսերը խնամքով նախապատրաստվում են նրան, ենթարկվում, այսպես կոչված՝ աշնանային կոփման և մտնում հանգստի վիճակի մեջ։ Աշնանային կոփումն սկսվում է դեռ ամռան բարենպաստ եղանակներից, երբ բույսերի աճը դադարում է։ Դրա շնորհիվ տերևների մեջ սինթեզված օրգանական նյութերը տեղաշարժվում և լցվում են պաշարող հյուսվածքները։ Աշնանային կոփման և հանգստի վիճակի մեջ ընկնելու նախապայմաններից մեկը տերևաթափն է։ Դրան նախորդում է տերևների բջիջների մեջ եղած սպիտակուցների քայքայումը և վերափոխումը մանր մոլեկուլներ ունեցող շարժուն նյութերի, որոնք տեղափոխվում են բնափայտի հյուսվածքները։ Մյուս կողմից էլ տերևաթափի հետևանքով ծառերը զրկվում են հսկայական գոլորշիացնող մակերեսից և այդ եղանակով պաշտպանվում են ձմռան ջրազրկումից։ Մանրազնին փորձերը ցույց են տվել, որ ինչպես աճման կասեցումը, այնպես էլ դրան հաջորդող աշնանային տերևաթափը կապված են օրվա տևողության աստիճանական կարճացման հետ, որն սկսվում է դեռ ամառվա երկրորդ կեսից։

Հաստատված է, որ երբ բույսերն աշնան սկզբից տեղափոխում ենք վեգետացիոն տնակ, երեկոյան ժամերին տալով էլեկտրական լույս, ստեղծելով երկար օրվա լուսային ռեժիմ, նրանք շարունակում են իրենց նորմալ աճը, չցուցաբերելով տերևաթափի նշաններ։ Սակայն այսպիսի բույսերն առաջին իսկ թեթև սառնամանիքներից ցրտահարվում և ոչնչանում են։



**Նկ. № 3.** Սոսու մի ծառի ճյուղեր երեկոյան ժամերին ստանալով լրացուցիչ էլեկտրական լույս, պահպանել են տերևները մինչև ուշ աշունը։ Մյուս բոլոր ճյուղերը բնական օրվա պայմաններում ենթարկվել են տերևաթափի, մտել ձմեռային հանգստի մեջ։

Այն հանգամանքը, որ ծառերի ձմեռային հանգիստը և աշնանային տերևաթափը պայմանավորված են օրվա տևողությամբ և ոչ թե շրջապատի ջերմությամբ, բնության նպատակահարմար երևույթներից մեկն է։ Տարվա ցանկացած ժամանակ օրվա երկարությունը որոշակի է, մինչդեռ օդի և հողի ջերմաստիճանը կարող է խիստ փոփոխվել ըստ աշխարհագրական գոտիների կամ տարիների։ Եթե բույսերի հանգստի շրջանի անցնելը կախված լիներ ջերմությունից, այս դեպքում մեղմ աշնանը կշարունակվեր նրանց աճը և անմիջապես կցրտահարվեին հենց առաջին իսկ սառնամանիքից։ Քանի որ հանգստի շրջանը պայմանավորված է աշնանային օրերի կարճացմամբ, մեր պայմաններում, սեպտեմ-

բերից սկսած, բույսերն աստիճանաբար նախապատրաստվում են ձմռանը, անկախ միջավայրի ջերմային պայմաններից։




Նկ. № 4. Իսպանական բաղցր սոխը ստանալով բնական (Σ) և երկար օր (24 ժամ) առաջացրել է սոխուկներ: Կարճ օրվա պայմաններում գտնվող բույսերը (10 ժամ) կազմավորել են միայն տերևներ:

Օրվա տևողությունը որոշիչ դեր է կատարում պալարավոր և սոխուկավոր բույսերի բերքատվության գործում։ Շատ բույսեր կորցնում են բերք կազմելու ունակությունը, եթե նրանք չեն ստանում համապատասխան երկարության լուսային օր։ Այսպես, օրինակ՝ գետնախնձորը պալարներ է առաջացնում միայն կարճ օրվա պայմաններում, սոխուկավոր բույսերը, ընդհակառակը՝ սոխուկ են կազմում երկար օրվա պայմաններում։ Կարճ օրվա դեպքում նրանք միայն առաջացնում են նոր տերևներ և այնուհետև ծաղկում ու սերմնակալում են։ Ինչպես հայտնի է, կարտոֆիլի հայրենիքը հարավային Ամերիկայի բարձրադիր լեռներն են։ Այդ պատճառով էլ կարտոֆիլի վայրի տեսակները պալարակալման համար պահանջում են կարճ օր և բարեխառն կլիմա։ Հետևաբար, կարտոֆիլը մեզ համար կկորցներ իր այդքան կարևոր նշանակությունը, եթե նրա պալարակալումը չհարմարեցվեր բարեխառն կլիմա ունեցող գոտիների ամառային երկար օրվա պայմաններին։ Այդ կուլտուրայի մյուս կարևոր բիոլոգիական առանձնահատկությունն այն է, որ սկսելով պալարակազմումը երկար օրում, այն շարունակվում է նաև աշնան կարճ օրերին։ Այդ նպաստում է այն բանին, որ ստացված պալարներն աշնանային ցրտերից հենց մայր բույսի տակ ընկնում են խոր հանգստի մեջ և լավ ձմեռում են։

Ցերեկվա ու գիշերվա տևողությունների հարաբերությունը որոշիչ ազդեցություն է թողնում նաև բույսերի չորադիմացկունության վրա, թուլացնելով կամ բարձրացնելով այդ կարևոր բիոլոգիական հատկությունը։ Մոշկով բալի, ակացիայի, լիմոնի և թեյի բուսակներն աճեցրել են նորմալ ջրային ռեժիմի պայմաններում, ըստ խմբերի տալով երկար, միջին և կարճ տևողության օր։ Որոշ ժամանակից հետո, երբ բույսերը կազմավորել են կանաչ տերևներ և որոշակի աճել, դրանց տեղափոխել են չերմոցային պայմաններ, միաժամանակ դադարեցնելով ջրումը։ Փորձերի արդյունքները ցույց են տվել, որ բույսերի մի մասը 15 օրվա ընթացքում թառամել է, մի այլ խումբ շարունակել է նորմալ կենսագործունեությունը։ Պարզվել է, որ չորադիմացկունություն են ցուցաբերել բոլոր այն բույսերը, որոնք ստացել են միջին երկարության օր (14—15 ժամ)։ Փորձերի ընթացքում միաժամանակ դրսևորվել է բույսերի մի այլ կարևոր բիոլոգիական հատկություն ևս։ Երբ 14—15 ժամվա պայմաններում աճեցված անհատները մի քանի անգամ ենթարկում ենք չորության ազդեցության (ամեն անգամ տերևները թառամելու շրջանում բույսերը ջրում ենք և ապա նորից ենթարկում չորության) 3—4 շաբաթվա ընթացքում դրանք կատարում են նորմալ տերևաթափ և հնարավորություն են ստանում դիմադրելու երկարատև չորության։ Նման հատկություն են ցուցաբերում նաև մշտադալար բույսերը, որոնց տերևների կյանքի տևողությունը գերազանցում է 2—3 տարուց։ Այս հանգամանքը ցույց է տալիս, որ մեծ չէ մշտադալար և տերևաթափ բույսերի տարբերությունը։ Արտաքին գործոնների փոփոխությամբ հնարավոր է երկարացնել կամ կարճացնել տերևների կյանքը։

Ֆոտոպերիոդիզմը մեծ ազդեցություն է թողնում նաև բույսերի իմունիտետի վրա, մեծացնելով կամ թուլացնելով նրանց պաշտպանողականությունը սնկային կամ այլ կարգի բակտերիալ հիվանդությունների հանդեպ։ Դեռ շատ վաղուց, մի շարք դիտողություններով հաստատված է, որ միևնույն բույսն աշխարհագրական տարբեր լայնությունների պայմաններում տարբեր դիմացկունություն է ցուցաբերում այս կամ այն սնկային կամ բակտերիալ հիվանդության հանդեպ։ Դրա հիման վրա բույսերի իմունիտետը բնականաբար վերագրվում էր միջավայրին։ Հետագայում գիտնականները, փորձարկելով տարբեր գործոնների ազդեցությունը իմունիտետի վրա, պարզել են, որ այդ պրոցեսում ոչ պակաս դեր է կատարում նաև օրվա տևողությունը։



Ուսումնասիրելով ալրացող սնկերով բույսերի վարակման կախվածությունը օրվա տևողությունից, բուսաբանները հաստատել են կարճ օրվա դրական և երկար օրվա բացասական ազդեցությունը։

Լուսային ռեժիմը նշանակալից ազդեցություն է թողնում բույսերի կենսագործունեության այլ պրոցեսների վրա, արագացնելով կամ դանդաղեցնելով այն։ Այս տեսակետից հազիվ թե հնարավոր լինի գտնել մի բույս կամ նրան հատուկ որևիցէ կենսական պրոցես, որն անփոփոխ մնա տարբեր ֆոտոպերիոդների ազդեցության պայմաններում։

Այս կարևորագույն բիոլոգիական երևույթի բազմակողմանի ուսումնասիրության վրա այժմ իրենց ուշադրությունն են կենտրոնացրել բազմաթիվ գիտնականներ՝ տարբեր երկրներում։ Նրանց առաջնահերթ խնդիրն է՝ պարզաբանել ֆոտոպերիոդիկ ռեակցիայի ներքին էությունը։ Այդ բնագավառում կատարված աշխատանքները մի շարք գիտնականների բերել են այն համոզման, որ ֆոտոպերիոդիկ ռեակցիայի հետևանքով տերևներում սինթեզվում են հորմոնալ բնույթի նյութեր, որոնք տեղափոխվելով դեպի աճման կոները, նպաստում են ծաղիկների և ապա սերմերի առաջացմանը։ Չնայած բիոլոգիական գրականության մեջ այդ եզրակացությունը պաշտպանում են մի շարք գիտնականներ, այնուամենայնիվ նրանց չի հաջողվել բույսերի մեջ հայտնաբերել այդ կարգի ֆիզիոլոգիական ակտիվ նյութեր։

Ուսումնասիրելով ֆոտոպերիոդիկ ռեակցիայի շնորհիվ բույսերի մեջ տեղի ունեցող բիոքիմիական փոփոխությունները՝ մանրակրկիտ ցույց է տրված, որ բազմաթիվ բիոքիմիական ռեակցիաներին զուգահեռ քանակական ու որակական փոփոխության են ենթարկվում սպիտակուցները և նրանց բաղադրիչ նյութերը՝ ամինոթթուները։ Նկատի ունենալով այն հանգամանքը, որ բույսի վրա առաջացող ամեն մի նոր բջիջ, հյուսվածք կամ օրգան կարող է հանդիսանալ միայն նոր որակի սպիտակուցների արդյունք և, միաժամանակ, հաշվի առնելով լուսային ռեժիմի դրական ազդեցությունը ամինոթթվային և սպիտակուցային նյութափոխանակության վրա, մեզ մնում է գալ այն համոզման, որ ֆոտոպերիոդիկ ռեակցիան իրականացվում է հենց նոր որակի սպիտակուցների սինթեզման ճանապարհով, որոնք այնուհետև առաջացնում են նոր կարգի բջիջներ ու նրանցից բաղկացած օրգաններ՝ ծաղիկներ, սերմեր և այլն։ Այս եզրակացությունն է՛լ ավելի է հավանական դառնում, երբ այն քննարկվում է մոլեկուլյար գենետիկայի նվաճումների տեսանկյունով։ Օրգանիզմի ժառանգական կոդը, ըստ այդ գիտության վերջին նվաճումների, հանդիսանում է բջջակորիզի քրոմոզոմների մեջ եղած դեզօքսիռիբոնուկլեինային թթուն (ԴՆԹ)։ Այդ այն պլանն է, որի հիման վրա ամեն մի սերունդ զարգացնում է իր նմանը։ Նրա մեջ պարունակվող բազմապիսի ինֆորմացիաները բջիջների և նրանց մեջ եղած քրոմոսոմների բաժանման ժամանակ հաղորդվում են սերնդից սերունդ։

Բջջի մեջ, բացի ԴՆԹ-ից հայտնաբերված է նաև մի այլ բարդ պոլիմեր՝ ռիբոնուկլեինային թթու (ՌՆԹ), որը հանդիսանալով սպիտակուցների սինթեզման տառամայր, կազմավորում է բջջի մեջ եղած ԴՆԹ-ի ժառանգական ինֆորմացիայի համապատասխան սպիտակուց։ Նոր կազմավորվող սպիտակուցները հետագայում որոշում են բջիջների հյուսվածքների, օրգանների ու ամբողջական օրգանիզմի կառուցվածքի ու ֆունկցիաների առանձնահատկությունները։ Մի խոսքով ժառանգական գեները համապատասխան սպիտակուցներ առաջացնելու ճանապարհով ապահովում են նոր օրգանիզմի կառուցվածքի ու կենսագործունեության առանձնահատկությունները։

Այս բոլորից հասկանալի է դառնում, որ, ինչպես բույսի ֆոտոպերիոդիկ պատկանելությունը, այնպես էլ այս կամ այն լուսային ռեժիմի պայմաններում ծաղիկների ու սերմերի հիմնադրումը պետք է պայմանավորված լինեն համապատասխան ամինոթթուների և, այնուհետև, սպիտակուցների սինթեզմամբ։ Ամեն մի նոր որակի օրգանի հիմքում, որպես օրենք, ընկած են նոր որակի սպիտակուցներ։ Այստեղից հետևում է, որ ծաղիկների ու սերմերի առաջացումը ոչ թե հորմոնների, այլ նոր սպիտակուցների արդյունք կարող է հանդիսանալ։

Գիտությունը քայլ առ քայլ առաջ է ընթանում բիոլոգիայի բոլոր բնագավառներում։ Այսպիսի համընթաց զարգացման պայմաններում հեռու չէ այն ժամանակը, երբ լրիվ կպարզաբանվի բույսերի կենսագործունեության այս հետաքրքրական և առեղծվածային կողմը, դրանով իսկ հնարավորություն կստեղծվի լրիվ օգտագործելու և ղեկավարելու բույսերի աճման ու բերքատվության պրոցեսները։

# ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

## ՄԱՏԵՐԻԱՅԻ ԱԿՏԻՎՈՒԹՅՈՒՆԸ, ԴԻՆԱՄԻԿՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՕՐԵՆՔԻ ՕՐԻՆԱՉԱՓՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԸ

Սևանի շրջանի մեր ընթերցող Վ. Աբրահամյանը հարցնում է. ո՞րն է մատերիայի փիլիսոփայական ըմբռնումը:

Հարցին պատասխանում է Երևանի համալսարանի դասախոս, պրոֆեսոր Գ. ՎԱՐԴԱՊԵՏՅԱՆԸ:

*Մատերիայի լենինյան սահմանումը ամուր կռվան հանդիսացավ որոնող, պրպտող մտքի համար. «Մատերիան փիլիսոփայական կատեգորիա է՝ նշանակելու համար օբյեկտիվ ռեալությունը, որը տրված է մարդուն նրա զգայությունների մեջ, որ պատճենվում է, լուսանկարվում, արտապատկերվում է մեր զգայությունների միջոցով, գոյություն ունենալով նրանցից անկախ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 14, էջ 161):*

*Գիտական հարուստ տվյալներով մարքսիզմ-լենինիզմի կլասիկները լիովին հիմնավորեցին այն, որ մատերիան գիտակցությունից անկախ օբյեկտիվ ռեալություն է: Այսպիսի սահմանման դեպքում նյութական աշխարհը ներկայանում է իր ամբողջ նշանակությամբ, իր անխախտ հիմնավորությամբ և դրանով էլ հաղթահարվում են ռեալ աշխարհը նվաստացնելու, քամահրելու բոլոր կարգի փորձերը: Մատերիայի օբյեկտիվ ռեալության փաստը ժխտող ժամանակակից իդեալիստների «նոր թեորիաները» սնանկ են: Պնդում են, որ ատոմն ապամատերիական է: Որոշ գիտնականներ՝ Ջեմս Ջինսը և ուրիշներ, մատերիայի «ակտիվությունն» այնպես են ներկայացնում, որ նա ի վերջո պետք է սպառվի: Ջեմս Ջինսը գրել է. «Մասսայի փոխարկումը ճառագայթի հանդիպում է ամենուրեք, իսկ հակառակ փոխարկումը՝ ոչ մի տեղ: Մատերիան չի կարողանում առաջանալ ճառագայթումից, իսկ քայքայված ռադիոակտիվ ատոմները չեն կարող վերականգնվել: Տիեզերքի մեքենան մշտապես բեկբեկվում է, կոտրվում և քայքայվում, իսկ նրա ռեկոնստրուկցիան անհնար է»:*

*Գիտնականն անտեսում է ամենից առաջ մատերիայի մշտնջենական ուժի ակունքը —* էներգիայի պահպանման օրենքը: *Նա միայն տեսնում է* սպառում, *բայց չի տեսնում ստեղծագործական բարձրացող պրոցեսներ, որոնք վկայում են մատերիայի մշտական ակտիվության փաստը: Իբր թե մատերիան և էներգիան անզսպելի ուժով ցրվում են տիեզերքի դատարկության մեջ: Տարօրինակն այն է, որ գիտնականը պնդում է այնպիսի մի բան, որը գիտությունը վաղուց*



*մերժել է. գիտության համար այբբենական ճշմարտություն է այն, որ «դատարկություն» հասկացությունը խիստ հարաբերական է: Մատերիան ոչ մի ձևով չի սպառում և չի կարող սպառել իրեն. նա հավերժորեն ձևափոխությունների, նորի ստեղծման պրոցեսների մեջ է գտնվում: Հայտնի է Կլաուզիուսի «էնտրոպիայի» տեսակետը, ըստ որի էներգիայի այն մասը, որ արդեն փոխարկված է ջերմության և կուտակված է ավելի սառը մարմինների մեջ, անդարձ կերպով կորսված է հետագայում աշխատանք կատարելու տեսակետից: Էնտրոպիայի տեսակետը հիմնավոր ձևով քննադատել է Էռնստ Հեկկելը իր «Տիեզերական առեղծվածները» հայտնի աշխատության մեջ: Նա գրել է. «Տիեզերքը չունի սկիզբ ճիշտ այնպես, ինչպես որ չունի վերջ: Ինչպես որ տիեզերքն անսահման է, այնպես էլ նա մնում է հավիտենական շարժման մեջ. կենդանի ուժի փոխարկումը առաձգականին և ընդհակառակը, տեղի է ունենում անդադար կերպով և այդ ակտուալ ու պոտենցիալ էներգիաների գումարը մնում է շարունակ նույնը» (Տիեզերական առեղծվածներ», էջ 217):*

*Գիտնականը դիպուկ նշում է, որ ամբողջ տիեզերքը ներկայանում է որպես մի համայնապարփակ* perpetuum mobile: *Երբ հստակ և գիտականորեն ըմբռնում ենք մատերիալ աշխարհի ակտիվությունը, դինամիկությունը, այն ժամանակ հիմնավոր ձևով է մեզ ներկայանում տիեզերքում գործող վերընթաց գիծը: Հանճարեղ ինտուիցիայով մեծ գրողները դեռևս մինչև գիտության բարձր աստիճանը զգացել են, որ ամեն ինչը բնության արգանդից է իր սկիզբն առնում: Այս տեսակետից շատ բնորոշ են Շեքսպիրի հետևյալ տողերը.*

*Համայնական մայր,*<br>
*Դու, որի անծայր արգանդը ծնում,*<br>
*Եվ որի անհուն կուրծքը սնում է ամե՛ն, ամե՛ն ինչ,*<br>
*Դու, որ նյութից, որից ստեղծված է*<br>
*Քո գոռոզ որդին՝ մարդն ամբարտավան,*<br>
*Արտաբերում ես և՛ սև դոդոշը, և՛ կապույտ լորտուն,*<br>
*Ոսկեզօծ մողեսը և ժահրոտ իժը առանց աչքերի,*<br>
*Բոլոր գարշելի ծնունդների հետ, վառ երկնքի տակ,*<br>
*Որի երեսին հիպերոնի ջերմ ու կենդանարար*<br>
*Կրակն է փայլում:*

*Մատերիայի դինամիկությունը որոշակի երևաց այն շրջանից սկսած, երբ մարդկային միտքը խորամուխ եղավ ռադիոակտիվության երևույթների մեջ: Պարզվեց, որ ատոմի կենտրոնում տեղավորված է* նյութական *միջուկը, որի տրամագիծը մոտավորապես հարյուր հազար անգամ փոքր է ատոմի տրամագծից: Միջուկն ունի դրական լիցք, դրականապես լիցքավորված միջուկի շուրջը պտտվում են էլեկտրոնները: Ատոմների միջուկներն իրենց հերթին կազմված են պրոտոնից և նեյտրոնից, և դրանք իրար հետ սերտորեն շղթայված են:*

*Մատերիան* անսպառ է, անսահման է *ինչպես իր մակրո, նմանապես իր միկրո արտահայտությունների մեջ: Մատերիալ աշխարհի վիթխարիությունը, անընդգրկելիությունը ցույց տալու համար նշենք գալակտիկայի չափերը. լույսը գալակտիկայի մի ծայրից մյուսը կարող է անցնել մոտ 80.000 տարում: Բ. Ա. Վորոնցով-Վիլյամինովը «Ակնարկներ տիեզերքի մասին» իր գործում*

նշում է, որ միայն մեր աստղային համակարգության մեջ, որ գալակտիկա է կոչվում, կա հարյուր միլիարդից ավելի աստղ։ Ուշադրության է արժանի այն, որ ենթադրվում է, թե միջին հաշվով ամեն մի աստղը հավասար է արեգակի զանգվածին...

Գտնում են, որ գալակտիկայի տրամագիծը մոտավորապես հավասար է 100 հազար լույսի տարվա... Այսպիսի երևույթ պատկերացնել անհնարին է, բայց գիտական ելակետից հասկանալ հնարավոր է։ Նշվում է, որ գոյություն ունեն շատ աստղեր, որոնց զանգվածները շատ անգամ գերազանցում են արևի զանգվածը։ Բնորոշ է այն, որ զարգացման բոլոր աստիճաններում, բոլոր կարգի փոփոխությունների դեպքում անխախտ է մնում ներքին միասնությունը անսահման մեծության և անսահման փոքրության միջև։ Մատերիան իրոք իր շարժունությամբ ու ակտիվությամբ գերազանցում է ամենահամարձակ երևակայությանը։ Այդ ակտիվությունն առանձնապես շատ մեծ և նշանակալից է միկրո աշխարհում։ Գիտնականները փորձել են ակնառու, պատկերավոր ձևով արտահայտել նյութի մասնիկների անպատկերելի չափերը։ Այսպես, օրինակ, երբ լուցկու տուփի վրա անցք բաց անենք և պատկերացնենք, որ այդ անցքով ամեն մի վայրկյանում թռչում են 10 հազար մոլեկուլ, ապա վերջին մոլեկուլը տուփից դուրս կթռչի 300 միլիոն տարուց հետո... Գիտնականները գտել են, որ ոսկու մանրագույն հատիկի (ուլտրամիկրոսկոպի օգնությամբ հազիվհազ նշմարվող) մեջ պարունակվում է երեք ու կես միլիոնից ավելի ատոմ։ Ջրածնի ատոմի տրամագիծն այնքան փոքր է, որ դժվար է թվերի միջոցով արտահայտել. հաշվում են սանտիմետրերի մեկ հարյուրմիլիարդերորդ... Մակրո և միկրո աշխարհի նույն օրինաչափությունը մենք տեսնում ենք նաև օրգանական կյանքում։ Այսպես, օրինակ, մանրէները այն աստիճան փոքր են, որ մի խորանարդ միլիմետրի վրա տեղավորվում են 633 միլիոն։ Նշվում է, որ դրանցից 636 միլիարդը ընդամենը ունի մեկ գրամի ծանրություն... Անսահման մեծությունը և փոքրությունը հարուստ են ներքին ազդակներով. էլեկտրոնն իր օրբիտայով ամեն մի վայրկյանում պտտվում է մի քանի բիլիոն անգամ...

Հարց է առաջանում, ինչպե՞ս կարելի է ներքին վիթխարի ուժով, դինամիկությամբ օժտված նյութական ռեալ աշխարհը մակաբերել «դրսում» եղած ինչ-որ վերացական ուժից։ Ինչպե՞ս կարելի է բնությունը համարել բացարձակ իդեայի «այլակեցությունը»։ Ըստ Հեգելի իրական աշխարհը ինչ-որ նախահավիտենական «բացարձակ իդեայի» իրագործումն է։ Այդ նշանակում է, որ մարդկային միտքը իրական աշխարհի միջոցով իմանում է ինչ-որ վերացական իդեայի հատկությունները։ Հասկանալի է, որ աշխարհի նման բացատրությունն ըստ էության կրոնական է։

Դեպի իդեալիզմը հակվող ժամանակակից գիտնականները (դրանց մեջ կան շատականավոր դեմքեր) փաստերի ուժով ընդունում են մատերիալ աշխարհին ներհատուկ ակտիվությունն ու դինամիկությունը, սակայն մի այնպիսի պայմանով, որ նյութի ակտիվությունն ու դինամիկությունը զրկվում է ստեղծող, առաջ բերող, բարձրացող նշանակությունից։ Ավելին՝ ակտիվությունն ու դինամիկությունն այնպես են ներկայացվում, որ մատերիան զրկվում է իր բոլոր էական գծերից, հատկանիշներից։ Մակրո աշխարհը լուծում են միկրո աշխարհի մեջ, իսկ այս վերջինն էլ բնորոշում այնպես, որ ոչ մի կայունություն, որոշակիություն չի ընդունվում։ Այսպես, օրինակ, միկրո աշխարհում ժխտվում է օրենքը։ Հեգելն իր ժամանակին լավ է ցույց տվել, որ օրենքի



հասկացությունը մարդկային իմացության աստիճաններից մեկն է, որով ճանաչվում են միասնությունն ու կապը, համատիեզերական պրոցեսների փոխադարձ կախումն ու ամբողջականությունը։ Օրենքը համընդհանուրի շարժման կականի արտացոլումն է։ Հանճարեղ մտածողը, որը շատ ակտիվ պաշտպանում էր աշխարհի դինամիկության սկզբունքը, չէր կասկածում, որ երևույթների աշխարհում առկա է հարաբերական հանգիստը. ըստ Հեգելի օրենքների թագավորությունը կապվում է հենց երևույթների հանգիստ բովանդակության հետ։ Ամերիկյան ֆիզիկոսների շրջանում տարածված «теория дополнительности» տեսակետի համաձայն միկրո աշխարհի երևույթները ժամանակից և տարածությունից դուրս են, ուստի և չեն ենթարկվում և չեն կարող ենթարկվել պատճառականության, օրինաչափության օրենքներին։ Այնպես են դուրս բերում, որ միկրոմասնիկների հատկություններն առաջանում, ստեղծվում են դիտման սարքերի միջոցով և ամբողջովին կախված են դրանցից։ Ստացվում է, որ միկրո աշխարհում պատճառական ռեալ կապեր գոյություն չունեն. դրանք ստեղծվում են մեր մտածողության կողմից։ Ֆիզիկոս Վ. Հայզենբերգը գտել է, որ միջուկային ֆիզիկայում օրինաչափություն չպետք է փնտրել։ «Միջուկային ֆիզիկայի փիլիսոփայական պրոբլեմները» գրքում նա շեշտել է այն դրույթը, որ միջուկային ֆիզիկայում պատճառականության ու օրինաչափության և նյութի զարգացումը տարածության ու ժամանակի մեջ սկզբունքները կորցրել են իրենց նշանակությունը։ Պատճառականության օրենքը համարում են անցյալի մնացուկ։

Քիմիայում գործող «ռեզոնանսի» տեսակետի որոշ կողմնակիցներ ուղղակի պնդում են, թե քիմիական ֆորմուլաները չեն արտացոլում մոլեկուլների իրական կառուցվածքը։ Ամերիկյան քիմիկոս Ուէլանդը շեշտել է. «Ռեզոնանսի իդեան հայեցողական կոնցեպցիա է։ Նա չի արտացոլում իր՝ մոլեկուլի ներքին որևէ հատկություն, այլ մաթեմատիկական մի եղանակ է, որը հնարվել է ֆիզիկոսների կամ քիմիկոսների կողմից իրենց սեփական հարմարության համար»։

Ֆրանսիական նշանավոր մտածող, գիտնական Պոլ Լանժևենն շատ խիստ քննադատել է նման տեսակետները։ Գիտությունն իր ճանապարհից շեղող ուժը սոցիալ-դասակարգային տեսանկյուն է։ Դեռևս Գերցենն իր ժամանակին լավ է նշել. «Գիտությունը, որ ճշմարիտ գիտելիքից բացի, որևէ այլ նպատակ ունի՝ գիտություն չէ» (Ա. Ի. Գերցեն, Եղելություններ և խոհեր, Բ. էջ 163, 1952 թ.)։

Գիտությունը չէր կարող շարժվել, խորանալ և հարստանալ, եթե միկրո աշխարհը զրկված լիներ էությունից։ Մարդկային միտքը կատարելագործվում են ինչպես մակրո, այնպես էլ միկրո աշխարհի վերաբերյալ. իսկ դա արդեն վկայությունն է միկրո աշխարհի բովանդակության օբյեկտիվության։ Պոլ Լանժևենն օբեկտիվ աշխարհի ռեալությունը ժխտող տեսակետը որակել է որպես «ինտելեկտուալ ապականություն»։ Միկրո աշխարհն անշուշտ նոր կողմեր է ցույց տալիս, դրսևորվում է շատ բարդ արտահայտությունների մեջ, բայց ոչ մի դեպքում մի կողմ չի հրում կամ հերքում աշխարհի օրինաչափությունները։ Ճիշտ մեթոդոլոգիայով ղեկավարվող գիտնականների համար անխախտ է մնում մարքս-լենինյան այն հիմնարար դրույթը, որ օբյեկտիվ աշխարհն, իր ամբողջության մեջ վերցրած, օրինաչափ է և ճանաչելի։

Լանժևենն ընդգծում է, որ մենք ընդունում և նշում ենք, որ այն կոնցեպ-

ցիաները, որոնք արդարացրել են իրենց մակրո աշխարհում, անբավարար են բացատրելու միկրո աշխարհը. «Մենք տեսնում ենք, որ մեզ շրջապատող աշխարհն անհամեմատ ավելի հարուստ է, քան այդ երևակայում էր Պասկալը, որը միկրոաշխարհը պատկերացնում էր որպես մակրո աշխարհի պատճենը: Այդ տեսակետից մենք բոլոր մարզերում գործ պետք է ունենայինք ռեալության այն ասպեկտների հետ և ամենուրեք գործադրեինք այն պատկերացումները: Մինչդեռ իրականությունն անհամեմատ ավելի բազմազան է: Ամեն մի մարզը, որտեղ մենք մտնում ենք, մեր առաջ բաց է անում նոր ճշմարտություններ և պահանջում է մեզնից տեսական մտածողության նոր կոնստրուկտիվ ջանքեր» (տե՛ս Р. Гароди, Вопросы марксистско-ленинской теории познания, стр. 51):

Դ. Ի. Մենդելեևը 1869 թվականին հայտնագործեց քիմիական էլեմենտների պարբերական օրենքը: Ցույց տրվեց և հիմնավորվեց, որ քիմիական բոլոր էլեմենտները միմյանց հետ օրինաչափորեն կապակցված են: Թափանցելով քիմիական էլեմենտների օրինաչափության մեջ՝ Մենդելեևը կարողացավ կանխագուշակել մինչ այդ անհայտ նոր, մի շարք էլեմենտների գոյությունը: Եթե միկրո աշխարհի դինամիկությունը շեմքից մերժեր օրենքի, օրինաչափության սկզբունքը, ապա այդ դեպքում գիտական միտքը չէր կարողանա նորանոր հորիզոններ որոնել: Դա օրինաչափությունների, պատճառական կապերի խորիմացությունն է, որ խթանում է մարդկային միտքը և առաջ շարժվելու հնարավորություն տալիս: Բնորոշն այն է, որ մարդկային միտքը խորանում է երկու՝ միկրո և մակրո գծով: Այդ երկու գծերը փոխադարձաբար իրար արգասավորում են: Ներկա շրջանում մարդկային միտքը շատ մեծ չափերով առաջ է շարժվել տիեզերական երևույթների, աստղերի ծագման և ճանաչման ուղղությամբ: Հետազոտությունները պարզեցին, որ մեր աստղային սիստեմի՝ գալակտիկայի կյանքի ներկա դարաշրջանում շարունակվում է աստղերի գոյացման պրոցեսը: Ակադեմիկոս Վ. Համբարձումյանն այս դրույթի կարևորությունն ուժգին շեշտում է: Գիտականորեն հերքվում է այն հին տեսակետը, ըստ որի գալակտիկայի բոլոր աստղերն առաջացել են միաժամանակ:

Թափանցելով միկրո աշխարհի էական, օրինաչափ կապերի մեջ՝ գիտնականները փորձ են անում երկրի վրա ստեղծել ջերմամիջուկային կառավարվող ռեակցիաներ: Դա արդեն հնարավորություն կտա ստանալու անսահմանափակ ճանակությամբ էներգիա: Գիտությունը առողջ, մարդկային կյանքին նպաստող հիմունքներով զարգանալու շատ մեծ հնարավորություններ ունի, եթե այդ ճանապարհին չլինեին կապիտալիստական աշխարհի ռեակցիոն շրջանների չարանենգ մոլուցքները, որոնց նպատակն է հիմնահատակ անել աշխարհը: Պատահական բան չէ, երբ Ամերիկայում փորձում են լուսնի վրա ռազմական բազա ստեղծել երկիրը ռմբակոծելու համար, լուսինը դարձնել ատոմային պոլիգոն: Խոսում են լուսնի «ստրատեգիական առավելությունների» մասին: Անկասկած, որոշակի է այն, որ մոնոպոլիստների տիրապետությունը շեղում է գիտությունը իր իսկական ճանապարհից: Սոցիալ-դասակարգային տեսանկյունից մոտենալով հարցին, հասկանալի է դառնում թե ինչու մինչև իսկ հռչակ. անուն ունեցող որոշ գիտնականներ բռնադատում են փաստերը: Գիտնականը՝ գիտակցի թե չգիտակցի այդ, բայց այդպիսի երևույթներն իրենց ակունքն ունեն այն բանի մեջ, որ գիտությունը հարմարեցվում է ռեակցիոն դասակարգերի նպատակադրումներին: Միկրո աշխարհի կապերի մեջ խորանալու երևույթը մեկ-



նաբանվում է այնպես, որ իբր թե այլևս ոչ մի օրենք, օրինաչափություն չի կարող լինել, որ իբր թե մատերիալիստական փիլիսոփայությունը լիկվիդացվում է, դառնում է ժամանակավրեպ երևույթ: Օրենքի, օրինաչափության վերացումը իրերի աշխարհից հեշտացնում է սևը և սպիտակը իրար հետ խառնելու փորձը: Այսպես, օրինակ, ֆիզիկոս Իորդանը «XX դարի ֆիզիկան» գրքում գտնում է, որ աշխարհի իր կոնցեպցիան ապահովում է «մատերիալիզմի լիկվիդացիան» և «երաշխավորում է կրոնի համար կենսական տարածություն՝ գիտական մտքի հետ բախման մեջ չմտնելով»:

Գիտության այսպիսի բարձր աստիճանի վրա, երբ մատերիալ աշխարհի վիթխարամեծությունը, հզորությունը, կարողությունը, նորանոր աստիճաններ, գրադացիաներ ստեղծելու հնարավորություններն ակնբախ են դառնում՝ բուրժուական երկրների երբեմնի ականավոր գիտնականներն այնպիսի մտքեր, իդեաներ են արտահայտում, որ հարյուրամյակներ առաջ էլ կարող էին շատ տարօրինակ, անընդունելի երևալ և հանդիպել պրոգրեսիվ շրջանների հարվածին: Խոսում են, գրում են ինչ-որ «միջսուբյեկտիվության» մասին: Պոլ Լանժևենն այդ մասին գրել է. «Ես գտնում եմ, որ դժվար է լինել ֆիզիկ փորձարար չհավատալով ո՛չ միայն մյուս ֆիզիկոսների, այլև աշխարհի ռեալությանը: Իսկ եթե իմաստից զուրկ են համարում արտաքին աշխարհի ռեալության հաստատումը... Եթե խոսում են «միջսուբյեկտիվության» մասին, ապա ես խոստովանում եմ, որ իրականության մեջ տեսնում եմ սուբյեկտիվություն, սակայն ես չեմ հասկանում, թե ինչպես կարելի է խոսել միջսուբյեկտիվության մասին...»[1]: «Միջսուբյեկտիվությունը» դա գերբնական ուժի մի այլ անվանում է: «Իմաստից զուրկ համարել արտաքին աշխարհի ռեալության հաստատումը»— իդեալիստական այս դրույթը թափանցել է գիտության բնագավառը: Նորաբարության դրոշով հանդես եկող բուրժուական իդեոլոգները արտաքին աշխարհի ռեալության երևույթը համարում են «գիտական բալաստ» կամ էլ դեգրադացիա... Այստեղից էլ հետևում է, թե օբյեկտիվ ճշմարտություն գոյություն չունի. ամեն մեկը որոնում և ուզում է գտնել այն, ինչ նրան օգուտ է բերում (այս ուղղությամբ պրագմատիստները զգալի ազդեցություն ունեն գիտական որոշ շրջանների վրա): Իբր թե կարելի է աշխարհի «խորհրդավոր» գաղտնիքներին հաղորդակից լինել հոգևոր էկզալտացիայի միջոցով:

Արդեն նշել եմ, որ բուրժուական աշխարհի պրոգրեսիվ մտածողները, գիտնականներն սկսել են հասկանալ, որ մարդկության մեծ ճանապարհը լուսավորող ուժը՝ դա մարքս-լենինյան փիլիսոփայությունն է: Անգլիական նշանավոր գիտնական Ջոն Բեռնալը շատ որոշակի ասել է. «Այժմ, ինտելեկտուալ անկումի ժամանակաշրջանում, հաստատուն և անխախտ կանգնած է Մարքսի փիլիսոփայությունը: Իր ծագման և բնույթի շնորհիվ նա անխոցելի է այն կործանարար ուժերի համար, որոնց չկարողացան դիմանալ մյուս փիլիսոփայական սիստեմները: Դրա պատճառն այն է, որ նա բանական է, գիտական է և համապարփակ» (Ջ. Ի. Բեռնալ, «Գիտությունը և հասարակությունը», էջ 47):

Իրոք, որքա՜ն դիպուկ և ճիշտ է նկատել Լենինը, ասելով՝ կապիտալիստական աշխարհի շատ գիտնականներ փաստական, մասնագիտական հետազոտությունների բնագավառում կարող են արժեքավոր նյութեր տալ, սակայն երբ նրանք փորձում են փիլիսոփայական ընդհանրացումների դիմել, մեծ չա-

[1] Տե՛ս Р. Гароди, Вопросы марксистско-ленинской теории познания, стр. 55:

միերով տուրք են տալիս իդեալիզմին։ Լենինը շեշտում է պարտիական սկզբունքը հասարակական գիտակցության բոլոր ձևերի մեջ։

Աշխարհում կա նաև «Գիտնական գործակատար»... գիտնականների սուբյեկտիվիզմը սոցիալ-դասակարգային արմատ ունի։ Մի՞թե սոսկ անհատական մոլորություն է այն, որ բուրժուական աշխարհի պատմաբաններից շատերը պնդում են, թե պատմաբանի միակ խնդիրն այն է, որ միայն նկարագրի փաստերը, ոչ մի օրենք, օրինաչափություն գոյություն չունի... փիլիսոփաներն ի դեմս սեմանտիկների դեն են գցել ճշմարտության որոնման պահանջը, իրենց խնդիրը միայն տեսնում են լեզվական հարցերով զբաղվելու մեջ։ Տնտեսագետներն իրենց մտքի ճկունությունը գործադրում են այն ուղղությամբ, որպեսզի ցույց տան, թե ժամանակակից ատրճանում բեվեռներն այնքան են մոտենում, որ խստիվ ասած բևեռ այլևս չի մնում. կատարվում է էկամուտների «նիվելիրովկա»... Ամեն կերպ ջանում են այնպես դուրս բերել, որ ժամանակակից կապիտալիստական երկրներում ջնջվում են սոցիալական տարբերությունները, և բացվում է հարմոնիայի դարաշրջանը... Հայտնի է, որ մորգանները, ռոկֆելլերները, դյուպոնները և ուրիշ միլիարդատերեր հսկում և ուղղություն են տալիս գիտական մտքին։ Իր ժամանակին մեծ մտածող Բելինսկին նկատել է, որ գիտության իսկական խնդիրն է լավացնել և հեշտացնել կյանքը, ընդարձակել մարդու հոգևոր հզորությունը։ Գիտությունն իրոք օր-օրի ավելի ու ավելի պետք է մոտենա կյանքին։ Սովետական երկրի գիտնականների պրակտիկան այդ է հաստատում։

Մեծ մտածող Բելինսկու համոզմունքը իրական գիտության նկատմամբ իրականացվում է այն աշխարհում, որտեղ աշխատող մարդը ձեռք բերեց դարերի ընթացքում կորցրածը՝ պատիվ և հարգանք։

Բելինսկին շեշտել է. բանականությունը հենվելով բնության ուժերի վրա՝ «փոխում է կլիմաները, չորացնում ճահիճներն ու տունդրաները, պարարտացնում ավազուտ տափաստանները և թե՛ մեկի, թե՛ մյուսի վրա առաջացնում բուսական աշխարհի ճոխությունն ու պերճանքը, հրամայում է ջրին հոսել այնտեղ, որտեղ չկար, և ջրանցքներով միացնում է բնության անջատած ծովերը, լճերն ու գետերը, նրա գուրգուրած ծաղիկն ավելի գեղեցիկ ու հոտավետ է, քան վայրի աճող ծաղիկը, ջուրն ու քամին հլու աշխատում են նրա մեքենաների վրա, աղում ու սղոցում» (Վ. Ի. Բելինսկի, Փիլ. ընտիր երկեր, հ. 1, էջ 446)։

Գիտության դերն ու նշանակությունը մեծ ուժով են դրսևորվում՝ պրակտիկայի հետ սերտորեն կապված։ Գիտության դերն այն չէ, որ կաշկանդի մարդուն, բարդություն ու խճճվածություն ստեղծի, այլ ազատագրի մարդուն և դրական խթաններ տա։

Ե՛վ բնության, և՛ հասարակության մեջ գիտության խնդիրն է՝ բացահայտել և ճանաչել էական կապերն ու փոխհարաբերությունները, իսկ դա, իր հերթին, կապվում է օրենքի, օրինաչափության սկզբունքի հետ։

Դարվինն իր ժամանակին շեշտել է այդ դրույթը. նա ցույց է տվել և ապացուցել, որ բնության մեջ ամեն ինչ, ինչպես և ամեն մի երևույթ պայմանավորված է բնական օրինաչափություններով։ Բուրժուական աշխարհի շատ գիտնականներ գտնում են, որ հենց գիտության մեջ կատարված վիթխարի թռիչքը գիտություններից դուրս մղեց օրենքի և օրինաչափության սկզբունքը։ Սակայն փաստը մնում է փաստ, որ պրոգրեսիվ հայացքները պաշտպանող բուրժուա-



կան աշխարհի շատ գիտնականներ գտնում են, որ ինչպես մակրո, այնպես էլ միկրո աշխարհը շարժվում, զարգանում է օբյեկտիվ օրենքներով։ Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների հիմնարար դրույթները ամբողջովին պահպանում են իրենց ուժը։

Էնգելսը շատ կապակցությունների մեջ շեշտել է, որ տարակույսի ստվեր անգամ չի կարող լինել այն մասին, որ բնության և հասարակության մեջ գործում են օրենք, օրինաչափություն, պատճառականություն, անհրաժեշտություն և այլն։ Այս պատճառով էլ, ըստ Էնգելսի, արտաքին աշխարհի և մարդկային մտածության շարժման ընդհանուր օրենքներն, ըստ էության, նույնական են. մարդկային միտքը ոչ թե հորինում է, այլ արտացոլում իրենից դուրս գտնվող կապերն ու կապակցությունները։ Այս տեսակետից էլ պարզ է դառնում, որ գիտության մեջ գործող օրենքները օբյեկտիվ պրոցեսների արտացոլումն են։ Մարդիկ կարողացել են և գնալով ավելի ու ավելի են կարողանում հայտնագործել նորանոր օրենքներ, ճանաչել դրանց հատկությունները, հաշվի նստել դրանց հետ և իրենց նպատակների համար օգտագործել։

Դեպի իդեալիզմը հակվող գիտնականներն իրական անհրաժեշտության փոխարեն խոսում են «տրամաբանական անհրաժեշտության» մասին, Լենինի դիպուկ արտահայտությամբ՝ դեպի իդեալիզմը հակվող ֆիզիկոսները բնության օրենքները դիտում են որպես հասարակ պայմանականություն։ Այսպես, օրինակ, գիտնական Բորը կարծում էր, որ ատոմային ֆիզիկայի բնագավառում սուբյեկտն ու օբյեկտը այլևս չի կարելի իրարից ջոկել. օբյեկտիվության պահանջը հրապարակից դուրս է մղվում։ Յորդանը գտնում է, որ ֆիզիկական էքսպերիմենտում հետազոտողը չի ուսումնասիրում օբյեկտիվ ռեալությունը, այլ պարզապես, «նախապատրաստում է ֆիզիկական ռեալությունը»։

Ժամանակակից աստիճանում տիեզերքի յուրացման գործում խիստ մեծացել է գիտությունների՝ մաթեմատիկայի, աերոդինամիկայի, ֆիզիկայի նշանակությունը։ Գիտությունների դերի և նշանակության մեծացումը ո՛չ միայն ստվեր չգցեց օրենքների և օրինաչափությունների սկզբունքի վրա, այլև ակնառու ձևով ապացուցեց դրանց գոյության փաստը։ Այս ամենից պարզ երևում է, որ միկրո աշխարհի խիստ դինամիկ բնույթը ոչ մի չափով կասկածի տակ չի կարող դնել նյութական աշխարհի օբյեկտիվության հարցը, որի հետ էլ կապվում է օրենքի, օրինաչափության սկզբունքը։ Շարժումը՝ ինչ չափերով էլ այն արտահայտվի, իր մեջ առնում է հարաբերական հանգստի, հարաբերական կայունության մոմենտը։ Ամենամեծ արագության դեպքում էլ երևույթները դեմք ունեն. աշխարհը անորոշ և հեղհեղուկ բան չէ։ Ձևաստեղծումները, գրադացիաները կապվում են նյութի ներքին ակտիվության, դինամիկության հետ։ Կյանքի երևույթները չէին ստեղծվի, եթե նյութական աշխարհը չունենար շարժման ու զարգացման ներքին խթաններ։ Նյութի ակտիվությունն ու դինամիկությունը որոշակի հիմք են տալիս մարդկանց՝ մտածելու, որ վիթխարամեծ տիեզերքի անսահմանության մեջ տարբեր կետերում կարող են լինել նաև բանական էակներ։ Նյութը հարատևորեն գտնվում է առաջացման և ստեղծման պրոցեսների մեջ։ Դրանով փակվում է իդեալիզմի և կրոնի շարժման ճանապարհը։

# Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

## ՄԵՐ ԱԿԱՆԱՎՈՐ ՄԱՆԿԱՎԱՐԺ ՀՈԳԵԲԱՆԸ

(Պրոֆ. Գ. Էդիլյանի ծննդյան ութսունամյակի առթիվ)

Եթե կան այսօր դեռևս այնպիսի մարդիկ մեր լուսավորության ականավոր գործիչների, սովետահայ մշակույթի երախտավորների թվում, որոնց անունը քիչ է ծանոթ նոր սերնդին, ապա դրանցից մեկը պրոֆեսոր Գուրգեն Էդիլյանն է: Իրոք որ կարկառուն դեմք է նա՝ իր մարդկային անհատականությամբ, թե՛ իբրև գիտնական և թե իբրև սոցիալիստական երկրի քաղաքացի:



Մանկությունն անց կացնելով հայրենի Քարվանսարա գյուղում (ներկայիս Իջևան քաղաքը), նա մինչև կյանքի վերջն էլ պահպանել էր ինչ-որ բան այդ միջավայրի մարդկանց լավագույն հատկանիշներից, ինչ-որ պարկեշտություն և անմիջականություն, վճիտ ակնվություն ու նույնիսկ նահապետականություն, անդադրում աշխատասիրություն ու բնության խանդավառ պաշտամունք. և ուր էլ որ լիներ, ինչ հանգամանքներ էլ շրջապատեին նրան, միշտ ջերմությամբ ու գորովանքով էր հիշում նա, Աբովյանի խոսքով ասած՝ «ոսկեղեն ավուրք մանկության»:

Հայրական տնից դուրս գալով, նա բռնում է ուսումնասեր ու շնորհաշատ գեղջուկ տղայի ճանապարհը, որ այնքա՜ն հատկանշական է հայ դեմոկրատ լուսավորիչներից շատերի համար: Ներսիսյան դպրոց, ապա գերմանական համալսարանները՝ Լայպցիգ և Իենա: Օգնում են ծնողները, ազգականները, պատանու ձիրքը գնահատող բարեկամները: Բարձրագույն կրթությունը, այնուհանդերձ նա ավարտում է Բեռնում, նախընտրելով, ըստ երևույթին, ո՛չ միայն շվեյցարական պեյզաժը, այլև այդ երկրում տիրող խաղաղարար մթնոլորտը և յուրատեսակ ավանդական դեմոկրատիզմը: Շատ տարիներ հետո հուշագրական մի ակնարկում վերհիշելով իր ավարտական քննությունը, նա պատմում է, թե ինչպես ֆակուլտետի դեկանը կրկնել էր տալիս նորընծա փիլիսոփայության դոկտորին. «Երդվում եմ իմ պրոֆեսորների առջև, որ այն գիտելիքներն ու գիտական աշխատանքի մեթոդները, որ ձեռք բերի այս համալսարանում, երբեք չեմ օգտագործի հոռի նպատակներով ու անձնական նեղ շահերի համար, այլ միայն ի օգուտ մարդկության բարօրության և առաջադիմության»:



Եվ ընդհանուր մարդասիրական այս դնիկը հասուն տարիներին դառնում է նրա ամբողջ գիտական, մանկավարժական և հասարակական գործունեության նշանաբանը:

Հայրենիք վերադառնալով, Էդիլյանն իբրև հոգեբան-մանկավարժ հինգ տարի դասավանդում է Էջմիածնի ճեմարանում (1909—1914) և չորս տարի՝ Թիֆլիսի Ներսիսյան դպրոցում (1915—1919): Ինչպես ցույց են տալիս ժամանակի մամուլում նրա կետեղած բազմաթիվ հոդվածները, նա սոսկ շարքային մի ուսուցիչ չէր, այլև պրպտուն մտքի տեր մի երիտասարդ մանկավարժ, որը շարունակ նոր ուղիներ էր որոնում՝ թարմ շունչ հաղորդելու ուսմանն ու դաստիարակությանը ժամանակի մեր այդ լավագույն դպրոցներում և ջանում տեսականորեն հիմնավորել իր սեփական պրակտիկան: Հենց սկզբից նա մտածող, ստեղծագործող մանկավարժ էր: Ահա թե ինչու, ինչպես միաբերան վկայում են ճեմարանի և Ներսիսյանի շրջանավարտները, նա շուտով դառնում է այդ կրթական օջախների ամենասիրված ու ամենահեղինակավոր մանկավարժներից մեկը:

Խոստումնալից են Էդիլյանի առաջին գրական-գիտական ստեղծագործությունները: Գերմաներեն բնագրի հետ նա լույս է ընծայում նախ և առաջ իր դիսերտացիոն աշխատության հայերեն թարգմանությունը: Դեռևս համալսարանական ուսման շրջանում դիսերտացիայի նյութ ընտրելով «Ցիլլերյան սիստեմի» քննադատությունը, չվախենալով հանդես գալ ընդդեմ այն ժամանակ Գերմանիայում լայն ճանաչում գտած մանկավարժական մի սիստեմի, նա դրսևորում է իր ինքնուրույն մտածողությունը և մտքի խիզախությունը:

Իր մի նոր աշխատության մեջ («Սեդրաք Մանդինյան», Թիֆլիս, 1916) նա առաջինը Կովկասում ամբողջական մի ակնարկ է նվիրում նոր վախճանված անվանի հայ մանկավարժին: Հակառակ լինելով Մանդինյանի թե՛ մանկավարժական ուղղությանը (վերջինս կողմնակից էր հերբարտ-ցիլլերյան դպրոցին) և թե՛ հասարակական մտայնությանը (նա «մեղվական» էր) և չթաքցնելով այդ իր գրքում, Էդիլյանը գնահատության ջերմ ու անկեղծ խոսքեր է գտնում իր անձնական անհանդուրժողությամբ ու անհամակերպությամբ կյանքում բազում թշնամիներ վաստակած այդ մարդու հասցեին՝ իբրև դպրոցական գործչի, որը մեծ չափով «նպաստել է հայոց մանկավարժական գրականության զարգացմանը»:

Նույնքան բնորոշ է երիտասարդ Էդիլյանի համար նրա մի երրորդ գրվածքը: 1913 թվականին, երբ Շանթի «Հին աստվածներ» պիեսը թեր ու դեմ կարծիքների ուժեղ բախման տեղիք էր տալիս Թիֆլիսում, որտեղ հենց նոր բեմադրվել էր, Էդիլյանը՝ ճեմարանի դասախոս, Վաղարշապատում ապրելով հանդերձ, այնտեղ լույս է ընծայում այս դրամայի իր քննական վերլուծությունը: Ո՛չ միայն զուտ հոգեբանական, այլև գեղագիտական հետաքրքիր մի էտյուդ է այդ, որտեղ մենք զգում ենք հեղինակի գեղարվեստական նուրբ ճաշակը: Բայց գրքույկը թերևս շատ ավելի հետաքրքրական է նրանով, որ մեկ գաղափար է տալիս երիտասարդ հոգեբանի հասարակական մտայնության մասին: Դրաման իր շատ կողմերով չի գոհացնում նրան: Ընդունելով հանդերձ, որ հեղինակը «վարպետությամբ նկարագրում է հոգեկան կյանքի վայրկյանները», նա գտնում է, որ ««Հին աստվածները» ընդհանուր առմամբ փիլիսոփայական-գեղարվեստական խոր գրվածք չէ», և որ հատկապես երկու գլխավոր գործող անձանց «հոգեկան զարգացումը, գիտակցության հորձանքը հաջող չի տրված»: Վանահոր տիպի հոգեբանական վերլուծությամբ նա աշխատում է հաստատել իր այդ գնահատությունը, ցույց տալով մասնավորապես, որ «հոգեկան անցումները թերի են և անկատար»: Սակայն, ըստ Էդիլյանի, եթե դրամատուրգը կարողացել է վանահոր համար գոնե «ռեալ կյանքի ֆոն ստեղծել», երկրորդ գլխավոր հերոսի՝ Աբեղայի վերաբերմամբ այդ նրան չի հաջողվել: Նա քննադատելի է գտնում մանավանդ Աբեղայի կենսափիլիսոփայությունը. «Զգայարանքի միակողմանի կուլտը կործանարար է անհատի և հասարակության համար,—գրում է նա,—Աբեղայի իդեալները միակողմանի են և մերժելի»: Բնութագրելով այդ հերոսին, իբրև «հայոց Նիցշե», Էդիլյանը դեմ է դուրս գալիս «մերկ, կենդանական ուժի» պաշտամունքին և գրում է տողեր, որոնք այն ժամանակ՝ 1913 թվականին, ոչ ամեն ոք կարող էր գրել. «Աբեղան իր մկանների ուժով վայր գլորեց մի կորականի և խլեց նրա սուրը: Բայց մի՞թե չէր կարող հենց այդ հասարակության մեջ գտնվել մեկը, որ նույն վիճակի մեջ գցեր Աբեղային, ...և այսպես անվերջ, ...մինչև որ մեկը կմնար, որը կլիներ ամենից կորեղը, ամենից ահարկուն: Բայց չէ՞ որ հենց այդ ժամանակ բոլոր թույլերը սոցիալական խմբակցություն կկազմեին այդ ուժեղին տապալելու համար, իսկ այդ դեպքում, բնականորեն նրանց մեջ կծագեր և կզարգանար ընկերական մորալը: Ահա մի հանգամանք, որ ուշադրության չի առել հեղի-

նակը իր հերոսի իդեալները մշակելիս»: Այսպիսով, ինչպես տեսնում ենք, այս շրջանում արդեն Էդիլյանը հանդես է գալիս իբրև կաղմակերպված աշխարհայացքի տեր առաջադեմ մի մտավորական, հայ մշակույթի դեմոկրատ մի գործիչ՝ բառիս լավագույն իմաստով:

Շուտով վրա են հասնում դժվար, բախտորոշ օրեր ինչպես ամբողջ ժողովրդի, այնպես էլ մանավանդ Կովկասի հայ մտավորականության համար՝ պատերազմը, արևմտահայության ջարդն ու տեղահանությունը, անջատումը Ռուսաստանից՝ իր ճակատագրականորեն ծանր հետևանքներով: Էդիլյանը կրիտիկական մոմենտներին միշտ գտնվում է մարդկային-բարոյական արժանավորության բարձր աստիճանի վրա:

1916 թվականի հունիսի 12-ին ստանձնելով Կովկասի գաղթականական որբանոցների տեսչի պաշտոնը, սեպտեմբերի 3-ին զեկուցագիր է պատրաստում իր գործունեության արդյունքների մասին: Այդ զեկուցագրից մենք իմանում ենք, որ երկուսուկես ամսվա ընթացքում նա եղել է 55 որբանոցներում, որոնք գտնվում էին Թիֆլիսում, Դիլիջանում, Ախալքալաքում և Ախալցխայում, Ղարսում ու Գանձակում, Նոր-Բայազետում ու Քարվանսարայում, Երևանում ու Աշտարակում և այլուր: Հասկանալի է, պատերազմի ժամանակ, հետամնաց և սաստիկ ծանրաբեռնված տրանսպորտի պայմաններում, ինչպիսի՜ եռանդ և անձնազոհություն էր պետք ա՛յս կերպ գործելու համար: Բայց 48 տպագիր էջից բաղկացած այդ զեկուցագրի հեղինակի նկատմամբ ավելի ջերմ համակրանք է առաջ բերում նրա խորունկ մարդասիրությունը: Նա գրում է որբերի մասին այնպես, ինչպես կգրեր հարազատ հայրը և հմուտ ու սրտացավ դաստիարակը իր զավակների, իր սաների մասին: Նա գոհ է երեխաների ընդունակությունից ու սրամտությունից, նա ուրախանում է, որ «ուսման ձգտումն ու սերը նույնպես կգալի են նրանց մեջ»: Բայց նրան մտահոգում է այս մանուկների ապագան, և նա առաջարկում է ուսման ու դաստիարակության մի ամբողջ սիստեմ, որն իր խոր մարդասիրական ու դեմոկրատական բնույթով այսօր էլ նշանակալից է թվում մեզ: Իր նախագծում Էդիլյանը հեռու է որբերին սոսկ արհեստավորական գիտելիքներ հաղորդելով գոհանալու տրամադիր մարդկանց գայթակղիչ մտայնությունից, որ շատ տարածված էր այն ժամանակ: Ձեռարվեստը նույնիսկ նա դիտում է «ոչ իբրև արհեստ, այլ իբրև կրթական նշանակություն ունեցող պարապմունք» և, երբ առաջարկում է ունենալ պարտեզ՝ ծաղկանոցային ու բանջարանոցային պարապմունքների համար, տեղն ու տեղը հարկ է համարում բացատրել, թե «սա պետք է նկատել իբրև կրթական մի ձեռնարկություն, իսկ մասնագիտական գյուղատնտեսությունը պետք է կազմակերպվի ա՛յլ տեղ և ա՛յլ կերպ»:

Շուտով, 1917 թ. սեպտեմբերին, Թիֆլիսում, Ներսիսյան դպրոցի ուսուցչությանն ուղղված իր խոսքի մեջ նա առաջադրում է ուսումնական գործի դեմոկրատական վերափոխման բազմակողմանի մի ծրագիր [1]:

Երկու տարի հետո, երբ նոր հռչակված Հայաստանի հանրապետությունն օրհասական վիճակի էր հասել, այն նույն օրերին, երբ Վրաստանից՝ համաճարակների դեմ մաքառելու համար Հայաստան էր մեկնում անձնազոհ բժիշկների մի խումբ, նա ևս, հրաժեշտ տալով իր համեմատաբար կայուն և բարվոք վիճակին Թիֆլիսում, ընկերանում է նրանց: Նա հայրենիք է վերադառնում բուն ժողովրդի լուսավորությանը ծառայելու տենչով վառված ու գործարար եռանդով լի: Ուշագրավ են նրա կենսագրության այդ շրջանի երկու փաստերը: Նոր էր Երևան եկել նա, լրագրի մեջ պետեղվում է կարծեք թե միանգամայն ժամանակավրեպ մի ծանուցում. խորհրդարանի դահլիճում Երևանի մտավորականության համար կբանախոսի Գուրգեն Էդիլյանը. նյութն է՝ «Լեոնարդո դա Վինչի»:

Ճիշտ է, երբ նա ավարտում էր Բեռնի համալսարանը, գլխավոր քննական առարկաներից մեկն էր վերածնության շրջանի արվեստը: Եվ հետո Էդիլյանը Էջմիածնի ճեմարանում դասախոսներին և ուսանողներին պատմել էր մեծ արվեստագետի և գիտնականի մասին ու լուսաբանել իր պատմածը բազմաթիվ դիապոզիտիվներով: Բայց 1919 թվականի աշնանը, երբ սովը և բծավոր տիֆը իրենց դաժան հունձն էին անում, երբ Երևանի փողոցներում օրը մի քանի տասնյակ դիակներ էին հավաքում, ո՞ւմ պիտի հետաքրքրեր մեծ իտալացին իր արվեստով: Դասախոսությունն այնուամենայնիվ կայանում է, և այսօր մենք հիացմունքի խոսք միայն կարող ենք ասել թե՛ դասախոսի և թե նրա փոքրաթիվ ունկնդիրների հասցեին, որոնք այդ դժնդակ հանգամանքներում պահպանել էին հոգու արիությունն ու մտքի կորովը՝ այդօրինակ մի վայելմունքի նվիրվելու համար:

Տենչալով ազգային-ժողովրդական լուսավորության նավը հանել ճահճուտից, Էդիլյանն ստանձնում է լուսավորության մինիստրության տարրական դպրոցների բաժնի ղեկավարությունը: Ավա՜ղ, շատ շուտով, 1919 թվականի նոյեմբերի 8-ին, նա լքում է այդ մինիստրությունը,

---

* Այս շատ հետաքրքրական փաստաթուղթը արխիվում հայտնաբերել է հոգեբանության ասպիրանտ Լևիկ Սահակյանը.



թողնելով «հրաժեշտի» մի նամակ, որը մինչև այժմ էլ մնում է ցայտուն վկայագիրը նրա խոր մարդասիրության և քաղաքացիական արիության: Լուսավորության մինիստրին հասցեագրած այդ նամակում Էդիլյանը բացատրում է, որ իր հրաժարվելու պատճառը ո՛չ գործի մեծությունն ու ծանրությունն է, կամ իր ուժերին անհամապատասխան լինելը, ո՛չ էլ դեպի գործն ունեցած իր ջերմ վերաբերմունքի թուլացումը, այլ դպրոցի և ուսուցչության վիճակը. «Փող չկա միայն մեր տարրական դպրոցի, փող չկա լուսավորության գործի համար: Դեմոկրատիկ հանրապետությունը փող ունի միմիայն կորքի համար. ռուսական միապետական իշխանությունը ևս փող ուներ նույնպես միմիայն կորքի համար. ինչո՞ւմն է այստեղ տարբերությո՞ւնը՝ անվան մեջ, թե բովանդակության»,— հարց է տալիս նա և ավելացնում սպանիչ սարկազմով. «Արդյոք մեր կառավարությունը ընդունո՞ւմ է, որ ուսուցիչները ևս ստամոքս ունեն, թե մեր ծխական դպրոցների հոգաբարձուների պես մտածում է, որ ուսուցիչները այն միակ կաթնասուն կենդանիներն են, որ ստամոքս չունեն»:

Իրոք որ մեկնություններն ավելորդ են:

Վրա են հասնում նոր ժամանակներ. և այն 16 տարիները (1921—1937), երբ Էդիլյանը գործում է սովետական իշխանության պայմաններում, դատելով նրա թեկուզ միայն գրական արտադրանքից, հանդիսացել են նրա համար ինքնամոռաց աշխատանքի և բազմաբեղուն ստեղծագործության մի ժամանակաշրջան: Այս տարիներին ծաղկում է Էդիլյանի տաղանդը իբրև բարձրորակ մանկավարժի, իբրև գիտնական-հոգեբանի, իբրև պատմաբան-հետազոտողի, իբրև մեր նոր կուլտուրայի գործչի բառիս լայն իմաստով:

Այս բոլոր տարիներին, նույնիսկ այն ժամանակ, երբ դպրոցում չէր դասավանդում այլևս, նա հոգով ու սրտով նվիրված է մնում մանուկ սերնդի դաստիարակության գործին: 1921 թվականին նա Էջմիածնի ուսուցչական դասընթացների դասախոս է, Երևանում, լուսավորության ժողկոմատում ևս մի շարք պարտականություններ ունենալով: 1922—23 թվականներին, լուսժողկոմատի հանձնարարությամբ, նա վարում է Ամերկոմի որբանոցային դպրոցների ընդհանուր վերատեսչի պաշտոնը: 1926—27 թթ. հրավիրվելով Ստեփանակերտ, իբրև Ղարաբաղի դպրոցների տեսուչ, նա քուն ու հանգիստ մոռացած, ձիով, շատ հաճախ ոտքով լինում է 80 գյուղում, ամենուրեք ծանոթանում դպրոցների վիճակին, օգնում, խրախուսում ուսուցիչներին, իր անձնական հմայքով անջնջելի հետք թողնելով նրանց հոգում:

Այս տարիներին նա, միևնույն ժամանակ, նոր թափով առաջ է տանում իր գրական ստեղծագործությունը աշակերտության և ուսուցչության համար, գրում է դասագրքեր, լույս ընծայում նոր աշխատանքային դպրոցի էությունը բնութագրող գրվածքներ, հրատարակում է ուսման մեթոդիկային նվիրված նոր աշխատություններ: Նրա «Աշխատանքային դպրոց» գիրքը (1922 թ.), որը մարմնացնում է մեր սովետական դպրոցի կազմավորման այդ շրջանի համար բնորոշ որոնումները, գիտությամբ, փորձառությամբ ու հնարամտությամբ հարուստ մի երկ է: Այդ գրքի էջերում նախ և առաջ գտնում ենք աշխատանքային դպրոցի թեորիայի և պրակտիկ զարգացման պատմական հարուստ մի ակնարկ, որի նմանը մինչև այսօր էլ չենք ունեցել մեր մանկավարժական գրականության մեջ: Իսկ աշխատության տեսական մասում հանդիպում ենք մտքերի, որոնք ակտուալ ու արժեքավոր են նաև մեր դպրոցի զարգացման ներկա փուլում: Դեռ այն ժամանակ Էդիլյանը հանդես է գալիս հօգուտ այնպիսի դպրոցի, որը ֆիզիկական աշխատանքի օգնությամբ «ձգտում է նպաստել *մտավոր զարգացմանը*, ցանկալի համաչափության հասնել բոլոր հոգեկան ուժերի և կգայարանների մշակման խնդրում, ազատություն տալ մանկական ինքնագործունեությանը և անհատականությանը»: Մանկավարժական իր մի այլ գրվածքում («Դպրոցական շենք», Երևան, 1927) Էդիլյանն ուրվագծում է դպրոցական շենքերի կառուցման ու կահավորման գիտականորեն հիմնավորված մի շարք պահանջներ, որոնցից շատերն այսօր էլ հրատապ են հնչում: Բայց 20-ական թվականների նրա գրական-գիտական ստեղծագործության մեջ առանձնապես ուշագրավ է «Հայոց լեզվի մեթոդիկա» ծանրակշիռ ուսումնասիրությունը: Այս գրքում (առաջին հրատարակությունը՝ Թիֆլիս, 1923 թ.) տեսական հիմնավոր գիտելիքները և մանկավարժական աշխատանքի հարուստ փորձառությունը բեղմնավորված են հեղինակի ինքնուրույն ստեղծագործական մտքով և փայլուն էրուդիցիայով: Ցավել կարելի է միայն, որ 1930 թվականից հետո այլևս չվերահրատարակված այս ուսումնասիրությունը, վաղուց ի վեր հազվագյուտ գիրք դարձած լինելով, անծանոթ է մեր մասսայական ուսուցչությանը, որին այնքա՜ն օգտակար կարող է լինել:

Բայց և այնպես իր եռանդի առյուծի բաժինը այս շրջանում Էդիլյանը նվիրում է բարձրագույն դպրոցին: Քսանական թվականներին, երբ սկսեց գործել Երևանի պետական համալսարանը, Էդիլյանը նրա առաջին դասախոսների թվումն էր և հետագայում դառնում է նրա աչքի ընկնող պրոֆեսորներից մեկը: 1934 թ., երբ

հիմնադրվում է Աբովյանի անվան մանկավարժական ինստիտուտը, Էդիլյանն այնտեղ ստեղծում է հոգեբանության ամբիոն և իրեն հատուկ խանդավառությամբ նվիրվում ուսուցչական կադրեր պատրաստելու իր սիրած զբաղմունքին: Թե՛ համալսարանում, թե այստեղ նա այն պրոֆեսորներից էր, որոնց արևով էին երդվում ուսանողները: Բազմակողմանի և խոր գիտելիքների տեր լինելով, աչքի ընկնելով իր կուռ տրամաբանությամբ, խոսքի կուլտուրայով և հռետորական ձիրքով, նա ազատ ու անկաշկանդ վարում էր դասընթացը, հափշտակելով ունկնդիրներին, ինչի մասին էլ խոսելիս լիներ: Ամեն պարագայի ի վիճակի լինելով համոզել ուսանողներին իր իրավացիության մեջ, նա ջանում էր միևնույն ժամանակ վարժեցնել նրանց ինքնուրույն մտածողության, խթանել ստեղծագործ միտքը: Մանուկ Աբեղյանի, Հրաչյա Աճառյանի, Հայկ Ազատյանի, Ստեփան Ներսիսյանի, Գրիգոր Զուբարի և այլոց հետ միասին, նա պատկանում էր այն պրոֆեսորների թվին, որոնց սերը դեպի իրենց պրոֆեսիան և պարտքի կգացումը այնպիսի հոգեկան ու ֆիզիկական լիցք էին հաղորդում նրանց, որ նրանք «սովորություն չունեին» հիվանդանալ և տասնյակ տարիների ընթացքում ոչ մի ժամ չէին բացակայել դասախոսությունից: Ուսանողներին գրավում էին նրա մտքի ճկունությունն ու մանավանդ կգայուն, սրտացավ վերաբերմունքը իրենց հանդեպ, գյուղից եկած երիտասարդների, որոնց հետ նա հոգեպես կապված էր մնում մինչև ավարտելը և գյուղ վերադառնալը: Շատ և շատ են մեր հանրապետության դպրոցներում, մանավանդ գյուղում, այսօր արդեն բազմափորձ այն մանկավարժները, որոնց մեջ Էդիլյանն իր դասախոսություններով վառել է ժողովրդի լուսավորությանը ծառայելու իղձը և որոնք այսօր էլ խորին երախտագիտության կգացումով են հիշում եռանդալից, վերին աստիճանի դյուրաշարժ, միշտ կենսուրախ այդ մարդուն և ակնածանքով են տալիս նրա անունը:

Վերջապես գործնական պարապմունքներին զուգընթաց նա այս շրջանում առաջ է տանում իր տեսական հետազոտություններն՝ իբրև գիտնական-հոգեբան, ստեղծելով, մասնավորապես, հոգեբանության մեկ մոտ առաջին ամբողջական դասընթացը: Լինելով լայն մտահորիզոնի տեր մի մարդ, միշտ գիտակցորեն ջանալով քայլել կյանքին համընթաց, յուրացնելով գիտության նորագույն նվաճումները, նա շարունակ վերանայում և կատարելագործում է նաև իր սեփական գիտական հայացքները:

Միևնույն ժամանակ եվրոպական իր ուսուցիչներից ժառանգած լինելով գիտական հիպոթեզները էքսպերիմենտներով ստուգելու և հիմնավորելու «սովորույթը», նա ոչ միայն հիմնադրում է հոգեբանության փորձնական լաբորատորիան մեկ մոտ՝ Հայաստանում, այլև սերտորեն կապվելով Մոսկվայի ու Լենինգրադի ականավոր հոգեբանների հետ, ընդարձակելով իր հետազոտ...թյունների շրջանակը, իր լուման է մտցնում նաև սովետական էքսպերիմենտալ հոգեբանության զարգացման մեջ առհասարակ: «Հանձին Գուրգեն Մեսրոպի Էդիլյանի,—գրել է սովետական նշանավոր հոգեբան պրոֆ. Վ. Ա. Արտյոմովը,—Մոսկվայի համալսարանի հոգեբանության գիտահետազոտական լաբորատորիան համալրվեց հոգեբանական, ֆիզիոլոգիական և փիլիսոփայական էրուդիցիա ունեցող մի գիտնականով: Էդիլյանը հոգեբանական էքսպերիմենտի մեծ վարպետ է, իր ամբողջ եռանդը սովետական հոգեբանության զարգացմանը նվիրած, գեղեցիկ բարոյական հատկությունների տեր մի անձնավորություն: Նրան հատկապես շատ էր հուզում այն տարիներին մեր գիտության համար խիստ հրատապ հանդիսացող ըմբռնման պրոբլեմը: Նա սիրում էր էքսպերիմենտալ ձևով մտածել, իսկ իր հետազոտությունների օբյեկտներն ընտրելիս Էդիլյանը ելնում էր հայ կուլտուրայի կարևորագույն պահանջներից»:

Ի դեպ, այս վերջին հանգամանքը, որ շեշտում է պրոֆեսոր Արտյոմովը, շատ բնորոշ է Էդիլյանի գործունեության համար: Սերտորեն կապված լինելով դպրոցի հետ և մտահոգված լինելով երեխաների հոգեկան զարգացման հարցերով, հոգեբանությունը նա դիտում է իբրև մարդու հոգեկան աշխարհը ճանաչելու և այդ ճանաչումով այն կաղմակերպելու, կատարելագործելու, գեղեցկացնելու միջոց: Եվ այն բոլոր դեպքերում, երբ նա զգում էր թե իրեն հետաքրքրող այս կամ այն հարցը տվյալ պայմաններում կենսական նշանակություն ունի, պատանեկան ավյունով նվիրվում էր նրա էքսպերիմենտալ հետազոտությանը: Հատկանշական է այս առումով նրա գործունեության փոքր-ինչ առանձնակի թվացող մի բնագավառը: Դա մեր հայկական շրիֆտն է: 30-ական թվականների սկզբին, չգիտես որտեղից, երևան էր եկել ինչ-որ անհող ենթադրություն, թե մեր շրիֆտը (դարերի ընթացքում իրենց նախնական ձևերը հիմնականում պահպանած մեսրոպյան տառերը) առհասարակ անդյուրընկալ է, դժվարացնում է լեզվի ուսուցումը և հարկ է հրաժարվել նրանից և անցնել լատինական շրիֆտի: Մի քանի տարի համառությամբ աշխատելով Մոսկվայի համալսարանում, պրոֆեսոր Արտյոմովի գլխավորած գիտահետազոտական լաբորատորիայում, Էդիլյանն իր էքսպերիմենտների առանցքն է դարձնում հենց մեր հայկական



շրիֆտը: Այնտեղ ամեն մի տառի, ինչպես և նրանց հարակցությունների և տարբեր լայնության տողերի վերաբերյալ կատարած մանրամասն հետազոտություններով նա կարևոր եզրակացությունների է հանգում, որոնք շարադրված են նրա 1933—1935 թվականներին լույս տեսած գրքույկներում («Շրիֆտի դյուրընթեռնելիությունը», 1933 թ., «Տպագրական տողերի դյուրընթեռնելիությունը», 1935 թ. և այլն), և ներկայումս հրատարակության հանձնված ամբողջական ուսումնասիրության մեջ: Հետագայում նրա ձեռք բերած տվյալներն օգտակար եղան մեր շրիֆտի բարեփոխման ուղղությամբ կատարված աշխատանքների ժամանակ: Այս ուսումնասիրությունների առարկայական արժեքը հասկանալի է, բայց սխալված կլինենք դրանք համարելով Էդիլյանի համար պատահական, հարևանցի, հոգեբան-մանկավարժի նրա ստեղծագործության հունից դուրս եկող մի զբաղմունք: Ինչպես տեսանք, նրա գիտական հետաքրքրությունների գլխավոր առարկաներից մեկը միշտ էլ հանդիսացել է հայոց լեզվի ուսուցումը առհասարակ. տասնյակ տարիներ շարունակ նրան մտատանջել է հայ մանուկների տառաճանաչությունը հեշտացնելու հոգսը. հիշենք նրա «Փայլուն արև» դասագիրքը (Թիֆլիս, 1920), առանձին գրքերով լույս ընծայված «Ձեռագրի ուսուցման մեթոդիկա» և «Ուղղագրության ուսուցման մեթոդիկա» աշխատությունները (1927 թ.), վերջապես լուսավորության ժողկոմատի հայտարարած մրցանակաբաշխությանը ներկայացված նրա այբբենարանը, որը մրցանակի էր արժանացել (1937 թ.): Հիշյալ էքսպերիմենտալ հետազոտությունները հենց կոչված էին մեր շրիֆտը ավելի դյուրընկալ դարձնելու միջոցով յուրահատուկ նյութական պատվանդան ստեղծելու այն բազմակողմանի մանկավարժական աշխատանքի համար, որի նպատակն էր, վերջին հաշվով. գրագետ դարձնել ամբողջ ժողովրդին և, հատկապես, մայրենի լեզվով ուղիղ գրել սովորեցնել բոլոր հայ մանուկներին:

Էդիլյանի գիտական ստեղծագործության լայնահուն գետի հորդուն մի վտակն է հայ մանկավարժության պատմությանը նվիրված հետազոտական աշխատանքը: Նախնականորեն այդ գործին ձեռք զարկած լինելով դեռևս 1916 թվականին (Մանդինյանին նվիրված հիշյալ գրքույկը), սովետական ժամանակաշրջանում նա իր ուսումնասիրությունների մի կարևոր առարկան է դարձնում հայ դեմոկրատ մանկավարժների կյանքն ու գործը: 30-ական թվականներին նա հեղինակում է իր աշխատությունները՝ նվիրված Խաչատուր Աբովյանի, Ստեփանոս Նազարյանի և Միքայել Նալբանդյանի մանկավարժական հայացքներին: Այս երեք գրվածքների ձեռագրերն էլ, որ գտնվելիս են եղել Աբովյանի անվան մանկավարժական ինստիտուտում, ցավոք սրտի, չեն պահպանվել: Բարեբախտաբար պահպանվել է, ակադեմիայի գրականության ինստիտուտի պատվերով 1934—36 թթ. գրված նրա ուսումնասիրությունը Խաչատուր Աբովյանի մասին[1]: Սա ո՛չ միայն ժամանակին նղել է մեր մեծ լուսավորչին նվիրված հանգամանալից, բովանդակությամբ հարուստ և կառուցվածքով ու ոճով հետաքրքրական աշխատություններից մեկը, այլև այսօր էլ, երբ բազմաթիվ արժեքավոր գրքեր են լույս տեսել Աբովյանի մասին, կարդացվում է մեծ հետաքրքրությամբ: Խանդավառ նվիրվածությունը իր ընտրած նյութին, բառիս բուն իմաստով որդիական սերը մեծ լուսավորչի հանդեպ՝ կանխորոշել են այն քրտնաջան ու բեղմնավոր աշխատանքը, որ կատարել է Էդիլյանը՝ ծանոթանալով Աբովյանի մասին եղած գրականությանը, ձեռագրերին, արխիվային նյութերին, հավաքելով հուշերի պատառիկներ: Իսկ իր սեփական լայն մտահորիզոնը, ճշմարիտ գիտնականի անկաշառ միտքը թելադրել է նրան Աբովյանի կյանքն ու գործունեությունը քննարկել պատմական ժամանակաշրջանի և Կովկասի հայ իրականության ֆոնի վրա և վերծանել նաև Աբովյանին, նրա աշխարհայացքն ու կենսափիլիսոփայությունը իդեալականացնելու հակագիտական հակումից ու պատկերել այդպիսով նրա անեղծ, ճշմարտացի դեմքը: Այնուհանդերձ մենք շարունակ զգում ենք այս գրվածքում նաև հեղինակի, պատմական հետազոտությանը կենդանի շունչ հաղորդող մարդասեր հոգեբանի գեղեցիկ անհատականությունը, և այդ է, որ, չնայած բազմաթիվ մեջբերումներին ու վկայակոչումներին, հափշտակիչ է դարձնում իրոք որ վեպի նման կարդացվող այս աշխատությունը: Առանձնապես հուզիչ են գրքի այն դրվագները, որտեղ խոսքը վերաբերում է երիտասարդ Աբովյանի այնպիսի ապրումներին (օր. հայրենիքի, հայրենի գյուղաշխարհի, այնտեղի պարզունակ բարքերի կարոտը), որոնք պիտի ունեցած լիներ նաև այդ նույն գյուղաշխարհի ծոցից ելած հեղինակը՝ Գ. Էդիլյանն իր ուսանողության տարիներին:

Իր բազմակողմանի տաղանդի և ստեղծագործական կարողությունների բուռն ծաղկման շրջանում, երբ նա պիտի ստեղծեր իր հասուն երկերը, Էդիլյանը կրկվում է իր սիրած գիտամանկավարժական գործունեությունից, կալանավորվում և աքսորվում է 1937 թ.: Սակայն դժնդակ հանգամանքները նույնիսկ, որոնց մեջ նա գտնվում է այդ պահից սկսած մինչև իր

———

[1] *Ձեռագիրը գտնվում է Գրականության թանգարանում:*

մահը (1942 թ. հունվար), անկարող են լինում սպանել նրա մեջ գիտությանը նվիրված մարդուն, կոտրել նրա կամքը՝ իբրև ստեղծարար անհատի: Դրա լավագույն ապացույցը և նրա ողջ գիտական ստեղծագործության պսակն է ռեաբիլիտացիայից հետո արդեն, 1958 թ. լույս ընծայված «Հոգեբանության ուրվագծեր» գիրքը: Չունենալով ձեռքի տակ գիտական գրականություն, բոլորովին զուրկ լինելով գրավոր աղբյուրներից, իր մտավոր ուժերի գերագույն լարումով, նա մեկը մյուսի հետևից ստեղծագործում և Հայաստանի պետական մարմիններին է ուղարկում հոգեբանական գիտության մի շարք էական հասկացություններին նվիրված իր երկերը. ըմբռնման հոգեբանություն և ըմբռնման կրթություն, մտապատկեր և մտապատկերների կրթություն, մտածության հոգեբանություն և մտածության կրթություն, կգացում և կգացման կրթություն, կամքի հոգեբանություն և կամքի կրթություն, երևակայություն, հոգեբանական տիպեր, դատական հոգեբանություն և այլն: Այդ աշխատությունների մի մասն էլ, համակարգված և մեծ խնամքով ու բարեխղճությամբ խմբագրված հոգեբան Մ. Մազմանյանի կողմից, կազմել է հիշյալ ամբողջական երկը[1]: Գրքի առաջաբանում այնտեղ տպագրված աշխատություններն իրավամբ բնութագրվում են իբրև Գ. Էդիլյանի «տասնյակ տարիների խոհերի ու էքսպերիմենտալ հետազոտությունների մի յուրահատուկ հանրագումար», մի գրվածք, որի մեջ «ուսանելի շատ բան կգտնի ո՛չ միայն հոգեբանը և մանկավարժը, այլև երեխաների դաստիարակությամբ զբաղվող ամեն մի ընթերցող»: Ավելացնենք միայն, որ գիտական տվյալների հաստատուն պատվանդանի վրա խարսխված այս օգտակար գիրքը, արտացոլելով հեղինակի մտքի պայծառությունը, մարմնացնելով նրա գրական կուլտուրան, կարդացվում է հարաճուն հետաքրքրությամբ, և ափսոսալ կարելի է միայն, որ մեր մանկավարժական մամուլը ժամանակին պահանջվող ուշադրությունը չնվիրեց նրան, այն ընթերցողների ավելի լայն շրջանակի սեփականությունը դարձնելու համար:

Առավել ևս ցավալի է, որ Էդիլյանի այս վերջին շրջանի աշխատություններից շատերը, հատկապես մանկավարժական գրվածքները («Էտիկայի հարցեր», «Ուսուցման արվեստ», «Ուսուցչի անձնավորությունը», «Աշակերտի անձնավորությունը» և այլն), դեռևս չեն հայտնաբերված: Բայց պահպանվածը և հրատարակվածը ևս բավական են համոզվելու համար, որ ի դեմս նրա մենք ունեցել ենք ո՛չ միայն մեծ էրուդիցիայի, այլև հոգեկան բացառիկ կարողությունների և բարձր առաքինության տեր մի անձնավորություն, որի անընկճելի սերը դեպի գիտությունը, որի բարձր իդեալները կորավից են եղել նրան՝ մինչև վերջին շունչը պահպանելու իր հոգու կորովը և նվիրվածությունը սովետական հայրենիքին ու իր ժողովրդին:

1941 թ. հունիսին, իր վերջին նամակներից մեկում, վկայակոչելով պատմության դասերը, նա իր անհողդողդ համոզմունքն է հայտնում, որ ֆաշիստական Գերմանիան պարտություն է կրելու պատերազմում: Եթե իրեն՝ Էդիլյանին չվիճակվեց տեսնել մեր պատմական հաղթանակը իր մեծ հետևանքներով, ապա մեր կուլտուրայի և լուսավորության գործի նոր վերելքի պայմաններում նա մնացել է հապարավոր սաների հիշողության մեջ իբրև մարդկային մի գեղեցիկ անհատականություն:

Էդիլյանի ծննդյան 80-ամյակը թող խթան հանդիսանա, որպեսզի ավելի համակողմանի ուսումնասիրվի և հրատարակության պատրաստվի նրա գրական ժառանգությունը, նոր սերնդի կրթությանն ու դաստիարակությանը ի սպաս դնելու համար այն ամենը, ինչ այսօր ևս օգտակար և արժեքավոր է նրա մեջ:

ՌԱՖԱՅԵԼ ԱԹԱՅԱՆ

---

[1] Գ. Էդիլյան, *«Հոգեբանության ուրվագծեր», Հայպետուսմանկհրատ, 1958 թ., 333 էջ։*

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ԳԻՐՔ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹՅԱՆ, ՀԵՐՈՍՈՒԹՅԱՆ ՈՒ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ[1]

*Եթե նկատի չունենանք լրագրային ու ժուռնալային առանձին հոդվածներ և մի քանի հանրամատչելի գրքույկներ, Կովկասի ժողովուրդների մասնակցությունը 1812 թվականի հայրենական պատերազմին մինչև վերջին տարիները չէր դարձել գիտական հատուկ ուսումնասիրության պրոբլեմ և հանդիսանում էր այդ պատերազմի մարքսիստական պատմագրության բաց էջերից մեկը։ Ուստի արժանի է խրախուսանքի Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս, պրոֆեսոր Մ. Գ. Ներսիսյանի «1812 թվականի հայրենական պատերազմը և Կովկասի ժողովուրդները» խորագիրը կրող փաստալից աշխատության հրապարակ գալը, որը 1812 թվականի հայրենական պատերազմի պատմագրության այդ բացը լրացնելու ճանապարհին արժեքավոր ներդրում է։*

*Գրախոսվող մենագրությունը գրված է գիտական պատշաճ բարեխղճությամբ, արխիվային ֆոնդերից քաղված, մեծ մասամբ դեռևս չհրապարակված փաստաթղթերի ու սկզբնաղբյուրների հիման վրա։ Հեղինակը իր առաջ դրել է դժվարին, բայց և շնորհակալ խնդիր՝ Կովկասը որպես մեկ ամբողջություն, նրա հիմնական ժողովուրդների՝ Սև ծովյան (Կուբանի) կազակության, Հյուսիսային Կովկասի, կովկասյան լեռնականների և Անդրկովկասի ժողովուրդների՝ հայերի, վրացիների և ադրբեջանցիների վերաբերմունքը և մասնակցությունը 1812 թվականի պատերազմին, նրանց կողմից ռուսական բանակներին ցույց տրված օգնությունը։ Ճիշտ է վարվել հեղինակը, որ իր առաջ դրված պրոբլեմը քննել ու լուծել է ռուս և կովկասյան ժողովուրդների դարերի խորքից եկող կապերի ու բարեկամական հարաբերությունների, 19-րդ դարի առաջին տասնամյակի Ռուսաստանի և Կովկասի վիճակի, մեծ տերությունների միջև սրվող անզիջում հակամարտությունների պատմության հետ սերտ կապակցված։ Դա հեղինակին հնարավորություն է տվել ստեղծելու կուռ կառուցվածք ունեցող ամբողջական ու նպատակասլաց աշխատություն՝ 1812 թվականի հայրենական պատերազմին կովկասյան ժողովուրդների մասնակցության մասին։*

*Շեղվելով գրախոսության ընդունված շաբլոնից, երբ սկզբում շարադրվում են աշխատության արժանիքները, ապա միայն վերջում՝ արվում դիտողություններ ու ցանկություններ, նշենք, որ պրոֆ. Մ. Գ. Ներսիսյանի մենագրությունը կլիներ առավել ամբողջական և մատչելի նաև շարքային ընթերցողին, եթե կով[կ]ասյան ժողովուրդների մասնակցությունը պատերազմին շարադրվեր 1812 թվականի հայրենական պատերազմի պատմության ընդհանուր ֆոնի վրա։ Թվում է, որ հենց գրքի վերնագիրը՝* («1812 թվականի հայրենական պատերազմը և Կովկասի ժողովուրդները») *պարտավորեցնում էր հեղինակին այդպես էլ վարվել։*

*Կարդալով պրոֆ. Մ. Գ. Ներսիսյանի աշխատության խորագիրը, ուշադիր ընթերցողին, անտարակույս, նախ պետք է հետաքրքրի այն հարցը, թե հեղինակն ինչո՞վ է բացատրել ճորտատիրական կապանքների մեջ գտնվող գյուղացիական մասսայի և «ժողովուրդների բանտ» հանդիսացող ցարական Ռուսաստանի բազմազգ ժողովուրդների ակտիվ մասնակցությունը 1812 թվականի պատերազմին։ Այս հարցի հստակ պատասխանի կարևորությունը հասկանալու համար բավական է հիշել, որ ազնվականական և բուրժուական պատմագրության ներկայացուցիչ-*

---

[1] *Տե՛ս М. Г. Нерсисян,* Отечественная война 1812 года и народы Кавказа. Изд. А.Н, Арм. ССР, Ереван, 1965.

ները, անդրադառնալով 1812 թվականի պատերազմի ժամանակ պոռթկած ժողովրդի հայրենասիրությանը, քողարկել են ռուսական հասարակության դասակարգային բաժանվածությունը և պատերազմում տարբեր դասակարգերի հետապնդած նպատակները։ Մինչդեռ հանրահայտ է, որ պատերազմում բացի արտաքին թշնամուն ջախջախելու ընդհանուր նպատակից, յուրաքանչյուր դասակարգ և Ռուսաստանի յուրաքանչյուր ժողովուրդ հետապնդում էին նաև իրենց շահերից բխող ուրույն նպատակներ։ Եթե ազնվականությունը ձգտում էր պատերազմում ձեռք բերած հաղթանակն օգտագործել իր տիրապետության հետագա ամրապնդման, ցարիզմի միջազգային դիրքերի ուժեղացման և Եվրոպայում թելադրող դառնալու համար, ապա գյուղացիությունը, շարունակելով դասակարգային պայքարը, առաջին պլան էր մղել իր ազգային-ազատագրական շահերը և միաժամանակ ակնկալում էր՝ արտաքին թշնամու դեմ տարած հաղթանակն օգտագործել նաև թոթափելու ճորտական լուծը։

Ուսումնասիրության պրոբլեմ դարձնելով կովկասյան ժողովուրդների մասնակցությունը 1812 թվականի հայրենական պատերազմին՝ պրոֆ. Մ. Գ. Ներսիսյանը, Ռուսաստանի այլազգի ժողովուրդների նկատմամբ ցարիզմի վարած ռեակցիոն ազգային-գաղութային քաղաքականությունը հստակորեն սահմանազատելով նապոլեոնյան զավթիչների դեմ պոռթկած հայրենասիրությունից, կովկասյան ժողովուրդների ակտիվ մասնակցությունը պատերազմին իրավացիորեն բացատրում է նրանով, որ այդ ժողովուրդները Նապոլեոնի ներխուժումը Ռուսաստան և նրա մղած պատերազմը դիտում էին զավթողական, անարդարացի, որն սպառնում էր Ռուսաստանին՝ հետևապես և իրենց ազատությանն ու անկախությանը։ Օրինակ, անդրադառնալով հայերի մասնակցությանը պատերազմին, նա ընդգծում է, որ 19-րդ դարի սկզբներին Ռուսաստանում կային բազմաթիվ հայաբնակ գաղութներ՝ Մոսկվայում ու Պետերբուրգում, Ղրիմում ու Դոնի Ռոստովում, Աստրախանում ու Գրիգորոպոլում, Ղզլարում ու Մոզդոկում և այլուր ու այդ գաղութներում ապրող տասնյակ հազարավոր հայերի համար Ռուսաստանը հանդիսանում էր ոչ թե սոսկ ապաստարան, այլև նրանց երկրորդ հայրենիքը, ուր զարգանում էին հայ մշակույթն ու հասարակական-քաղաքական միտքը։ Ռուսաստանի գլխին կախված նապոլեոնյան ագրեսիան հուզում էր նաև տակավին Իրանի ու Թուրքիայի լծի տակ հեծող կիսամորթ հայ ժողովրդին, որովհետև նա սուլթանական ու շահական տիրակալությունից իր ազատագրության ամբողջ հույսը հաստատ ու անվերադարձորեն կապել էր Ռուսաստանի ու նրա հզորության հետ։



Հեղինակը կովկասյան ժողովուրդների մասնակցությունը 1812 թվականի հայրենական պատերազմին ներկայացրել է բազմակողմանիորեն և, հատկապես, հանգամանորեն անդրադարձել է նրանց կողմից ռուսներին ցույց տրված ռազմական ու տնտեսական օգնությանը։ Շրջանառության մեջ դնելով միության տարբեր կենտրոնների արխիվային ֆոնդերից քաղված նորահայտ հարուստ փաստեր, նա կոնկրետ օրինակներով ցույց է տվել ռուսական բանակի կազմում կովկասյան ժողովուրդների ներկայացուցիչների՝ բազմաթիվ հայերի, վրացիների, թաթարների, կալմիկների, կաբարդինների, Կուբանի կոզակների ու մյուս ժողովուրդների զավակների մասնակցությունը՝ ինչպես ծանր ու արյունալի պաշտպանողական, այնպես էլ հակահարձակողական հաղթական ճակատամարտերին։ Անդրադարձել է նաև նրանցից շատերի մասնակցությանը ռուսական բանակի 1813—1814 թվականների արտասահմանյան արշավանքներին։

Պրոֆ. Մ. Գ. Ներսիսյանը գրախոսվող աշխատության 5-րդ գլխում («Հայրենական պատերազմը և հայ ժողովուրդը») հարուստ փաստերով ցույց է տվել հայերի ռազմական օգնությունը։ Անդրադառնալով ռուսական բանակին հայ սպաների մատուցած ծառայությանը՝ թվարկում է մի քանի տասնյակի հասնող հայերի, որոնք տարբեր ռազմաճակատներում թշնամու դեմ մղված կռիվներում մեծ հմտությամբ գլխավորել են ռուսական բանակի խոշոր ստորաբաժանումներ։ Դրանցից մեկն էր Վալերյան (Ռոստոմ) Մադաթովը։ Նա պատերազմն սկսեց արևմտյան 3-րդ բանակի կազմում՝ փոխգնդապետի աստիճանով և 1813—1814 թվականների արտասահմանյան արշավանքներից հայրենիք վերադարձավ գեներալ-մայորի աստիճանով։ Վ. Մադաթովը մասնակցել է պատերազմի մի շարք նշանավոր ճակատամարտերի և աչքի ընկել իր ցուցաբերած խիզախությամբ և զորավարական արվեստով։ Մադաթովի գլխավորած ստորաբաժանումը, հաճախ անցնելով նապոլեոնյան բանակի թիկունքը, մղել է նաև պարտիզանական բնույթի պատերազմ։ Նրա ջոկատը թշնամու թիկունքում շատ անգամ է համագործակցել քաջարի պարտիզաններ Դ. Դավիդովի, Ա. Ֆիգների և մյուս պարտիզանական ջոկատների հետ։

Հայրենական պատերազմի մասնակից հայ զորավարներից էր Սումսկի հուսարական գնդի հրամանատար, գնդապետ Դավիթ Դելյանովը։ Նա մասնակցեց նաև ռուսական բանակի 1813—1814 թթ. արտասահմանյան արշավանքներին և 1813 թվականի սեպտեմբերին արժանացավ գեներալ-մայորի կոչման։ Դ. Դելյանովի հետ միասին պատերազմին, մայորի աստիճանով, մասնակցում էին նաև նրա երկու եղբայրները։

1812 թվականի հայրենական պատերազմի քաջակորով գեներալ Պ. Պ. Կոնովնիցինի համհարզն ու մարտական անբաժան ուղեկիցն էր Դմիտրի Ախշարումովը։ Գեներալ Բարկլայ-Դե Տոլին հիացմունքով է խոսել Սմոլենսկի արյունալի պաշտպանողական մարտերում Դ. Աշխարումովի ցուցաբերած հերոսության մասին։ Իրեն հատուկ խիզախությամբ ու քաջագործությամբ աչքի ընկնելով Բորոդինոյի հերոսամարտում՝ Դ. Աշխարումովն արժանացավ ֆելդմարշալ Կուտուզովի ջերմ գովասանքին։ Նա ակտիվ մասնակցություն ունեցավ ռուսական բանակի հակահարձակողական մարտերին և 1813 թվականի հուլիսին ստացավ գնդապետի աստիճան։ Դ. Աշխարումովը 1814 թվականի մարտի 18(30)-ին ռուսական բանակի կազմում մտավ պարտված Փարիզ։

Լեյբ—գվարդիայի սպա Պավել Մելիկովը իր անունը հերոսի փառքով պսակեց Վիտեբսկի, Սմոլենսկի, Բորոդինոյի նշանավոր ճակատամարտերում։ Թեպետ Բորոդինոյում թշնամու հրետանու արկը պոկեց Պ. Մելիկովի աջ թևը, բայց կարճատև բուժումից հետո նա կրկին վերադարձավ մարտաշարք։ 1829 թվականին նա ստացավ գեներալ-մայորի աստիճան։

Պատերազմի ճակատամարտերում իր քաջագործություններով հռչակվեց հրետանային 27-րդ բրիգադան, որի հրամանատարն էր գնդապետ Պավել Արապետովը (Հայրապետյան)։ Հետագայում նա ստացավ գեներալ-մայորի աստիճան։

Գնդապետ Դավիթ Աբամելիքը պատերազմն սկսեց Լեյբ-գվարդիական հուսարական գնդում որպես էսկադրոնի հրամանատար։ Նա մասնակցեց պատերազմի գրեթե բոլոր նշանավոր ճակատամարտերին և, հատկապես, աչքի ընկավ Բորոդինոյի, Տարուտինի, Մալո-Յարոսլավեցի, Վյազմայի, Կրասնիի, արտասահմանյան արշավանքների ժամանակ՝ Լյուցենի, Բաուցենի և շատ ուրիշ ճակատամարտերում։ 1818 թվականին նրան տրվեց գեներալ-մայորի աստիճան։ Պատերազմին ակտիվ մասնակցություն ունեցան նաև Դավիթ Աբամելիքի կրտսեր եղբայրները՝ Լեյբ-գվարդիայի հուսարական գնդի պորուչիկ Պյոտրը և նույն գնդի կորնետ՝ Ալեքսանդրը։

Մ. Կուտուզովը իր զեկուցագրերում շատ անգամ է գրվատել Լեյբ-գվարդիայի հուսարական գնդի շտաբս-ռոտմիստր Արտեմի Լազարևի (Լազարյան) ավելի քան 40 ճակատամարտերում ցուցաբերած սխրանքները։ Նա մասնակցեց նաև ռուսական բանակի արտասահմանյան արշավանքներին ու զոհվեց Լեյպցիգի ճակատամարտում։ Պատերազմին մասնակցեց նաև Արտեմի եղբայր՝ Լազար Լազարևը, որը հետագայում գնդապետի աստիճանով մասնակցեց 1826—1828 թթ. ռուս-իրանական պատերազմին և Թուրքմենչայի հաշտության պայմանագրի կնքումից հետո գլխավորեց Իրանից 40 հազար հայերի գաղթը՝ Ռուսաստանին միացված Արևելյան Հայաստան։

1812 թվականի հայրենական պատերազմին ռուսական բանակի սպայական տարբեր կոչումներով մասնակցեցին նաև Գերասիմ Մելիք-Օսիպովը, Վասիլի և Դավիթ Բեբուտովները, Նախնավազյան եղբայրները, Վարժապետյանը, Աղամպարովը, Պետրոս Մելիքովը, Թումանովը, Արղուտինսկին, Սումբատովը, Շելկովնիկովը, Կասպարովը, Աբրահամովը, Ասլանյանը և շատ ուրիշ հայ սպաներ։

Նկարագրելով նշված հայ սպաների մասնակցությունը 1812 թվականի հայրենական պատերազմին, պրոֆ. Մ. Գ. Ներսիսյանը, որպես եզրակացություն, գրում է. «1812 թվականի հայրենական պատերազմի մասնակից հայերի թիվը անշուշտ եղել է ավելին, քան մենք գիտենք այսօր։ Կասկածից վեր է, որ նապոլեոնյան զավթիչների դեմ ռուս ժողովրդի մղած հերոսամարտերին բացի նշվածներից մասնակցել են և ուրիշ հայեր, որոնց ազգանունները դեռևս չեն հայտնաբերվել, կամ չեն պահպանվել արխիվային ֆոնդերի նյութերում» (էջ 242)։ Հեղինակը սրանով ընթերցողին անկեղծորեն ասում է, որ իր ուսումնասիրության պրոբլեմի վերջակետը տակավին չի դրել և միաժամանակ հրավիրում է պատմաբանների ուշադրությունը՝ շարունակելու այդ հարցի հետագա հետազոտությունները։

Հայտնի է, որ Ռուսաստան ներխուժած նապոլեոնյան զավթիչների դեմ պայքարն ստացավ իսկական ժողովրդական բնույթ։ Կազմակերպվեցին պարտիզանական ջոկատներ ու ժողովրդական աշխարհազորային գնդեր, որոնք խոշոր դեր խաղացին թշնամու բանակների ջախջախման ասպարեզում։ Աշխարհազորային գնդերում ծառայող զորայինների թիվն անցավ 400 հազար մարդուց։ Նրանց շարքերը սեփական նախաձեռնությամբ ու կամավոր սկզբունքներով մտան նաև Ռուսաստանի հայաբնակ գաղութավայրերի շատ հայեր։ Ուստի ճիշտ է վարվել պրոֆ. Մ. Ներսիսյանը, որ 1812 թվականի հայրենական պատերազմի ժամանակ հայերի ռազմական օգնությունը ռուսներին չի սահմանափակել միայն ռուսական կանոնավոր բանակում ծառայող հայերի մասնակցության նկարագրումով և տեղ է հատկացրել նաև նրանց մասնակցությանը՝ ժողովրդական աշխարհազորային շարժմանը։ Գրախոսվող աշխատությունում բերված փաստերը վկայում են, որ Մոսկվայից, Պետերբուրգից և Ռուսաստանի մյուս հայաբնակ գաղութավայրերից շատ հայեր ծառայության մտան աշխարհազորային գնդերը։ Նոր Նախիջևանի

մագիստրատը նույնիսկ ձեռնամուխ եղավ քաղաքից և նրա մերձակա հինգ հայաբնակ գյուղերից՝ հայկական աշխարհազորային ջոկատի կազմակերպմանը։

Գրախոսվող աշխատության 4-րդ գլխում («Վրացիների մասնակցությունը հայրենական պատերազմին») պրոֆ. Մ. Գ. Ներսիսյանը անդրադարձել է ռուսական բանակներին վրացիների ցույց տված ռազմական օգնությանը։ Ռուսական կանոնավոր բանակի շարքերում նապոլեոնյան զավթիչների դեմ կռվում էին ինչպես Վրաստանից եկած, այնպես էլ Ռուսաստանի վրացաբնակ գաղութների (Մոսկվայի, Աստրախանի, Ղզլարի) բազմաթիվ վրացիներ։

1812 թվականի հայրենական պատերազմում ռուսական բանակի նահանջի ամիսներին թշնամուն հյուծող բազում հերոսամարտեր մղեց ռուսական 2-րդ բանակը, որի քաջակորով հրամանատարն էր Սուվորովի ու Կուտուզովի մերձավոր զինակից, վրաց ժողովրդի զավակ Պյոտր Բագրատիոնը, որը հերոսի մահով ընկավ Բորոդինոյի արյունալի ճակատամարտում։ 1812 թվականի պատերազմում Պետերբուրգ տանող ճանապարհը պաշտպանող գեներալ Վիտգենշտեյնի հատուկ կորպուսի հրետանու պետն էր Կինբուռնի, Օչակովի, Ակերմանի, Բենդերի, Իզմայիլի, Աուստերլիցի նշանավոր ճակատամարտերի մասնակից Լեվ Յաշվիլին։ Նա 1813 թվականի մայիսին նշանակվեց ռուսական գործող բանակի հրետանու պետ և մասնակցեց 1813—1814 թթ. արտասահմանյան արշավանքներին։

Պատերազմում աչքի ընկան նաև գեներալներ՝ Իվան և Սեմյոն Պանչուլիձե եղբայրները, Իվան, Ֆիլիպ, Սիմյոն Ջավախիշվիլի (գրականության մեջ՝ Ջավախով) եղբայրները, նրանց ազգակիցներ՝ Սպիրիդոն, Նիկոլայ, Եվստաֆի Ջավախիշվիլիները։ Բորոդինոյի հերոսներից են՝ Իվան Գրուէլովը, Անտոն Շալիկաշվիլին (գրականության մեջ Ջալիկով), Սիմյոն Գանգեբլովը և վրացի շատ ուրիշ սպաներ։

Պրոֆ. Մ. Գ. Ներսիսյանը հետաքրքիր փաստերով ցույց է տվել նաև վրացիների մասնակցությունը աշխարհազորային շարժմանը։ Պետերբուրգի աշխարհազորում աչքի ընկան Ե. Էրիստովը, Օ. Գաբաևը, Դ. Գամսախուրդիան, Վ. Անդրոնիկովը, Մոսկվայում՝ շտաբս-կապիտան Գրուզինսկին և ուրիշներ։ Կալուգայի աշխարհազորի պետն էր՝ գեներալ-մայոր Վլադիմիր Յաշվիլին, Պոլտավայինը՝ Ֆիլիպ Ջավախիշվիլին, Նիժնի-Նովգորոդինը՝ Իշխան Գեորգի Գրուզինսկին և այլն։

Գրախոսվող աշխատության հեղինակը նույնպիսի փաստերով ու կոնկրետ օրինակներով ցույց է տվել նաև կովկասյան մյուս ժողովուրդների ռազմական օգնությունը ռուսական բանակին։

Քննարկվող հարցը սպառելու համար ավելացնենք և այն, որ կովկասյան ժողովուրդների ցույց տրված ռազմական օգնությունը ռուսներին, հեղինակը կարող էր իր ընթերցողներին շատ ավելի ամբողջական ներկայացնել, եթե աշխատության վերջում տրված ծավալուն ծանոթագրությունների (էջ 288—330) փաստական հարուստ նյութի մեծ մասը շարադրեր համապատասխան գլուխներում։

Պրոֆ. Մ. Գ. Ներսիսյանը կարևոր տեղ է տվել նաև կովկասյան ժողովուրդների կողմից ռուսական բանակին և աշխարհազորին ցույց տրված նյութական օգնությանը։ Դրա նշանակությունը խոշոր էր, որովհետև Ռուսաստանը 1812 թվականի հայրենական պատերազմը մղում էր մենակ, իր սեփական ուժերով ու միջոցներով։ Թեպետ 1812 թվականի հուլիսին Անգլիան դաշնակցային պայմանագիր կնքեց Ռուսաստանի հետ, բայց նրան ոչ միայն ռազմական էական օգնություն ցույց չտվեց, այլև ռուսական բանակին տրամադրած սակավ զենքի ու զինամթերքի դիմաց ցարական արքունական գանձարանից կորզում էր հսկայական միջոցներ։ Ուստի պատերազմի ծախքերը նույնպես ծանրացան ժողովրդական մասսաների վրա, որը նրանք հոգում էին տարբեր ձևերով ու եղանակներով։ Արհեստավորները իրենց փոքրիկ արհեստանոցներում զենք ու զինամթերք էին պատրաստում, դերձակները զինվորների համար կարում էին տաք հագուստներ։ Գործող բանակի համար զենք, զինամթերք և պարեն փոխադրելու համար գյուղացիները տրամադրում էին փոխադրական միջոցներ։ Նրանք իրենց հացի և կենսամթերքների պաշարներից սիրով բաժին էին հանում բանակին ու աշխարհազորին, մասնակցում էին պատերազմի ֆոնդին՝ դրամական նվիրատվություններով։ Կանայք նույնիսկ հրաժարվում էին՝ իրենց թանկարժեք արդուզարդից և նվիրաբերում՝ պատերազմի ծախքերը հոգալու ֆոնդին։ Շատ ազնվականներ և վաճառականներ իրենց միջոցներով զինում, հանդերձավորում և ռազմաճակատ էին ուղարկում տասնյակ ու հարյուրավոր աշխարհազորայինների։

Այդ համաժողովրդական հայրենասիրական շարժմանը ակտիվ մասնակցություն ունեցան նաև հայերը, վրացիները, ադրբեջանցիները և կովկասյան մյուս ժողովուրդները։

Ինչպես արդեն ասվեց, «1812 թվականի հայրենական պատերազմը և կովկասյան ժողովուրդները» մենագրության արժանիքներից մեկն էլ այն է, որ նրա հեղինակը իր առաջ դրված պրոբլեմն ուսումնասիրել և լուսաբանել է նկատի ունենալով Կովկասի ներքին վիճակը ու նրա համար տարբեր պետությունների միջև սրվող հակամարտությունները։ Հայտնի է, որ շահական



Իրանը և սուլթանական Թուրքիան ոչ միայն չէին հանդուրժում Վրաստանի և Հյուսիսային Ադրբեջանի միացումը Ռուսաստանին և նրա հետագա առաջխաղացումը, այլև նրանցից յուրաքանչյուրը ձգտում էր ռուսներին դուրս մղել Անդրկովկասից և հաստատվել Կովկասում։ Իրանի և Թուրքիայի բոլոր ագրեսիվ նկրտումներն՝ ուղղված Ռուսաստանի շահերի, ինչպես և կովկասյան ժողովուրդների ազատագրության դեմ, ակտիվ կերպով պաշտպանում էին Անգլիան ու Ֆրանսիան։ Նրանք մերձավոր Արևելքում իրենց ազդեցությունն ուժեղացնելու համար օգնում էին Իրանին ու Թուրքիային՝ թուլացնելու Ռուսաստանի ռազմական հզորությունը։ Արևելքում անգլիական ազդեցության թուլացման և ռուսական ազդեցության տարածման արգելակման համար Նապոլեոն Բոնապարտը դարի սկզբին լայնորեն գործի է դնում դիվանագիտական բոլոր մեքենայությունները և առժամանակ հասնում խոշոր հաջողությունների։

Ռուսաստանի և Ֆրանսիայի միջև Տիլզիտի պայմանագրի կնքումից (1807 թ. հուլիս) հետո Թուրքիայում և Իրանում փոխվում է մեծ տերությունների ուժերի հարաբերակցությունը։ Անգլիան 1809 թվականի հունվարի 5-ին «բարեկամության» պայմանագիր կնքեց Թուրքիայի, իսկ նույն թվականի մարտի 15-ին՝ Իրանի հետ։ Այդ պայմանագրի կնքումը չեզոքացրեց Ֆրանսիային և մեծապես ուժեղացրեց Անգլիայի ազդեցությունը Թուրքիայում ու Իրանում։

Ստանալով Անգլիայի օգնությունը՝ թուրքերը խախտեցին 1807 թվականի զինադադարի պայմանագիրը և 1809 թվականին վերսկսեցին պատերազմը Ռուսաստանի դեմ, իսկ պարսիկները՝ էլ ավելի ակտիվացրին պատերազմական գործողությունները։

1812 թվականի ամռան-աշնան ամիսներին, երբ ֆրանսիական մեծաքանակ բանակները սողում էին դեպի Ռուսաստանի սիրտը՝ հինավուրց Մոսկվա, իրանական հրոսակախմբերը տարբեր ուղղություններով ներխուժեցին Փամբակ, Շորագյալ, Զանգեզուր, Գյանջա, Լենքորան և Անդրկովկասի ռուսական տիրապետության մյուս սահմանները։

Չնայած Անգլիան 1812 թվականի հուլիսի 6(18)-ին Ռուսաստանի հետ կնքել էր դաշնակցային պայմանագիր, բայց քողարկված ձևով շարունակում էր օգնություն ցույց տալ Իրանին։ Անգլիական շատ սպաներ շարունակում էին ղեկավարել իրանական բանակի ռազմական գործողությունները՝ 1812 թվականի օգոստոսին Լենքորանի, հոկտեմբերին Ասլանդուզի և մյուս ճակատամարտերում։

Կովկասում ռուսների նկատմամբ շարունակում էին թշնամական քաղաքականություն վարել նաև թուրքերը։ Սակայն նրանք կաշկանդված լինելով Ռուսաստանի հետ 1812 թվականի մայիսին Բուխարեստում կնքած հաշտության պայմանագրով՝ դեռևս խուսափում էին նոր պատերազմ սկսելուց։

Նապոլեոն Բոնապարտն իր հերթին, Կովկասում աշխուժացրեց ֆրանսիական գաղտնի գործակալների հակառուսական գործունեությունը։

Սրանք բոլորն էլ մեծ հույսեր ունեին՝ մոլորեցնել կովկասյան ժողովուրդներին ու նրանց գրավելով իրենց կողմը՝ Կովկասում ռուսների դեմ ստեղծել ընդհանուր ճակատ։ Չնայած գործադրված բոլոր ճիգերին, ձախողվեցին նրանց հույսերը։ Հակառուսական ճակատին հարեցին Կովկասի ֆեոդալական վերնախավից միայն որոշ ռեակցիոն տարրեր, որոնք իրենց շահերով կապված էին Իրանի և Թուրքիայի հետ, իսկ ժողովրդական լայն մասսաները ունենալով հետևողական ռուսական օրինտացիա ոչ միայն չհարեցին հակառուսական ճակատին, այլև զենքով ու սեփական արյունով պաշտպանեցին Ռուսաստանը։ Այս հարցերին է նվիրված գրախոսվող աշխատության 7-րդ գլուխը («Հակառուսական պլանների ձախողումը Կովկասում 1812 թվականին»)։ Հեղինակը համոզիչ փաստերով մերկացնում է Իրանի ու Թուրքիայի և նրանց անգլո-ֆրանսիական «հովանավորների» ձախողակ փորձերը՝ կովկասյան ժողովուրդներին ռուսների դեմ դուրս բերելու մասին։ Միաժամանակ, նա կոնկրետ օրինակներով ընթերցողին է հասցնում այն ռազմական, նյութական ու բարոյական օգնությունը, որպիսին կովկասյան ժողովուրդները ցույց էին տալիս ռուսներին 1804—1813 թթ. ռուս-իրանական և 1806—1812 թթ. ռուս-թուրքական պատերազմներում՝ ինչպես մինչև Նապոլեոնի Ռուսաստան ներխուժումը, այնպես էլ շարունակվող ռուս-իրանական պատերազմի՝ 1812, 1813 թվականներին։

Ռուս-իրանական պատերազմում կովկասյան ժողովուրդների օգնությունը ռուսական բանակին կարևոր նշանակություն ունեցավ Իրանի դեմ տարած հաղթանակի և նրա արդյունք հանդիսացող՝ ռուս ու կովկասյան ժողովուրդների համար օգտակար Գյուլիստանի հաշտության պայմանագրի կնքմանը։ Ավելին, հայերից, վրացիներից, ադրբեջանցիներից և կովկասյան մյուս ժողովուրդներից ձևավորված բազմաթիվ աշխարհազորային ջոկատներով կովկասում գործող ռուսական բանակի համալրումը ոչ միայն հնարավորություն ընձեռեց շարունակելու ակտիվ ռազմական գործողությունները Իրանի դեմ, այլև ռուսական գլխավոր հրամանատարությունը նույնիսկ կարողացավ Կովկասից որոշ զորամասեր փոխադրել Նապոլեոնի դեմ և հաջողությամբ իրագործել նրա ջախջախումը։ Անտարակույս,

*սա նույնպես կովկասյան ժողովուրդների կողմից յուրօրինակ օգնություն էր նապոլեոնյան զավթիչների դեմ կռվող ռուսական բանակներին:*

*Ամփոփելով մեր խոսքը, ասենք, որ գրախոսվող աշխատության հեղինակը իր առաջ դրված հիմնական պրոբլեմը՝ կովկասյան ժողովուրդների մասնակցությունը 1812 թվականի հայրենական պատերազմին, լուծել է հաջող: Սակայն ճիշտ վարված կլիներ նա, եթե աշխատության եզրափակիչ մասում, գոնե խիստ սեղմ, ցույց տար, որ հաղթանակի պտուղները վայելեցին ֆեոդալական արիստոկրատիան, Ալեքսանդր առաջինը և Եվրոպայի մյուս միապետները: Իսկ ռուս գյուղացիությունը և ցարիզմի արյունոտ կրնկի տակ ճզմվող այլազգի աշխատավորական մասսաները պատերազմում գործադրած իրենց ջանքերի ու թափած ծով արյան դիմաց ոչնչով չհատուցվեցին: Ընդհակառակը, Նապոլեոնի տապալումից հետո Ալեքսանդր առաջինի նախաձեռնությամբ ստեղծվեց Եվրոպայի միապետների «սրբազան դաշինքը» (1815 թ. սեպտեմբեր), որպես ֆեոդալական ռեակցիայի պատվար: Ռուսաստանում մոլեգնեց արակչեևյան դժնդակ ռեժիմը, առավել սաստկացավ սոցիալական և ազգային լուծը: Ի պատասխան դրան գնալով ուժեղացան գյուղացիների, ճորտ բանվորների, զինվորների ելույթներն ու բացահայտ ապստամբությունները, նոր թափ ստացան ազգային ազատագրական շարժումները, ցարիզմի դեմ ռևոլյուցիոն դրոշ պարզեցին դեկաբրիստները: Սրանք քննարկվող պրոբլեմի հետ օրգանապես կապված հարցեր են, որոնց եթե ոչ սեղմ լուսաբանումը, գոնե ակնարկումը չպետք է վրիպեր հեղինակի ուշադրությունից:*

*Կարելի էր շատ ավելի հանգամանորեն անդրադառնալ գրախոսվող աշխատությանը, սակայն ամսագրային մի հոդվածի սահմանափակ շրջանակներում դժվար է սպառել գրքում առաջ քաշված բոլոր հարցերի մեկնաբանումն ու արժեքավորումը: Թերևս դրա հարկն էլ չկա, քանի որ գիրքը հրապարակի վրա է և սպասում է իր ուշադիր ընթերցողին: Մեզ մնում է գոհունակություն հայտնել հեղինակին և Հայկական ՍՍՌ գիտությունների ակադեմիայի հրատարակչությանը, որ հրապարակ են հանել արժեքավոր գիրք՝ ժողովուրդների հայրենասիրության, հերոսության ու բարեկամության մասին և հուսալ, որ մոտ ապագայում հայ ընթերցողն այն կկարդա նաև մայրենի լեզվով:*

Զ. ԳՐԻԳՈՐՅԱՆ
Պատմական գիտությունների
դոկտոր-պրոֆեսոր

## ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

# ԼԱՎՆ ՈՒ ՎԱՏԸ ԹԵՐԹԻ ԷՋԵՐՈՒՄ

Խրախուսելի է, որ Ստեփանավանի շրջանի «Փարոս» թերթը լուրջ ուշադրություն է նվիրում սոցիալիստական մրցության լուսաբանմանը, պարբերաբար անց է կացնում պարտավորությունների կատարման ստուգում: Մրցության առաջավորներին խրախուսելու նպատակով ստեղծվել է պատվո-տախտակ, սահմանված են հուշադրոշներ: Թերթը միաժամանակ բացահայտում է այդ գործում եղած թերությունները, օգնում պարտիական ու սովետական կազմակերպություններին, արտադրական վարչություններին, գյուղի աշխատավորներին՝ հաջողությամբ կենսագործելու ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումները:

Օրինակելի նախաձեռնություն են հանդես բերել Սվերդլով գյուղի կթվոր-անասնապահները: Հունիսի 9-ի համարում «Փարոսը» մի ամբողջ էջ է նվիրել այդ նախաձեռնությանը: «Սվերդլովցիների հայրենասիրական նախաձեռնությունը» խորագրի տակ տպագրվել է Սվերդլով գյուղի կոլտնտեսության անասնապահների դիմումը՝ ուղղված շրջանի կոլտնտեսությունների ու սովխոզների բոլոր անասնապահներին: Այդ համարում հանդես են եկել նաև կթվորուհիներ Ա. Վահրամյանը, Տ. Հովսեփյանը և նախագահ Օ. Սուքիասյանը: Սվերդլովցիների նախաձեռնությունը ջերմորեն պաշտպանեցին ոչ միայն Ստեփանավանում, այլև Կալինինոյում:

Փարոսը» իր էջերում պարբերաբար նյութեր է հրատարակել հացահատիկային ու կերի կուլտուրաների ցանքի ու մշակության ընթացքի վերաբերյալ: Նշելով հանրային կերի պաշարների կուտակման նշանակությունը անասնաբուծության զարգացման համար, թերթը գյուղական պարտիական ու սովետական կազմակերպություններին և բոլոր աշխատավորներին կոչ է արել անշեղորեն կենսագործել պարտիայի Կենտկոմի մարտյան պլենումի որոշումները և անասնաբու-



ծությունն ապահովել կերի կայուն բազայով:

Հունիսի 16-ի համարում «Փարոսը» տպագրել է «Անասնաբուծության վերելքի կարևոր նախապայմանը» հոդվածը, որի հեղինակն է Ստեփանավանի գյուղատնտեսական արտադրական վարչության պետ Բ. Մաժինյանը: Նա պատմում է, թե ինչ է արվում 16.826 տոննա խոտ կուտակելու, 34.680 տոննա սիլոս պատրաստելու համար: Հուլիս ամսվա համարներում թերթը հրատարակել է առաջնորդող հոդված, ինչպես նաև բազմաթիվ թղթակցություններ ու հոդվածներ, որոնք պարզ պատկերացում են տալիս թե ինչ է արվում կոլտնտեսություններում ու սովխոզներում այդ ուղղությամբ: Հուլիսի 28-ի համարի «Կերի կուտակումը հարվածային ճակատ է» ընդհանուր խորագրի տակ տպագրված նյութերում ցույց է տրված Կողես, Ագարակ, Սարչապետ գյուղերի կոլտնտեսականների հայրենանվեր աշխատանքը, քննադատված է Լոռի Բերդ գյուղի կոլտնտեսությունը, ուր մարդիկ խիստ դանդաղում են, անհոգություն են ցուցաբերում խոտհնձի և կերի կուտակման գործում, ամեն ինչ չի արվում որակյալ հյութալի կերի պատրաստման համար: Մի այլ համարում Սվերդլով գյուղի կոլտնտեսության օրինակով թերթում ցույց է տրված, թե ինչպես կարելի է ստեղծել ու ամրապնդել հանրային անասնաբուծության կերի կայուն բազան, որը վճռական նշանակություն ունի անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման համար:

Ի՞նչն է վատ «Փարոս» թերթում: Այս տարվա յոթ ամսվա համարների ուսումնասիրությունը մեզ բերում է այն համոզման, որ թերթի աշխատանքներում կան լուրջ թերություններ: Գլխավոր և հիմնական թերությունն այն է, որ «Փարոսում» տպագրված հոդվածների, թղթակցությունների մի զգալի մասը մակերեսային է, ոճը միապաղաղ, երբեմն՝ խճողված նախադասություններով:

Պարտիան խնդիր է դրել գյուղատնտեսությունը վարել ինտենսիվ կերպով, արտադրել շատ ու էժան մթերքներ: Հետևապես, «Փարոսի» գլխավոր խնդիրը ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումների կենսագործման հարեցրի խոր ու բազմակողմանի լուսաբանումն է: Բայց այդ գործում թերթը լավ չի օգտագործում իր հնարավորությունները:

Ստեփանավանի և Կալինինոյի պարտշրջկոմների պլենումներում, որտեղ քննարկվել են ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումները, նշվել է, որ դեռևս ցածր է անասնաբուծության աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը: Թվում էր, որ դրանից հետո թերթը հատուկ ուշադրություն կնվիրի «Հայգյուղտնտեխնիկայի» բաժանմունքների, կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատանքում տեղ գտած թերությունների բացահայտմանը: Բայց այդպես չի վարվել: Թերթում պատշաճ տեղ չեն գրավում նաև անասնացեղի բարելավման, հանրային հոտի վերարտադրության, ստերջության վերացման հարցերը: Բանն այն է, որ թերթը միայն մեկ անգամ է փորձել անդրադառնալ անասունների ցեղի բարելավմանը, մայիսի 21-ին տպագրելով ՀԿՊ շրջկոմի քարտուղար Ս. Հակոբյանի թղթակցությունը՝ «Ցեղի բարելավումն օրվա հրատապ հարց է» վերնագրով: Այդ թղթակցությունից իմանում ենք, որ Հոբարձի, Ագարակ, Հովնանաձոր, Մաքսիմ Գորկի, Լոռի, Բերդ գյուղերի կոլտնտեսություններում կան լուրջ թերություններ: «Փարոսը» պետք է անդրադառնար այդ թերություններին, համարձակ քննադատեր տոհմաբուծությունը ձախողողներին:

Ինչպես նշված է պարտիայի Կենտկոմի մարտյան պլենումի որոշումներում, գյուղատնտեսության հետագա զարգացման գործում բացառիկ կարևոր նշանակություն ունի նյութական շահագրգռվածությունը: Բայց, որքան էլ տարօրինակ է, «Փարոսը» այդ հարցին անդրադարձել է տպագրելով միայն ՀՀԳ-ից ստացված «Նյութական շահագրգռվածություն» կոնսուլտացիոն հոդվածը: Իսկ տեղերում ինչպե՞ս է կենսագործվում անձնական շահագրգռվածության սկզբունքը, ինչպե՞ս է այն խթանում տնտեսության զարգացմանը, թերթն այդ մասին լռում է: Թերթը չի մասսայականացնում այն տնտեսությունների փորձը, որտեղ կիրառվում են նյութական շահագրգռվածության արդյունավետ ձևեր: Ընդհանուր առմամբ թերթը հազվադեպ է բարձրացնում գյուղատնտեսական արտադրության կազմակերպման և ղեկավարման գլխավոր հարցերը:

Թերթը պատշաճ խորությամբ չի լուսաբանում առաջավորների փորձը, գիտության նվաճումները: Շատ հաճախ առաջավորների փորձի անվան տակ տպագրում են այնպիսի նյութեր, որտեղ բացակայում է իսկական փորձը: Այսպես՝ «Փարոսի» ապրիլի 7-ի համարում «Նորը մեր աշխատանքում» խորագրի տակ տպագրված է Կիրով գյուղի կոլտնտեսության կթվորուհի Մ. Հասանովայի ելույթը, ուր փորձ է արված ցույց տալ, թե ինչ է անում նա յուրաքանչյուր կովի կաթնատվությունը 2350—2400 կգ-ի հասցնելու համար: Այնուամենայնիվ ընթերցողը պատկերացում չի կազմում կթվորուհու աշխատանքի փորձի մասին, քանի որ ամբողջ փորձն ամփոփված է հետևյալ տողերում. «Ծղոտը մեքենայով մանրացնում ենք, խառնում սիլոսի հետ, վրան ցանում աղաջուր և նոր միայն տալիս անասուններին»:

Ապրիլի 9-ի համարում տպագրված Վ. Ավետյանի «Ինչպես Վազգենը դարձավ առաջավոր» հոդվածի մեծ մասն ընդհանուր դատողություններ են: «Վ. Թումանյանի հաջողության գաղտ-

նիքը նրա ջանադիր աշխատանքի մեջ է,— գրում է հեղինակը:— Կթվորը հատկապես մեծ ուշադրություն է նվիրում հղիության վերջին շրջանում գտնվող և նոր ծնած կովերի խնամքին ու կերակրմանը: Ծնից 20 օր առաջ նա կերաբաժնում աստիճանաբար պակասեցնում է հյութալի կերի քանակը» և այլն: Առաջավոր փորձին նվիրված մյուս հոդվածները նույնպես միակողմանի և մակերեսային են:

Թերթի էջերում դեռևս անբավարար է ծավալվում քննադատությունը: Հազվադեպ են քննադատական, վերլուծական հոդվածները: Զարմանալի է, թե ինչու, օրինակ, թերթը չի փորձում հանգամանորեն ուսումնասիրել Լոռու տոհմաբուծարանի, Իլմազլուի սովխոզի, կամ Յաղդան և Ուռուտ գյուղերի ետ մնալու պատճառները, քննադատելու այդ տնտեսության ղեկավարներին, որոնք չեն ապահովում առաջադրանքների կատարումը: Հարկ է նշել, որ առողջ, գործարար ու սկզբունքային քննադատության փոխարեն «Փարոսը» հաճախ է թմբկահարում առանձին աննշան հաջողություններ:

Գյուղատնտեսության հետագա խնդիրների հաջող կատարումը պահանջում է ամեն կերպ բարձրացնել սկզբնական պարտիական կազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը, ուժեղացնել կազմակերպական-քաղաքական աշխատանքը, բարձրացնել գյուղատնտեսության ղեկավարման մակարդակը: Բայց թերթը հարկ եղած չափով չի լուսաբանում սկզբնական պարտիական կազմակերպությունների գործունեությունը, ցույց չի տալիս, թե նրանք ինչպես են գլխավորում գյուղի մարդկանց աշխատանքային ոգևորությունը, ինչպես են նրանք պարտիական-քաղաքական աշխատանքը զուգակցում տնտեսականի հետ: Թերթի ոչ մի համարում չի լուսաբանված գոնե մի պարտկազմակերպության աշխատանքի փորձ: Տպագրված հատ ու կենտ թղթակցությունները մակերեսային են, հիմնավորված չեն օրինակներով: Այդպես են գրված, օրինակ՝ «Կազմակերպչական և քաղաքական աշխատանքի շնորհիվ» (փետրվարի 3), «Դպրոցի պարտիական կազմակերպությունը» (փետրվարի 26), «Անասնապահների խորհրդատուն» (ապրիլի 9) ,«Կազմակերպական-քաղաքական աշխատանքը յայլաղներում» (հունիսի 18), «Ագիտատորի խոսքը թևավորում է» (հունիսի 23) և մյուս հոդվածները: «Անասնապահների խորհրդատուն» մեծածավալ հոդվածում հեղինակը փորձել է ցույց տալ Լոռու տոհմաբուծարանի գլխավոր զոոտեխնիկ, ագիտատոր Լ. Գևորգյանի աշխատանքի փորձը: Բայց այնտեղ սոսկ մեթոդական ցուցումներ են, առանց կատարված աշխատանքի վերլուծության ու ընդհանրացման: Հոդվածում կան չհիմնավորված եզրակացություններ, լեզվական ու ոճական սխալներ:

Հաջող չեն գրված «Պարտկազմակերպությունը դիտողի դերում» (ապրիլի 18) և «Ագիտատորի հասցեն այժմ դաշտն է» (հունիսի 16) վերնագրով հոդվածները, որոնք լի են չոր նախադասություններով: Օրինակ, ի՞նչ է ուզում ասել «Պարտկազմակերպությունը դիտողի դերում» հոդվածի հեղինակը, երբ գրում է. «Դեռ տարեսկզբին այստեղ թմբկահարվեց սոցիալիստական մրցություն կազմակերպելու և «լայնորեն ծավալելու մասին» կամ «նախաձեռնությունները մնացել են անհետևանք, իրենց կեղևի մեջ»:

Նշենք նաև, որ թերթը ժլատ է կոմերիտական, արհմիութենական կազմակերպությունների աշխատանքը, գյուղի կուլտուրական կյանքը լուսաբանելու գործում: Թերթելով «Փարոսի» այս տարվա յոթ ամսվա համարները, ընթերցողը չի կարող հստակ պատկերացում կազմել այն մասին, թե ինչպես են աշխատում Ստեփանավանի և Կալինինոյի շրջանների կուլտուր-լուսավորական հիմնարկները, ինչպես են կազմակերպված գյուղի աշխատավորների կուլտուրական հանգիստն ու սպասարկումը: Ստեփանավանի շրջսովետի գործկոմի կուլտուրայի բաժնի վարիչի հոդվածը և մի քանի տողանոց ինֆորմացիաներ՝ ահա այն ամենը, որ կարելի է կարդալ այդ հարցերի մասին «Փարոսի» էջերում: Մինչդեռ ՀԼԿԵՄ Ստեփանավանի շրջանային կոնֆերանսում իրավացի կերպով քննադատվել են շրջանի կուլտուր-լուսավորական հիմնարկները, որոնք դեպքից-դեպք են կազմակերպում առաջավորների փորձի փոխանակություն, հարց ու պատասխանի երեկոներ և այլ միջոցառումներ, որ Գյառ-գյառ, Հոբարձի, Յաղդան, Մաքսիմ Գորկի գյուղերում դադարել են գործել ինքնագործ խմբերը: Փոխանակ խորանալու և վեր հանելու կուլտուր-լուսավորական հիմնարկների գործունեության մեջ տեղ գտած թերությունները, ցույց տալու դրանց վերացման ուղիները, թերթը գերադասում է լռել:

«Փարոսում» երբեմն երևում են ռեպորտաժներ ու ֆելիետոններ: Բայց դրանք քիչ են տարբերվում սովորական թղթակցություններից:

Ինչպես տեսնում ենք, «Փարոսի» խմբագրությունը շնորհակալ գործ է կատարել Ստեփանավանի և Կալինինոյի շրջաններում սոցիալիստական մրցության ծավալման գործում: Մնում է հուսալ, որ խմբագրությունն այսուհետև նույնպիսի պատասխանատվությամբ կմոտենա նաև մյուս հարցերի լուսաբանմանը: Այս գործում մեծ անելիքներ ունի նաև Ստեփանավանի պարտշրջկոմը:

Մ. ՄԿՐՏՉՅԱՆ

# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ 1965 ԹՎԱԿԱՆԻ ՀԱՄԱՐՆԵՐՈՒՄ ՏՊԱԳՐՎԱԾ ՀՈԴՎԱԾՆԵՐԻ ԵՎ ՆՅՈՒԹԵՐԻ ՑԱՆԿ

## ԱՌԱՋՆՈՐԴՈՂՆԵՐ



## ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԻՆ





## ԿՈՆՍՈՒԼՏԱՑԻԱ



## ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ



## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



## ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԻ ՄԱՍԻՆ



## ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ



## ԱՆՑՅԱԼԸ ՄԵՐ ՀԱՅԵՑԱԿԵՏՈՎ



## ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ



## ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆ



## ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՅԱՆՔԸ





## ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ



## ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ



## ԷՋԵՐ ԱՆՑՅԱԼԻՑ



## ԴԵՊԻ ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ



## ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԳԻՏՈՒԹՅԱՆ ՕՋԱԽՆԵՐԸ



## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ



## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ



## ԱՇԽԱՐՀԻ ԲՈԼՈՐ ԿՈՂՄԵՐԻՑ



## ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

---




Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2-02-24

ՎՖ 05272 Պատվեր 2789 Տիրաժ 9000 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 4/XII 1965 թ.:

Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51։





## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԵՐՄՈԼԵՆԿՈ Դ. Վ.—ԱՄՆ-ի ժամանակակից բուրժուական փիլիսոփայությունը (Քննադատական ուրվագիծ): Մ., Միջազգ. հարաբեր. հրատ. 1965, 368 էջ:

Նոր նյութերի օգտագործմամբ հեղինակն ուսումնասիրում է ԱՄՆ-ի բուրժուական փիլիսոփայության հիմնական միտումը, քննարկում է նրա կապը և փոխներգործությունը գաղափարախոսության վրա: Բացահայտում է ԱՄՆ-ում փիլիսոփայության խոր ճգնաժամը և ցույց տալիս, թե ինչպես ԱՄՆ-ի փիլիսոփայական դպրոցների որոշ մասը փորձապաշտական մեթոդների օգտագործմամբ մշակում է հասարակական մտքի վրա ներգործելու ձևեր: Հեղինակը գրքում զգալի տեղ է հատկացրել ԱՄՆ-ի հետադիմական փիլիսոփայության և գաղափարախոսության դեմ առաջադիմական ուժերի մղած պայքարին:

ՄՈՎՍԻՍՅԱՆ Ռ. Լ.—ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման լենինյան պլանը և նրա կենսագործումը: Ե. «Միտք» հրատ., 1965, 270 էջ:

Այս գրքում լուսաբանվում և վերլուծվում են սոցիալիզմի լենինյան պլանի բաղկացուցիչ մասերը՝ սոցիալիստական ինդուստրացման, գյուղատնտեսության կոոպերացման, կուլտուրական հեղափոխության, պրոլետարիատի դիկտատուրայի, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդման, ժողովուրդների բարեկամության, ինտերնացիոնալիզմի, խաղաղ գոյակցության և այլ հարցեր ու նրանց կենսագործման պայմանները: Գիրքը օգտակար է պրոպագանդիստների, ուսանողների համար՝ որպես օժանդակ ձեռնարկ:

ԿՅՈՒՐԻ ՄԱՐԻԱ, ՊԻԵՌ ԿՅՈՒՐԻ: ԿՅՈՒՐԻ ԵՎԱ, ԿՅՈՒՐԻ ՄԱՐԻԱ: Ե., «Հայաստան», հրատ. 1965, 487 էջ:

Գիրքը բաղկացած է երկու մասից: Առաջինում՝ Լեհ ժողովրդի ականավոր դուստր՝ Մարիա Կյուրին պատմում է իր ամուսնու՝ Պիեռ Կյուրիի (1859—1906) կյանքի և գիտական գործունեության մասին:

Երկրորդ գրքում՝ Եվա Կյուրին (Պիեռի և Մարիայի կրտսեր դուստրը ծնված 1904 թ.) ցույց է տալիս, թե Մարիան նախ՝ հոր հետ, ապա՝ նրա մահից հետո ինչպիսի խոշոր ծառայություն է մատուցել գիտությանը: «Գիտությանն անձնվիրաբար նվիրված Կյուրիների, և՛ ավագ, և՛ կրտսեր սերունդները իրենց կյանքը զոհաբերեցին գիտությանը»: Պիեռ և Մարիա Կյուրիները, նրանց դուստրը՝ Իրենը և փեսան՝ Ֆրեդերիկ Ժոլիո-Կյուրին մահացել են ռադիո-ճառագայթային հիվանդությունից, որը հետևանք էր ռադիոակտիվ նյութերի հետ երկար տարիներ աշխատելու:

ԿՈՄՈՒՆԻԶՄ ԿԱՌՈՒՑՈՂԻ ԲԱՐՈՅԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ: «Мысль» հրատ., 1965, 343 էջ:

ԳԱ Փիլիսոփայության ինստիտուտի գիտական աշխատողներն այս գրքում վերլուծել են սոցիալիստական հասարակության ծնունդը հանդիսացող բարոյական կոդեքսը, որպես բարոյական սկզբունքների սիստեմ: Հեղինակները բացահայտում են նոր աշխարհի բարոյականության առավելությունները բուրժուական բարոյականության նկատմամբ, հատուկ ուշադրություն են նվիրում մեր հասարակության զարգացման օրինաչափությունների պարզաբանմանը, որոնցով պայմանավորվում է բարոյական կոդեքսի երևան գալը, որը և դառնում է մարդկանց կյանքի, համոզմունքների, սկզբունքների աղբյուրը:

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՍԵՅՍՄԱԿԱՅՈՒՆ ՏԱՆ ՆԱԽԱԳԻԾ

Երկրաշարժերի ժամանակ մարդկային զոհերից հնարավորին չափ խուսափելու նպատակով ճապոնական ինժեներները առաջարկել են տները կառուցել նախօրոք ձգված բետոնից: Այդպիսի շենքերը երկրաշարժերի ժամանակ չեն քանդվի, այլ ամբողջովին կթեքվեն փոթորկի մեջ ընկած նավի նման: Նախագծի հեղինակները գտնում են, որ այդպիսի տների բնակիչներին չի սպառնա շենքերի փլատակների տակ թաղվելու վտանգը:

## ԶՈԴՈՒՄ... ՋՐՈՎ

Ամերիկյան «Խեյես» ֆիրման թողարկել է ջրով աշխատող զոդիչ ապարատ: Այն իրենից ներկայացնում է գեներատոր, որտեղ թթվածինը և ջրածինը ստացվում են ջրի էլեկտրոլիզի միջոցով: Այդ գազերի խառնուրդը համապատասխան համամասնությամբ բարակ խողովակի միջոցով գնում է գազային ջեռուցիչի մեջ, որտեղ տեղի է ունենում այրում:

Բարակ «ասեղային» խողովակից գազերը դուրս գալու տեղում բոցի ջերմաստիճանը հասնում է 3300C: Ապարատը կարելի է օգտագործել մինչև 6 միլիմետր հաստություն ունեցող մետաղաթիթեղի զոդման համար: Այսպիսով լրիվ վերանում է խտացված գազի ծանր ու խոշոր բալոնների տեղափոխման անհրաժեշտությունը:

## ՇԻՆԱՆՅՈՒԹ ՓՈՇՈՒՑ

Սկանդինավյան ինժեներները մշակել են ցեմենտի գործարանների էլեկտրաֆիլտրերի վրա կուտակված փոշին օգտագործելու արդյունավետ եղանակ: Փոշին խառնում են ալյումինափոշու և ցեմենտի հետ, իսկ այնուհետև այդ խառնուրդը թրջում ջրով: Ջուրը փոշու ազդեցության տակ ակտիվանում է այնքան, որ ալյումինափոշին ընդունակ է դառնում ջրից դուրս մղելու ջրածինը: Այդպիսի ռեակցիայից հետո խառնուրդը նմանվում է թեթև փրփուրի, քանի որ այն ամբողջապես հագեցած է գազային բշտիկներով: Պնդանալով խառնուրդը դառնում է, այսպես կոչված, գազային բետոն, որը շատ բարձրորակ է: Դրանից կարելի է պատրաստել բարակ թիթեղներ, որոնցով կարելի է առանց լրացուցիչ հենարանների ծածկել մեծ շենքերը:

## ԱՎՏՈԲԵՏՈՆԱԽԱՌՆԻՉ

Չեխոսլովակիայում թողարկվել է բետոնախառնիչ, որը կարելի է օգտագործել ինչպես բետոն պատրաստելու, այնպես էլ այն փոխադրելու համար: Նոր մեքենան հատկապես հարմար է այն դեպքում, երբ շինարարական աշխատանքները կատարվում են բետոնի գործարաններից հեռու գտնվող վայրերում:

## ԲԱՐՁՐԱՀԱՐԿ ՇԵՆՔ՝ ՊԼԱՍՏՄԱՍՍԱՅԻՑ

Հավայան կղզիների Գոնոլուլու քաղաքում 1965 թվականի վերջին կավարտվի 900 համարանոց հյուրանոցի շինարարությունը, որն ամբողջովին հավաքված է պլաստմասսայի ստանդարտ բլոկներից: Օգտագործված պլաստմասսան հրակայուն է, խիստ դիմացկուն ջերմաստիճանի և մթնոլորտային ազդեցությունների նկատմամբ: Շենքը նախագծվել է, նկատի ունենալով և այն հանգամանքը, որ Հավայան կղզիներում շատ հաճախ են երկրաշարժեր լինում:

## ՊԱՏՃԵՆՆԵՐ՝ ԱՌԱՆՑ ՊԱՏՃԵՆԱՀԱՆ ԹՂԹԵՐԻ

Նոր տեսակի բազմաշերտ թղթից Չեխոսլովակիայում ստանում են պատճեններ՝ առանց պատճենահան թղթի: Գրամեքենայի ստեղների ճնշումից այդ թղթի մեջ առաջանում է քիմիական ռեակցիա, որն ուղեկցվում է համապատասխան տառը ներկելով:

